ՄԱՐԿՈՍԻ ՏՈՒՂՂԻՈՍԻ

# ԿԻԿԵՐՈՆԻ

# ՅԱՂԱԳՍ ՊԱՇՏԱՃԻՑ



ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ՏԵԱՌՆ Հ. ՄԿՐՏՉԻ ԱՒԳԵՐԵԱՆ
ԱԹՈՌԱԿԱԼ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1845 — ՌՄՂԴ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԳԵՐՃԱԽՕՍՈՒԹԵԱՆ արուեստին և հռովմէական իմաստասիրութեանն գերագոյն վարժապետ՝ Մարկոս Տուղղիոս Կիկերոն, հոյակապ անուամբն քաջածանօթ էր ցայսօր և մերումս ազգի. իսկ անմահական դրչութեանցն ճաշակաւ ոչ նոյնպէս ։ Հանգոյն իմն մերոց երանաշնորհ Թարգմանչաց՝ և սա ինքն յԱթենացւոց քաղաքի ընկալաւ զիւրոց մարզիցն զկատարումն. և ընդաւոր հանճարոյն և աննկուն ուսումնասիրութեամբ վեհագունիցն Հելլենացւոց լեալ նախանձաւոր, 'ի հռետորականսն ժամանեաց Դեմոսթենեայ կալ զուգակշիռ, և յիմաստասիրականսն Պղատոնի հանգիտաղատիլ և մրցակից, ոճոյն յստակութեամբ թերևս սուղ ինչ և քան զնոսա առաւելեալ. իսկ յաշխոյժս մտացն և 'ի խորագնին դատմունս և յարտասանութեան հնարս ամենեցուն իսկ հելլենն և հռովմայեցի որերոյ գերազանց ։

Արդարև յիրաւի է մեզ ասացել, զի ոչ յաջողեաց Հարանցն մերոց՝ և հռովմէական բարբառոյն լինել հետամուտ. ապա թէ ոչ, աներկմիտ վստահութբ մարթ էր մեզ ակն ունել 'ի լատին լեզուէ յառաջ քան զամենայն չնաշխարհիկ երկասիրութեանց մեծի մատենագրիս Թարգմանութեանն. որով և բարբառս մեր 'ի վերայ ընտիկ վսեմութեան գեղոյն և զհռովմայեցի պատմուճանին զխորոխտ պերճանացն առնոյր զզարդարանս ։ Այլ զի մեք մերժացաք յայնպիսւոյ ակնկալութենէ, և դարձեալ զի ցանկալի մերազնեայց գիտեմք զվեհի մատենագրին զիմաստս, ընծայեմք աւասիկ ուսումնասիրու-

թեան նոցին մերով թարգմանութեամբ զՊատշաճիցն, կամ որպէս այլք անուանեն զՊաշտամանց գիրս, որ 'ի հիացումն կրթեալ են զդարս և զազգս ամենայն՝ ազնուական և յստակ ոճովն, և ուղղադատ և ազդողական և լուսաւոր վարդապետութեամբն՝ որպիսի չէր իսկ արդեօք կարծելի 'ի հեթանոսական հանճարոյ :

Հաստուցաք աստէն համառօտիւ և զպատճառս մատենիս : Յետ բռնամահ վճարելոյ 'ի կենաց Յուլիոսի Կեսարու, իբրև Մարկոս Անտոնիոս խռով հարեալ 'ի ժողովրդեանն Հռովմայ՝ կենախուզ կամէր լինել որոց գործակից սպանութեանն եղեն, Կիկերոն ևս ընդ այլոցն օրինակի խոյս ետ 'ի քաղաքէն յերկիր կալուածոց իւրոց . անդ յանդորրաւէտ տեղւոջն առաւել ևս պարապով յիմաստասիրականսն միտ եդեալ, մատենագրեաց և զՊատշաճիցն գիրս երեսին յառանձին պէտս որդեկին իւրոյ, որ յԱթէնս էր 'ի ժամուն՝ Կրատիպպեայ աշակերտեալ ճեմական իմաստասիրի : Եւ կալաւ իւր յայսմ օրինակ առաւելապէս զՊանետիոսի հռոդացւոյ զմատեանսն որ. Յաղագս Պատշաճին մակագրեալ. իսկ յերրեակ դասուց բարոյախօսից ժամանակին, Ակադեմեանցն ասեմ և Ճեմականաց և Ստոյիկեանց, որք թէրևս բանիւք չափ ևեթ հակառակէին (յարդիւնսն միաբանեալք՝) թէ զինչ համեստն և վայելուչն իցէ կամ պատշաճ, սա զՍտոյիկեանցն ընտրեաց զկարծիս : Եւ յառաջնում անդ 'ի գրոցն աւանդեալ զսահմանն պատշաճիցն և զբաժանումն, յերկրորդումն յայտ առնէ եթէ զինչ ինչ օգտակար իցէ և կամ վնասաբեր . և յերրորդին 'ի կշիռ ընդ միմեանս արկեալ զվայելուչն և զօգտակար, 'ի քննին առնու եթէ զոր ինչ 'ի նոցանէ ընտրել առնուլ պատշաճ իցէ՝ յորժամ հակառակել ընդ միմեանս թուիցին :

# ՄԱՐԿՈՍԻ ՏՈՒԼԼԻՈՍԻ

# ԿԻԿԵՐՈՆԻ

# ՅԱՂԱԳՍ ՊԱՇՏՕՆԻՑ

## ԱՌ ՄԱՐԿՈՍ ՈՐԴԻ ԻՒՐ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

Ա. ԹԷՊԷՏ ԵՒ քեզ, Մարկոսէ որդեակ, որ յամէ հետէ աշակերտեալդ ես առ ոտս Կրատիպպոսի [1], և այն յԱթէնս, պէտք են ճոխանալ խրատուք և մարզիւք ի-մաստասիրութեան՝ և յաղագս ծայրացելոյ վարժապետիդ և քաղաքին մեծութեան, յորոց մին գիտութբ և միւսն օրինակօք բարգաւաճ զքեզ առնել կարող են, սակայն զոր օրինակ ես ինքնին առ իմ օգուտ միշտ զլատինականն ընդ յունականին ծորդեցի՝ ոչ միայն յի-մաստասիրութեան մասին, այլ և 'ի կրթանս պերճախօսութեան, 'ի դէպ և քեզ զնոյն վարկանիմ գործ, զի համազօր գտանիցիս յերկաքանչիւր բանասացութեան հանդէսս։ Այս առ այս մեք, որպէս թուի, մեծապէս օժան մատուցաք մերազնեայ որերոյն. որպէս զի ոչ միայն հետևակքն 'ի հելլէն դպրութիւնս, այլ և որ ներհունքն են՝ համարին զանձինս հրահանգեալս փոքր 'ի շատէ և յատենաբանել և 'ի դատել։ Մին իրի ուսանելով ուսցիս 'ի պետէ անտի իմաստասիրաց ժամանակիս, և ուսցիս ցոր-

1 Կրատիպպոս հայրենեօք 'ի Միտիլենեայ՝ երևելի էր յոյժ 'ի Ճեմականս ժամանակին։

չափ և կամիցիս . իսկ կամել ցայնվայր, զի որչափ և յառաջադէմ լինիցիս՝ մի զղջանայցես։ Այլ սակայն ընթերցջիր և զմերս, որ ոչ կարի օտարանան ՚ի ճեմականացն. քանզի ըստ նոցա և մեք սոկրատեան և պղատոնականք կամիմք գոլ։ Ի գործս ըստ քում կշռութեան վարեսջիր, չարգելում. իսկ ՚ի լատին վարժս վերծանութեամբ մերոցս ես քան զես յառաջադէմ զարգացիս։ Եւ մի յանդգնութիւն քեզ բանս թուեսցի. քանզի զիմաստասիրելոյն զգիտութիւն շնորհելով իմ բազմաց, եթէ անձին պահիցեմ զսեպհականն ատենախօսի, ըզխօսելն ասեմ վայելուչ՝ յստակ և պերճ, քանզի ՚ի դոյն ջանս զկեանս իմ ծախեցի, թուիմ զիմ իրաւունս պահանջել։

Վասն որոյ մեծապէս յորդոր քեզ լինիմ Կիկերոնի իմ, զի ոչ միայն զատենախօսութիւնս իմ, այլ և զայսոսիկ զյաղագս իմաստասիրութեան գիրս որք զուգահաւասար են գոգցես նոցունց՝ ընթերցցիս մտադիւր։ Քանզի թէպէտ և առաւելագոյն կորովն է բանից, սակայն և զայս ազգ բանախօսութե՛ զվայելչականն և զչափաւոր՝ արժան է պատուել. և յայս իսկ ոչ զոք ՚ի Յունաց տեսանեմ ցարդ ձեռն արկեալ, զի նոյն այր յերկաքանչիւր մասին երկասիրիցէ, և զհետ լիցի ատենաբանութեան, և միանգամայն այսմ խաղաղաւէտ վիճաբանութեան ազգի։ Բայց եթէ յայս թիւ համարոյ գրեսցէ ոք զԴեմետրիոս փաղերացի[1], զվիճաբանն նրբախօս, զհռետորն ոչ այնչափ հզօր՝ որչափ քաղցր ՚ի բանս. որով դիւրաւ ճանաչի Թէոփրաստեայ լինել աշակերտ։ Այլ թէ մեք որքան գտաք յերկաքանչիւրումն յառաջադէմք, այլոց իցէ դատել. այս ինձ հաւաստի է, զի յերկաքանչիւրն իսկ պարապեցաք։

Ապաքէն և Պղատոնի, որպէս կարծեմ, եթէ կամեցեալ էր ատենախօսութեան պատկառ կալ, կարող էր վսեմութեամբ և ճոխաբար ճառել. և Դեմոսթենեայ եթէ զոր միանգամ ՚ի Պղատոնէ ուսեալն էր՝ պինդ ՚ի մտի կալեալ էր, և կամեցեալ բարբառել յայտնի, պերճ և շքեղ կարող էր զբանն յօրինել։ Նոյն է ինձ ասել և զԱրիստոտելէ և զԻսոկրատեայ. յորոց մէն մի

1 Դեմետրիոս փաղերացի դիւանապետ էր Պտղոմեայ արքայի եղբայրասէրն կոչեցելոյ։

իւրոյին զուարձացեալ ուսմամբ՝ ապախտ զմիւսոյն արար:

Բ. Արդ այն ինչ ելի 'ի մտի գրել զարդիւս առ քեզ ինչ ինչ, և առ յապա զբաժում ինչ, կամ եղև ինձ յայնմանէ մանաւանդ առնել սկիզբն, որ քումդ հասակի և իմում աշտիճանի իցէ քաջավայելուչ: Զի թէպէտ բազում ինչ իրք են յիմաստասիրութեան ծանր ծանր և պիտանացու, զորոց գեղեցիկս և ճոխագոյնս ճառեցին իմաստասէրք, սակայն արձակածաւալ ինձ թուին որ ինչ միանգամ 'ի նոցանէ պատուիրանաւ աւանդեցան յաղագս Պատշաճից: Վասնզի չիք և ոչ մի ինչ կենաց մասն, ոչ 'ի հասարակացն և ոչ յառանձինն գործս, ոչ յատենի և ոչ յառտնին իրս, եթէ դու քեզէն ինչ գործիցես, և եթէ ընդ այլում դաշնաւորեսցիս, որում հնար իցէ անբաժ լինել 'ի պատշաճէն. և յայդմ իսկ հաստատեալ է ամենայն լաւութիւն կենաց, որպէս և յանտեսմն առնել՝ վատթարութիւն:

Եւ սոյն այս խնդիր՝ հասարակաց է ամենայն իմաստասիրաց: Վասն զի՞ո այն ոք իցէ, որ առանց աւանդիչ լինելոյ իրիք 'ի պատշաճից՝ իմաստասէր զանձն համարձակեսցի անուանել: Բայց են և խորատք ինչ վարդապետութեան, որ յառաջի առնել անդ զբարեաց և զչարեաց զվախճանս՝ վեր 'ի վայր առնեն զպատշաճն գլխովին: Զի որ զգերագոյն բարին այնպէս սահմանիցէ, մինչև չունել նմին ընդակցութիւն ինչ ընդ առաքինութեան, և զայն յանձին դիւրութենէ չափիցէ, և ոչ 'ի լաւութենէ, այնպիսին եթէ պնդեսցի յիւր կարծիս, և ոչ յաղթահարեսցի երբէք յերեսաց բնութեանն լաւութեան, չէ և չէ կարող՝ ոչ բարեկամութեան լինել սպասաւորկու, ոչ արդարութեան և ոչ առատաձեռնութեան: Եւ որ զցաւն ծայրացեալ ինչ չարիս վարկանիցի, անհնար է այնպիսւոյն քաջարի լինել ամենևին. որպէս և ոչ բարեխառն՝ որ զփափկութիւնն ծայրագոյն գրեսցէ բարի:

Այս ամենայն թէպէտ և քաջայայտ, և անկարօտ բազում խնդրոյ, սակայն ընդ խնդրով արկաւ 'ի մէնջ յայլում վայրի[1]: Ապա ուրեմն եթէ վարդապետութիւք այդպիսիք զհաստատութիւն կամիցին առնուլ 'ի բանս

1 Ի Տուսկուղ. խնդ. գիրք Դ. ևս և 'ի գիրսն յաղագս Վախճանի բարեաց և չարեաց:

իւրեանց, անմարթ է նոցա ճառել ինչ զպատճառից։ Եւ չէ իսկ հնար եթէ աւանդեսցին պատուէրք պատճառից հաստատունք, կանոնաւորք, և համեմատք ընդունելութեանն օրինաց, բայց միայն ՚ի նոցունց՝ որք զառաքինութիւն ևեթ, և կամ յայնցանէ որք զառաքինութիւնն առաւելապէս ասացին ցանկալի ըստ ինքեան լինել։ Վասն որոյ և տուչութիւն պատուիրանիդ ստոյիկեանց, ակադեմեանց և ճեմականաց է անկ. վասն զի վաղ իսկ հերքեալ են Արիստոնին, Պիւռոնի, և Հերիլլայ կարծիք. և էր արդեօք և սոցա ունել ինչ իրաւունս ճառելոյ զպատճառից, եթէ թողեալ էր նոցա ընտրական ինչ ՚ի բնութեանն իրս առ ՚ի մարթելոյ մատչել ՚ի պատճառիցն գիւտս։ Եւ արդ յառաջիկայս խնդիր զհետ երթիցուք առ այժմ առաւել ստոյիկեանց, ոչ որպէս թարգմանք, այլ որպէս մերս է սովորութիւն՝ յաղբերաց անտի նոցա մերովս հանելով խորհրդով և ընտրութեամբ որչափ և որպէս ինչ հաճոյ թուեսցի։

Արդ որովհետև խնդիրս ամենայն զպատճառէն հանդերձեալ է լինել, բարւոք թուի յառաջագոյն սահմանել՝ զինչ պատճառն իցէ. և զարմանամ եթէ զիարդ զանց զսովին արար Պանետիոս. վասն զի ամենայն վարդապետութիւն յամենայն ՚ի խնդիրս բանի ՚ի սահմանէ պարտի յառաջ խաղալ, որպէս զի ծանիցի եթէ զինչ այն իցէ զորմէ խնդիր յուզիցի։

Գ. Երկին ազգք են խնդրոց որ զպատճառէն. մի՝ որ բերի ՚ի վախճան բարեաց. և միւս ևս որ հաստատեալն է ՚ի պատուէրս՝ որովք մարթ իցէ կենցաղական վարուց ամենայն ուստեք պատսպարել։ Եւ օրինակք այս են առաջնոյ ազգին. արդեօք ամենայն գործք որ ընդ պատճառս գրին՝ անթերիք իցեն, և իցէ՞ արդեօք գործ քան զգործ մեծ, և որ ՚ի սոցին սակի։ Արդ այնք ՚ի գործոց զորոց աւանդին պատուէրք, թէպէտ և ՚ի վախճան բարեաց ունիցին զդիտումն, բայց ոչ յոյժ յայտնապէս երևին իրքդ. քանզի թուին մանաւանդ բարեկարգութեան հասարակաց վարուց լինել պատկանաւոր. և զայսցանէ առաջի կայ մեզ ՚ի գիրս յայս տալ տեղեկութիւն։

Ե. և միւս ևս բաժանումն պատճառից. քանզի է որ միջասահման ասի, և է որ կատարեալ։ Կատարեալն և

կամ արդար՝ ուղղութիւն[1] վերաձայնի ըստ Յունաց. իսկ որ հասարակն է՝ պատշաճ և կամ արժան[2]։ Այս զայսոսիկ այսպէս սահմանեն. իբր զի որ ինչ ուղիղն է՝ նոյն և կատարեալ է գործ. և միջասահման զայն ասեն, զորոյ հնար է տալ զհաւանելի պատճառս գործելոյն։

Այս արդ երրեակ է ըստ Պանետիոսի խորհուրդ ձեռն 'ի գործ առնելոյ։ Նախ՝ երկմտել, արդեօք վայելո՞ւչ իցէ գործն առաջիկայ, եթէ դժպատեհ ինչ խորհուրդ. և յայսմ մտածութեան բազում այն է՝ զի միտք 'ի կարծիս հակառակս տարուբերին։ Այս ապա՝ կամ անձամբ հետազօտել, և կամ խորհուրդ հարցանել, եթէ արդեօք առաջարկեալն խորհուրդ սատար լինիցի՞ 'ի դիւրութիւն կենաց և 'ի զուարճութիւն, 'ի շահաստացութիւն և 'ի փարթամութիւն, 'ի մեծութիւն և յիշխանութիւն, որովք և անձին և իւրայնոց լինիցի ոք պիտանացու. և այս ամենայն խորհրդածութիւն յօգտակարութիւն իրացն ունի զակնարկութիւն։ Երրորդ ազգ երկմտութեան է, յորժամ դիմամարտ տեսանի ընդ վայելչականին՝ այն որ օգտակարն երևի. զի որովհետև օգտակարութիւնն յինքն թուի յանկուցանել, և նմին հակառակ՝ վայելչութիւնն առ ինքն ձգել, դէպ լինի 'ի խորհրդածութեան անդ յայսկոյս և յայնկոյս տարուբերիլ հոգւոյն, և 'ի վարանս հոգոց անկանել միտք։

Յայդմ բաժանման զերկու ինչ իրօք զանց արարեալ է (ուր զանց առնել զիւիք 'ի բաժանելն թերութիւն մեծ է)։ Վասն զի խորհել բնաւորեցաք՝ ոչ միայն եթէ արդեօք 'ի դէպ իցէ՝ եթէ դժպատեհ, այլ և 'ի յանդիման լինել երկուց վայելչականաց՝ ո՞ր այն յերկուց անտի վայելչագոյն իցէ. ըստ նմին օրինակի, և ո՞ր այն յերկուց օգտակարացն իցէ օգտակարագոյն։ Այս այսպէս, զոր նա երրեակ վարկաւ լինել զբանն՝ մեք 'ի հնգեակ մասունս զնոյն հարկ համարիմք տրոհել։ Վասն որոյ ճառեսցուք նախ զվայելչականէն, բայց կրկնակի. ապա նոյնօրինակ զօգտակարէն, և 'ի վերջէ զհամեմատութենէ նոցուն։

Դ. Նախ քան զամենայն, կենդանեաց ամենեցուն տուեալ է 'ի բնէ՝ պաշտպանել անձին և կենաց և մար-

1 Κατόρθωμα.

2 Καθῆκον.

մնոյ, և խորշել յորոց վնասակարն երևին, և հանդերձել խնամով զամենայն կարևորս առ 'ի կեանս, զոր օրինակ զձմերայն և զյարկ, և որ սոցին նման են: Պարձեալ, հասարակ է կենդանեաց ամենայնի իղձ զուգաւորութեան՝ ծննդագործութեան աղագաւ, և ծննդոցն խնամարկութիւն: Այլ ընդ մարդ և ընդ անասուն այս մեծապէս է խտիր, զի անբանք որովհետև զգայութք շարժին, յայն ինչ և եթ զանձինս յարդարեն՝ որ մերձ և առաջի կայ նոցա, և կարի նուազ զգան զանցելոցն կամ զհանդերձելոց ինչ իրաց: Իսկ մարդ՝ քանզի բանի է հաղորդական, որով նկատէ զհետևորդս, և զիրացն տեսանէ զպատճառս, և ոչ անգիտանայ զնոցին յառաջատութիւն և զյառաջ խաղացմունս, և զնմանութիւս անդամ համեմատէ, և ընդ առաջիկայսն զհանդերձեալս ընդրդէ. սմին իրի դիւրաւ տեսանէ զընթացս բովանդակ կենացն, և կանխաւ պատրաստէ զպէտս կարևորս առ նորին պահպանութիւն:

Այն ինքն բնութիւն բանականութեանն զօրութք ընտելացուցանէ զմարդ ընդ մարդոյ, և 'ի միաբանութի կըթէ բանից և կենաց, և բնաւորէ զառաջինն սէր իմն ազգողագոյն առ ծնունդս անձին, և սաստէ յօժարել 'ի համախմբութիւնս և 'ի հանդէսս մարդկան, և անձամբ լինել հանդիսատես. և վասն այսորիկ փութայ հանդերձէ զոր ինչ միանգամ արբանեկեն 'ի պաշտել և 'ի կենցաղել միանգամայն. և ոչ անձին միայն, այլ և կնոջ և զաւակաց և այլոց ևս սիրելեաց խնամ ունել պարտ վարկանի: Այս փոյթ պնդութեան է որ զարթուցանէ զոգիսն և 'ի մեծամեծս տայ ձեռնարկել:

Իսկ առաւել քան զայլն ամենայն սեպհական է մարդոյ ճշմարտախնդիր լինել, և ճշմարտութեան խուզարկու: Սորին վասն յորժամ թափուր իցեմք 'ի կարևոր ինչ գործոց և 'ի հոգոց, յայնժամ իղձ լինիմք տեսանել ինչ կամ լսել և կամ ուսանել, և հարկ համարիմք առ երանելի կեանս զիրացն ծանօթութիւն՝ զգաղտնեաց և զզարմանալեաց: Յորմէ ունիմք իմաստասիրել, եթէ որ ինչ ճշմարիտ է և պարզ և յստակ՝ նոյն և յանկաւոր ամենայնիւ բնութեան մարդոյ:

Ընդ այսմ բաղձանաց տեսանելոյ զճշմարտութիւն կից է. և յօժարութիւն իմն իշխանական. որով հոգին

բարիոք կերպարանեալ 'ի բնութենէ՝ չկամի հնազանդել ումեք, բայց այնմ որ օրինադրէ կամ ուսուցանէ, և կամ օգտի աղագաւ՝ իրաւամբք և օրինօք լինի հրամանատար. յորմէ 'ի վեր երևի մեծանձնութիւն, և մարդկեղէն իրաց արհամարհութիւն։

Ոչ փոքր ինչ զօրութիւն է և այն՝ բնութեան և բանականութեան, զի այս և եթ կենդանի իմանայ՝ զինչ կարգն իցէ, զինչ վայելչականն, և զինչ յեղանակ բանից և գործոց։ Սորին վասն և 'ի նոսա գլխովին որք ընդ զգայութեամբ անկանին տեսանելեաց, ոչ այլ ոք 'ի կենդանեաց իմանայ զգեղեցկութիւն, զվայելչութի, և զմասանց համեմատութիւն։ Եւ զայս նմանութիւն բնութիւնն և բանականութիւն յաչաց յոգին փոխաբերեալ՝ զևս առաւելագոյնն 'ի դէպ վարկանի պահել զգեղեցկութիւն, զանայլայլութիւն, և զկարգ 'ի խորհուրդս և 'ի գործս, և զգուշանայ չառնել ինչ անվայելուչ և կանացի. նոյնպէս և յամենայն կարծիս և յաբարուածս չխորհել ինչ կամ չգործել մեղկութբ։ Ի սոցունց աստի իրաց շարադրեալ՝ գայ յերևան խնդրելին մեր վայելչականն. որ թէ և չիցէ ազնուացեալ, բայց վայելուչ իցէ. և այն իսկ է զոր 'ի բնէ գովելի ասեմք, թէպէտ և չգովիցի յումեքէ։

Ե. Եւ արդ աւասիկ զկերպարանն գոգցես, որդեակ Մարկիէ, և իբրու զդէմս իմն տեսանես զվայելչականին. որ եթէ առ աչս լինէր նկատելի, սխրալի սիրով յինքն ձգէր զամենեսեան, որպէս ասացն Պղատոն։ Այլ որ ինչ միանգամ վայելչականն է՝ 'ի միոյ անտի ծագէ 'ի քառեակ մասանցն. վասն զի կամ յածի 'ի քաջ դիտողութեան ճշմարտութեան և յաչալրջութեան, կամ 'ի պահել զմարդկան ընկերութիւն, և 'ի հատուցանել իւրաքանչիւր զիւրն, և 'ի հաւատարմութեան ուխտից և դաշանց. կամ 'ի մեծանձնութեան և յարութեան քաջութեան վսեմ և անպարտելի ոգւոյ, և կամ յամենայն բանից և 'ի գործոց 'ի կարգն և յեղանակ, յորս հաստատեալ է պարկեշտութիւն և չափաւորութիւն։

Եւ սոքա չորեքեան թէպէտ և կապեալ են ընդ իրեարս և աղխաղխեալ, բայց մի մի 'ի նոցանէ ծնանին զանազանեալ ազգս պատշաճից. զոր օրինակ յառաջնոյ անտի մասնէ յորում կարգեալ դնեմք զիմաստութիւն

և զխոհականութիւն, ծնանի խոյզ և խնդիր և գիւտ ճշմարտութեան. և այնմ առաքինութեան այս պաշտօն է սեպհական։

Այլ որ ոք նրբատես լինիցի եթէ զինչ ստուգագոյն կայցէ յիւր իւրաքանչիւր, և կարող գտանիցի սրատես լինել պատճառաց, և արագ արագ բացատրել, զնա օրէն է խոհականագոյն և իմաստնագոյն քան զամենեսեան ասել։ Սորին աղագաւ ճշմարտութիւնն ներքոյ անկանի նմա իբրև նիւթ ինչ՝ զորմէ ճառէ և 'ի նմին դեգերի։

Իսկ երից այլոց առաքինութեանց հարկք առաջի եդան պատրաստել և պաշտպանել զայն ինչ իւր՝ յորս գործք կենաց բովանդակին. զի միաբանութիւն մարդկութեան և զօդ՝ անքակ պահեսցի, և շուք և մեծութիւն անձին փայլեսցէ եթէ 'ի յաճախել զգոյս, և 'ի հանդերձել զշահեկանս անձին և իւրոցն, և եթէ ևս առաւել՝ յարհամարհել զսովլիմբք։ Իսկ կարգ և անայլայլութիւն և յեղանակ, և որ սոցա նման են, յայն ազգ պարապին՝ յորում պէտք են 'ի կիր արկանել զարդիւնս ինչ իրաց, և ոչ զմտածութիւն ևեթ։

Քանզի յորժամ իրացս այսոցիկ որովք վարիմք 'ի կենցաղումս՝ զյեղանակ ինչ և զկարգ դնեմք առընթեր, կայ և պահի արժանն և վայելչական։

Դ. Ի չորից անտի տեղեաց՝ յորս զվայելչականին բնութիւն և զզօրութիւն բաժանեցաք, նախկինն այն որ հաստատեալ է 'ի գիտութեան ճշմարտութեան՝ յանկաւորագոյն է մարդկեղէնս բնութեան։ Վասն զի ամենեքին ձգիմք 'ի ցանկութիւն ճանաչման և գիտութե՛, և 'ի նմին գերազանց հանդիսանալ գեղեցիկ վարկանիմք. իսկ սայթաքել, սխալել, տգիտանալ և խաբիլ՝ և՛ չար համարիմք և նախատինս։ Ի սմին կարգի, որ և բնաւորական է և վայելչական, յերկուց զգուշալի է մեզ թերութեանց. մի՝ զի մի զանծանօթսն իբրու ծանուցեալս ինչ համարեսցուք, և յանխորհուրդս հաւանութիւն ընծայեսցուք նոցա. և որ կամի խորշել 'ի թերութենէ աստի (և պարտի իսկ կամել ամենայն ոք), հարկ է նմա ծախել և զժամանակ և զփոյթ ջանից 'ի խորհել զառաջիկայ իրաց։

Միւս ևս թերութիւն այն է, զի ոմանք փոյթ մեծ

յոյժ և ճիգն բազում ցուցանեն յ[illegible] և դժուարինս, թէպէտ և ոչ հարկաւոր ինչ իցէ։ Նա խոստափեալ միանգամ 'ի մոլութեանց ստոր, որչափ ինչ ջան և հոգ դիցէ ոք յիրս լաւութեան և արժանիս գիտութեան, գովելի է իրաւամբք. որպէս յաստղաբաշխութեան լուաք զԿայիոս Սուլպիկիոս[1], և յերկրաչափութեան մեզէն ծանեաք զՍեքստոս Պոմպէոս[2]. դարձեալ և զյոլովս 'ի տրամաբանականն, և զյոքունս 'ի քաղաքական իրաւունս։ Այս ամենայն արուեստք դեգերին 'ի քննութիւն ճշմարտութեան. այլ առ այսպիսւոյ ուսումնասիրութեան խափանիլ 'ի կարևոր գործոց՝ հակառակ է պատշաճից։ Զանզի առաքինութեանն գովութիւն բովանդակ յարդիւնս անդ է. և սակայն ստէպ լինի յուլանալ յայնմանէ, և ստէպ ստէպ դառնալ անդրէն յուսումն. այլ և յոյզք մտաց որ ոչ երբէք հանդարտեն՝ կարող են զմեզ 'ի փոյթ գիտութեան մարզել նաև առանց մերոյ աշխատութեան։ Արդ ամենայն մտածութիւն և շարժութիւն ոգւոյ յածի կամ 'ի խորհել բունն հարկանել զիրաց պատշաճից և զյանկաւորաց առ բարւոք և երջանկաւէտ կեանս, և կամ 'ի փոյթ գիտութեան և ծանօթութեան։ Նա յաղագս առաջնոյ աղբեր պատշաճից շատ լիցին ասացեալքս։

Է. Իսկ վասն երից մնացելոց ինքնին իսկ յայտ յանդիման երևին պատճառք՝ որովք ընկերութիւն մարդկան ընդ միմեանս, և կենաց իմն կցորդութիւն սահմանեալ բովանդակի։ Նա մասունք նորա երկու. արդարութիւն՝ յորում մեծապէս փայլէ առաքինութիւն, և անտի առնուն զանուն արք բարիք. և սմին ըծակից՝ բարերարութիւն, զոր և անխտիր օրէն է մարդասիրութիւն և կամ առատաձեռնութիւն յորջորջել։ Այլ արդարութեան գործ է նախկին, զի ոչ ոք ոչ ումեք վնասեսցէ՝ եթէ ոչ հարստահարեալ յանիրաւի. և երկրորդ, զի

1 Կայիոս Սուլպիկիոս Գաղլոս, այր ճոխ գիտութեամբ ճարտարխօսութեան և քերթողութեան, և ևս առաւել աստեղաբաշխութեան, որ ինքն լեալ զօրաց յամին 595 շինութեան Հռովմայ, զխաւարմանէ լուսնի գուշակ եղև զօրականին յառաջ քան զճակատամարտն որ ընդդէմ Պերսեայ. և զպատճառսն ևս նորանշան երևմանն 'ի մէջ բերեալ՝ աներկիւղս յայնմանէ զմարտիկսն արար։

2 Սա հօրեղբայր է մեծին Պոմպէի, բազմահմուտ իմաստութեան մանաւանդ՝ քան քաղաքական արութեամբն հռչակեալ։

զհասարակացն [illegible] հասարակաց 'ի կիր արկանիցէ, և զառանձնական[illegible]և զիւրս ինչ։

Իսկ առանձնականն 'ի բնէ կայ և ոչ ինչ. այլ կամ վաղեմի ժառանգութեամբ, որպէս որք երբեմն 'ի ձեռս բերին զանգործ վայրս, կամ յաղթութեամբ՝ որպէս որք պատերազմաւ տիրեցին. և կամ օրինօք, դաշամբ, պայմանաւ և վիճակաւ։ Ըստ յայսմանէ անդն Արպինեան՝ Արպինայց ասի, Տուսկուղեանն Տուսկուղեանց։ Ըստ այսմ օրինակի է և առանձին կալուածոց սահմանադրութիւն։ Եւ արդ քանզի այր իւրաքանչիւր իւրացուցանէ զայս ինչ և զայն՝ որ 'ի բնէ հասարակացն էր, որ ինչ առն առն հանդիպի՝ զայն պինդ կալցի իւրաքանչիւր ոք. սմին իրի այր աւելախնդիր խանգարէ զիրաւունս մարդկեղէն ընկերութեան։

Այլ քանզի, որպէս գեղեցիկ գրեաց Պղատոն[1], ոչ մեզ միայնոյ ծնաք, այլ մասն ինչ ծագման մերոյ՝ հայրենեաց է անկ, և մասն ինչ բարեկամաց. վասն որոյ հաճոյ թուի ստոյիկեանց ասել՝ թէ ծնունդք կամ բերք երկրի 'ի պէտս մարդկան գոյացորին բովանդակ, իսկ մարդիկ մարդկան աղագաւ են ծնեալ, որպէս զի միմեանց և այլոց օգտամատոյց լինել մարթասցին։ Յայսմ մասին պարտ է մեզ զհետ երթալ առաջնորդութեան բնութեան, և զհասարակացն օգուտ մատակարարել փոխոխ պաշտամամբք, առիւ և տրով. և եթէ արհեստիւ իցէ, եթէ աշխատութեամբ և կամ գոյիւք ընչից զօդել 'ի միաբանութիւն զմարդիկ։

Հիմն ամենայնի է հաւատք արդարութեան. այս է հաստատութիւն և ճշմարտութիւն բանից և դաշնաւորութեանց։ Վասն որոյ թէպէտ և խիստ թուեսցի ումեք բանս, բայց համարձակեսցուք նմանող լինել ստոյիկեանց, որք մեծաւ պնդութեամբ հետազօտեն՝ թէ ուստի սկիզբն առին բանքն. և հաւատասցուք անուանեալ հաւատոց կամ հաւատարմութեան, զի եղիցի որ ասացաւն։ Իսկ անիրաւութեան կրկին ազգք են. մի այնոցիկ որք զրկեն, և միւս ևս այնոցիկ որք ոչ 'ի բաց վանեն զանիրաւութիւն՝ յորժամ ձեռնհաս իցեն՝ 'ի զրկելոց անտի։ Վասն զի որ ոք յանիրաւի յարձակի

1 Ի Թուղթն Թ., առ Արքիտաս տարենտացի։

յուրոյք վերայ բարկութք, և կամ այլով իւիք յուզմամբ գրգռեալ, այնպիսին ձեռս ամբառնալ թուի 'ի վերայ ընկերին. իսկ որ ոչն պաշտպանէ, և ոչ դիմակալէ անիրաւութեան յորժամ կարող իցէ, նոյնչափ ես ընդ ստգտանօք է՝ որչափ եթէ ոք անտես առնիցէ զծնողս կամ զբարեկամս և կամ զհայրենիս:

Ապաքէն այն անիրաւութիւնք զորս կամաւ ոք առնէ վնասելոյ վասն, բազում անգամ յերկիւղէ գան յառաջ. ուր որ խորհի վնասել այլում՝ երկնչի զի մի գուցէ յոչն առնել զայդ՝ ինքն տուժեսցի իւիք: Բայց մեծաւ մասամբ յանիրաւել բերին մարդիկ, զի ստասցին որում ցանկացեալն են. և յայսմ վատթարութեան մեծապէս 'ի վեր երևի ագահութեանն ախտ:

Ը. Իսկ խնդրին մեծութիւնք՝ նախ 'ի պէտս հարկաւորս կենաց, և երկրորդ 'ի վայելս փափկութեց: Յայտ մեծանձն արծաթսիրութիւնն վերածի 'ի ճոխութիւն և 'ի կարողութիւն պարգևաբաշխութեան. զոր օրինակ 'ի մօտոյ Մարկոս Կրասոս[1] վկայէր, թէ ոչ մի ինչ ընչաւէտութի շատ գրեսցի այնմ որ իշխան լինել կամիցի հասարակաց, և արգասեօք նորին չկարիցէ դարմանել զզօրն: Զուարճալի իսկ են մեծավայելուչ հանդերձանք, և սպասք շքոյ պանծալիք և հարուստք, և 'ի ստացանել ծագեցաւ անչափութիւն ընչասիրութե: Ոչ պարսաւելի ինչ է մեծութիւն ազգատոհմի ուրուք՝ որ ոչն ստնանիցէ ումեք. այլ խորշելի է միշտ անիրաւութիւն:

Բայց նոցին առաւելապէս 'ի մտացօնս լինի արդարութիւն, որք անկանին յիշխանասիրութիւն, 'ի պատուասիրութիւն և 'ի փառասիրութիւն. քանզի քաջայայտ է գրեալն առ Էննիոսի.

Ընկերական չիք պետութեանց ուխտ սիրոյ,
Չիք և հաւատ իշխանական որերոյ:

Վասն զի յոր ինչ միանգամ ոչ կարեն բազումք վերագոյն հանդիսանալ, անդ լինի ստէպ կագ և կռիւ այնպիսի՝ մինչև ամենայնիւ դժուարանայ սուրբ պահել զընկերութիւն: Զնոյն յայտ արար այժմիկ ձեռներէ-

1 Մ. Կրասոս փարթամագոյն 'ի Հռովմայեցիս գտեալ՝ մեծատուն կոչեցաւ: Սա ինքն ընդդէմ Պարթևաց երթեալ անկաւ 'ի մարտի: Զարծաթսիրութենէ նորա ճոխաբար ճառեն Պլուտարքոս և Դիոն և Ապպիանոս:

ցութիւն Կայիոսի Կեսարու, որ վեր 'ի վայր արար զա-
մենայն իրաւունս զաստուածայինս և զմարդկայինս[1] 'ի
պատճառս իշխանութեան, զոր մոլար կարծեօք սեպհա-
կանեաց անձին։ Անբերելի է յայսմ կարգի այն՝ զի 'ի
վսեմական և 'ի զգօնագոյն ոգիս առաւել ևս գտանին
ցանկասիրութիւնք պատուոյ և իշխանութեան, գահու
և փառաց։ Վասն որոյ և առաւել հարկ է զգուշանալ
չյանցանել ինչ յայդմ մասին։

Այլ յամենայն իսկ անիրաւութիւնս խտիր մեծ է
'ի յեղանակս անիրաւելոյն. և արժան է միտ դնել՝ ե-
թէ արդեօք յամբոխմանէ իմեմնէ ոգւոց, որ բազում
անգամ սուղ է և առժամեան, եթէ կամաւ և խոր-
հրդով գործիցի։ Քանզի թեթևագոյնք են որ յեղա-
կարծ ինչ զրգռութեամբ պատահեն՝ քան զորս խոր-
հրդածութեամբ և պատրաստութեամբ ներգործին։
Այս յաղագս անիրաւելոյ առ այլս այսքան։

Թ. Իսկ զանց զպաշտպանութեամբ առնելոյ, և թող-
լոյ զպարտուպատշաճ պաշտօնն՝ բազմապատիկ պատա-
հեն պատճառք։ Քանզի են որք չկամին յանձն առնուլ
զթշնամութիւնս կամ զաշխատութիւն կամ զծախս.
և են որք անհոգութեամբ, յուլութեամբ, դանդա-
ղութեամբ և կամ ուսումնասիրութեամբ և այլովք
ևս զբաղանօք խափանեալք՝ թողուն լքանեն զորս պար-
տական էին պաշտպանել։ Սմին իրի պարտ է տեսանել,
գուցէ անբաւական իցէ ասացեալն 'ի Պղատոնէ[2] յա-
ղագս իմաստասիրաց, թէ 'ի քննութիւն ճշմարտութե-
դեգերելն, և քամահեն զիրօք յորս յոլովք անյագա-
բար բերին, և արեամբ չափ զնոցանէ կռուին ընդ մի-
մեանս. և զի յոչինչ համարին զայս ամենայն, վասն այ-
նորիկ արդարք են։ Վասն զի զհետ երթեալք առաջնոյ
ևեթ ազգի արդարութեան, այս ինքն զգուշացեալք
չվրկել զոք անիրաւութեամբ, 'ի միւսն անկանին անի-
րաւութիւն. քանզի ուսումնասիրութբ խափանեալք՝
անտես առնեն զոր պարտ էր նոցա պաշտպանել։ Վասն

1 Զաստուածայինսն, իբր զի զմե-
հեանս դիցն և զԿապիտոլիոն կո-
ղոպտեաց. և զմարդկայինս, զի զքա-
ղաքս աւերեաց, և զգաւառս և
զպետութիւնս արծաթոյ վաճա-
ռեաց։

2 Յղ. Հասարակ. գիրք Զ. ու-
րանոր բացայայտագոյնս է տեսա-
նել զայս իմաստ Կիկերոնի։

որոյ և 'ի գործակալութիւն հասարակաց իրաց մատչել ոչ արժան զրեմ նոցա, բայց առ հարկի բռնադատութեամբ. ուր արդարացի ևս էր կամաւոր լինել իրացդ. քանզի գործ ուղղութեան այդուիկ իսկ արդար է, եթէ կամաւոր իցէ:

Եւ և որ առ փութոյ զառանձին իրս հոգալոյ, և կամ առ մարդկան ինչ ատելութեան, զիւրեանցն ասեն գործել գործ, զի մի երևեսցին անիրաւել յոք. և այսպիսիք 'ի միոյ ազգէ անիրաւութեան ազատացեալք՝ 'ի միւսն գլեն զանձինս. վասն զի թողուն լքանեն զընկերութիւն կենաց, և ոչ ինչ փոյթ տանին այնմ, ոչ աշխատութիւն և ոչ ինչս ծախեն 'ի նոյն:

Եւ քանզի երկուս ազգս անիրաւութեան եդեալ առաջի՝ զպատճառսն ևս սորինթեր կարգեցաք միոյ միոյ, և յառաջագոյն սահմանեցաք՝ թէ որո՛վք իրօք արդարութիւնն պարագրի, դիւրաւ կարող եմք այսուհետև դատել զպատշաճն իւրաքանչիւր ժամանակի, միայն թէ մի լիցուք կարի անձնասէրք:

Վասն զի դժուարին է օտարին հոգ: Թէպէտ և Տերենտեանն այն Քրեմէս[1] զմարդկայինս ամենայն ոչ ինչ օտար յիւրմէ համարի. բայց սակայն, որովհետև զայն ինչ իրս առաւել ըմբռնեմք և յանձին զգամք՝ որ միանգամ կամ աջող և կամ ձախող մեզ հանդիպին քան այլոց, զի զնոսին իբր մեծաւ անջրպետեալ միջոցաւ տեսանեմք, այլազգ դատեմք զայլոց քան զմերն: Սորին աղագաւ բարւոք խրատ տան՝ ոյք արգելուն չառնել ըզգործ ինչ՝ զորոյ յերկբայս իցես զիրաւացի կամ զանիրաւ լինելոյն. քանզի իրաւացին ինքնին արտափայլէ. իսկ երկմտութիւն զանիրաւախոհութէ տայ զնշանակ:

ժ. Այլ հանդիպին բազում անգամ ժամանակք այնպիսիք՝ յորս որ ինչ իրք արժանաւորք երևէին առն արդարոյ, և մարդ բարի 'ի մէնջ անուանելոյ, փոփոխին, և հակառակքն գործին. զոր օրինակ հատուցանել զաւանդն, զխոստմունսն կատարել, և որ այլ ինչ այսպիսիք իցեն՝ որ առ ճշմարտութիւն և առ հաւատս անկանին, զսոսին յեղաշրջել ըստ տեղւոյն, և ոչ պահել,

1 Քրեմէս ոմն դերասան 'ի բանի զայս բան, 'ի քըքիջ մեծ ծա-
միում 'ի կատակերգութեանցն Տե- ղու զունկնդիրսն ասի զարթու-
րենտեայ բարբառեալ 'ի տեսա- ցեալ:

արդարացի լինի գործ ։ Վասն զի վայել է վերածել 'ի հիմունս անդր արդարութեան՝ զորս 'ի սկզբան անդ եդի առաջի. Նախ՝ զի մի լիցի ումեք վնասել. և երկրորդ՝ զի 'ի պէտս գայցէ հասարակաց օգտի ։ Ի փոփոխել ժամանակաց՝ փոխի և պատշաճն, և չմնայ միշտ նոյն ։ Քանզի է երբէք զի խոստումն ինչ և դաշն՝ չէ ինչ օգուտ թէ կատարեսցի. անօգուտ կամ այնմ՝ առ որ խոստումն եղև, և կամ այնմ որ խոստացաւն ։ Ո՛չ եթէ որպէս յառասպելսն ասի, Պոսիդոն չառնէր զոր խոստացաւն Թեսէոսի, Թեսէոս ոչ որբանայր յորդւոյ իւրմէ Հիպողիտայ. քանզի յերից անտի ըղձութեանց, ըստ գրեցելումն երրորդ այն էր՝ զի 'ի ժամ բարկութե խնդրեաց զկորուստ Հիպողիտայ, և 'ի կատարմանն անդ իրացն սուգ մեծ զգեցաւ[1] ։ Ապա և ոչ այն խոստմունք պահելի են, որ անօգուտ իցեն որում խոստացարդ. և ոչ այնոքիկ՝ որ առաւել վնասեն քեզ՝ քան թէ օգտեն որում խոստացարն ։ Հակառակ պատշաճից է՝ ոչ նախապատիւ առնել զմեծն քան զփոքր. զոր օրինակ եթէ եղեալ իցէ քո բանս՝ գալ 'ի փաստաբանութիւն առաջիկայ դատիդ, և յայնմ վայրի որդին քո ըմբռնեսցի 'ի ծանր խօթութիւն, ոչ է հակառակ պատշաճից՝ չառնել զոր խօսեցարն. մանաւանդ անպատշաճս գործէ այն որում խոստումն եղև՝ եթէ տրտնջեսցէ որպէս լքեալ առ 'ի քէն ։ Եւս առաւել, ո՛ ոչ գիտիցէ եթէ չէ արժան կատարել զայն խոստմունսն՝ զորս արարեալ իցէ ուրուք բռնադատութեամբ երկիւղի, և խաբանօք դաւանաց. և յոլովք ազատ կացուցանին 'ի սոցանէ դատաւորական իրաւամբք, և կէսք օրինօք ։

Բազում այն է զի անիրաւութիւնք գործին և խարդախանօք իւիք, այս է ճարտարարուեստ և խորամանկ թարգմանութեամբ իրաւանց. ուստի յառակս եղև ասել. « Ծայրագոյն իրաւունք՝ ծայրագոյն է անիրաւութիւն » ։ Եւ այսու օրինակաւ բազում ինչ լինի յանցանել 'ի հասարակաց պետութեան. որպէս այն՝ որ վասն զի երեսուն տիւ սահմանեալ էր պարապոյ հաշ-

[1] Թեսէոս հրաման առեալ 'ի Պոսիդոնէ՝ խնդրել զինչ և կամիցի, հայցեաց՝ ասեն առասպելք՝ զերիս զայսոսիկ. ա, զի դարձ արասցէ 'ի սանդարամետաց. բ, զի 'ի բաւիղն արձակեսցի. և գ, զի մեռցի որդին իւր Հիպողիտոս՝ որ զրպարտեալն էր 'ի Փեդրայ ։

տութեան ընդ թշնամւոյն, գիշերի ասպատակէր յանդաստանս նորա. զի ոչ վասն գիշերոյ, այլ վասն տուընջեան էր ասէ պայմանն[1]: Նաև ոչ մերն է գովելի[2] (եթէ ճշմարիտ իցէ) թէ Կուինտոս Փաբիոս Լաբէոն[3], կամ թէ այլ ոք (զի 'ի լրոյ ևեթ համբաւոյ ունիմ զայդ) դատաւոր առաքեցաւ 'ի ծերակուտէն վասն որոշման սահմանաց Նոլացւոցն և Նէապօլսեցւոց. արդ եկեալ (ասեն) 'ի տեղին, ուրոյն ուրոյն խօսեցաւ ընդ կողմանսն երկոսին, զի մի ինչ ագահեսցեն և մի աւելախնդիր լինիցին. այլ լաւ համարեսցին յետս ընկրկել՝ քան յառաջ խաղալ: Զայս իբրև արարին երկոքեան, անդաստան ինչ թողաւ 'ի միջավայրին: Արդ զնոցա սահմանս՝ որպէս նոքայն պնդէին որոշեաց, և զոր 'ի միջոցին թողաւ՝ ժողովրդեանն հռովմայեցւոց սեպհականեաց: Խաբել է այդ, և ոչ դատ առնել. վասն որոյ յամենայնի զգուշանալ արժան է յայդպիսւոյ խորամանկութենէ:

ԺԱ. Են ինչ ինչ 'ի պատշաճից և ընդդէմ այնոցիկ 'ի գործ արկանելիք՝ յորոց զրկանս ինչ ընկալար. զի գոյ յեղանակ և վրիժուց և պատժոց: Արդ ոչ գիտեմ, եթէ բաւական՞ն իցէ հարստահարողին զղջալ ընդ անիրաւութիւնն զոր գործեաց, որով յայնմհետէ չառնիցէ նա ինչ յայնպիսեաց անտի, և այլք դանդաղագոյնք գտանիցին յանիրաւութիւն:

Ի հասարակաց պետութեան առաւելապէս խնամ ունել հարկ է իրաւանցն մարտի. զի որովհետև կրկին ազգք են կռուելոյ, է որ կագելով և է որ բռնի առնելով, յորոց առաջինն մարդուն է սեպհական, և երկրորդն գազանաց, յայնժամ օրէն է յերկրորդն դիմել՝ յորժամ անմարթ իցէ առաջնովն վարել:

Սմին իրի յայն սակս ևեթ 'ի պատերազմն օրէն է ձեռն արկանել՝ զի զերծ 'ի զրկանաց 'ի խաղաղութեան լիցի կեալ: Իսկ յետ 'ի գլուխ տանելոյ զյաղթութիւն՝ պարտ է խնայել 'ի նոսա որ չեղենն անագորոյնք կամ ապառումք 'ի պատերազմի. զոր օրինակ մերս նախնիք

1 Քանզի 'ի լատին լեզու նոյն բառ dies, զտիւ և զօր նշանակէ անխտիր:

2 Հռոմայեցի այր:

3 Լաբէոն հիւպատոս հռչակեալ է որպէս այր բանաստեղծ և իմաստուն և պերճախօս:

զՏուսկուղացիս, զԷկուացիս, զՎոլսկեանս, զՍաբինացիս և զՀերնեանս[1] 'ի քաղաք անգամ ժողովեցին. բայց զԿարքեդոն և զՆումանտիա 'ի հիմանց տապալեցին. իցէ թէ ոչ և զԿորնթոս. այլ կարծեմ թէ ինչ մի իմացան նոքա վասն յաջողակութեան տեղւոյն առաւելապէս, զի մի՛ լինիցի երբեմն յորդոր պատերազմ յարուցանելոյ տեղւոյն դիւրին: Բայց ըստ իմում խորհրդոյ, լաւ է միշտ հաշտութեան լինել 'ի խնդիր՝ ուր չգուցէ կասկած դաւաճանութեան: Յորում մասին եթէ ինձ անսային, ունել ունէաք՝ եթէ ոչ զամենաքին լաւն, գէթ տէրութիւն ինչ հասարակաց, որպիսի չէք զարդիս և ոչ մի: Եւ ընդ այնոսիկ որոց յաղթեցերն զօրութեամբ՝ բարւոք պարտ է վարել. որպէս և որք զէնընկէց անձնատուր լինին 'ի սպարապետն, սիրով են ընդունելի, թէպէտ և մանգղիոնի նոցա խախտեալ իցէ զպարիսպն: Յայսմ կարգի այնչափ խնամով արդարութիւն 'ի մերոցս պահեցաւ, զի որք քաղաքաց և ազանց յաղթեալ մարտիւ պատերազմի՝ ընդ հովանեաւ ընկալան զնոսա հաւատարմութեան իւրեանց, պաշտպանք կացին նոցա ըստ նախնեացն օրինի:

Բայց արդ ուղղութիւն պատերազմի կարի սրբաբար օրինադրեցաւ յիրաւունս հռովմէական ժողովրդեան՝ լինել բանիւ իրաւաբան վճռատուի: Յորմէ 'ի դէպ է իմաստասիրել՝ թէ չէք պատերազմ արդար, բայց որ կամ 'ի դարձ լինի փոխարինաց, և կամ վաղագոյն ազդի և հրատարակի: Պոմպիղիոս[2] սպարապետ ընդ ձեռամբ ունէր գաւառ, և 'ի գնդի նորա զինուորեալ էր 'ի համբակաց կարգի որդին Կատոնի: Արդ յորժամ հաճոյ թուեցաւ Պոմպիղիոսի 'ի բաց արձակել զլեգէոն մի, արձակեաց և զԿատոնի որդին՝ որ յայնմ լեգէոնի էր զինուորեալ: Այլ 'ի կալ մնալ նորա 'ի զօրու պատերազմասէր մտօք, գրեաց Կատոն առ Պոմպիղիոս, զի թէ յանձն առնու մնալ նմին 'ի զօրու անդ, պարտաւոր արասցէ զնա կրկին երդմամբ զինուորութեան.

1 Ազգք կամ տոհմք ազանց որ 'ի հնումն 'ի Լատիոն բնակեալ՝ մարտ ընդ Հռովմայեցիսն յաճախ յօրինէին:

2 Լաւ ևս թուի հնախօսից Պ. Էմիլիոս ընթեռնուլ կամ իմանալ տառանօր. զի նա սպարապետ անուանի եկաց մակեդոնական պատերազմին. իսկ Պոմպիղիոսն անուն տարրոսի իմն թուի ասեն:

էր զի կորուսեալ միանգամ զառաջինն՝ ոչ ևս կարէր իրաւամբք մարտնչել ընդ Թշնամիս ։

Մայրքան էր աչալուրջ զգուշութիւն 'ի յարուցանել զպատերազմ։ Կայ նամակ ծերոյն Մարկոսի Կատոնի առ Մարկոս որդին, յորում գրէ ․ Լսեմ, զի 'ի բաց արձակեալ է զքեզ հիւպատոսն՝ երբ զինուորն էիր 'ի Մակեդոնիա 'ի պերսեան մարտին ․ և արդ ազդ առնեմ զգոյշ լինել քեզ չմտանել 'ի պատերազմ ․ զի չէ օրէն որոց չիցեն 'ի զինուորութեան՝ մարտ դնել ընդ Թըշնամեաց ։

ԺԲ ․ Այլ զայն ևս յուշ առնեմ, զի որ անձամբ անձին մարտիկ հանդիսանայր, այնպիսին հիւր կոչէր՝ մեղմութեամբ ձայնիւն զիրացն դժնդակութի ամոքելով։ Քանզի զոր այժմ հիւր կամ օտար ձայնեմք, առ նախնեօք պանդուխտ անուանէր[1] ։ Զայդ յայտ առնեն երկոտասան տախտակքն, յասել անդ ․ « Կամ օր սահմանեալ ընդ օտարի » ․ և դարձեալ, « Ընդդէմ օտարականի մշտնջենաւոր իրաւունք » ։ Այլ զինչ աւելի հեզաբանութիւն քան զայդ կայցէ ․ ընդ որում մարտ մղես՝ այդպիսի մեղմական վարել յորջորջմամբ ․ միայն թէ զայդ անուն տակաւ 'ի խստագոյնն վերածեաց հնութիւնն ․ զի 'ի նժդեհէն անձնէ հեռացեալ, մնաց յայնմ՝ զոր զինու ընդդէմ ուրուք ամբառնայ ։

Այլ եթէ յաղագս պետութեան իցէ կռիւն, և մարտիւ պատերազմի խնդիր փառաց, տակաւին հարկ է զի գտցին 'ի նմա այն պատճառք՝ զորս խուն մի յառաջ ասացի լինել արդարացի պատճառս պատերազմաց ։ Սակայն պատերազմունք որ յաղագս զփառս տէրութեանն խնդրելոյ գործիցին, ոչ այնչափ դառնութեամբ են մղելի ։ Քանզի զոր օրինակ այլ ազգ մաքառիմք ընդ քաղաքացւոյ՝ եթէ թշնամի իցէ, և այլ ազգ՝ եթէ պահանջող ․ ընդ առաջնոյն մրցումն է պատուոյ և իշխանութեան, և ընդ երկրորդին վէճ զգլխոյ և զհամբաւոյ ․ այնպէս ընդ Կելտիբերեայսն և ընդ Կիմբրացիս[2] իբրև ընդ Թըշնամիս էր մեր պատերազմ, որպէս զի կացցեն և երկո-

1 Քանզի ըստ լատին բարբառոյ hostis հիւր և թշնամի միանգամայն նշանակէ ․ իսկ զպանդուխտն peregrinus կոչեն ։

2 Կելտիբերեայս զՍպանիացիսն կոչէին նախնիք ․ Կիմբրացիս զհիւսիսաբնակ ազինս Գերմանիոյ ։

քեան, բայց ոչ երկոքեան ևս իշխեցին. իսկ ընդ Լատինս, ընդ Սաբինացիս, ընդ Սամնիտացիս, ընդ Փիւնիկեցիս[1], և ընդ Պիւռոսի՝ յաղագս տէրութեն էր մաքառումն: Փիւնիկեցիք ուխտադրուժք, Հաննիբաղ անագորոյն, այլք արդարագոյն: Գեղեցիկ են յոյժ Պիւռոսին ասացուածք յաղագս դարձուցանելոյ զգերեալսն.

Ոչ ոսկի ինձ խնդրեմ, ոչ գինս 'ի ձէնջ արծաթոյ.
Ոչ մարտի սակարկուս, այլ ընդքաջաց ոյժ ազդոյ.
Երկաթով, ոչ ոսկւով աղէ լիցուք դիմագրաւ,
Եւ թէ մե՞զ տացէ զթագ կմ՛ թէ ձեզ բախտ վիճակաւ,
Զօրութե՞ք փորձեսցուք: Եւ հակիրճ ձեզ այս իմ բան.
Յորոց բախտն անխայեաց 'ի մեծ կռուոյ զօրութեան,
Ես նոցին անխայեամ յազատութիւն անկասկած.
Օն առէք 'ի պարգև, տամ ես ընդ դիցըն մեծաց:

Արդարև թագաւորական, և այսանեան տոհմին արժանաւոր վճիռ:

ԺԳ. Եւ եթէ մի մի յըմբռնելոցն ըստ ժամանակին՝ խոստացեալ ինչ իցեն թշնամւոյն, պարտ է հաւատարիմ 'ի խոստմունսն լինել: Զոր օրինակ յառաջնումն պունիկեան մարտի Ռեգուղոս ձերբակալ 'ի Փիւնիկեցւոցն եղեալ, յորժամ 'ի Հռովմ արձակեցաւ վասն զգերիս փոխելոյ, երդումն տուեալ վասն դարձի, նախ ընդ գալ իւրում յայտ արար յատենի ծերակուտին՝ թէ ոչ բարւոք ինձ թուի յետս տալ զգերեալսն. և ապա մինչդեռ մերձաւորքն և բարեկամք պինդ ունէին զնա, ընտրեաց դարձ առնել 'ի պատուհասի տեղին՝ քան 'ի հաւատարմութենէ խոստմանն տուեցելոյ առ թշնամին վրիպել:

*[2] Իսկ յերկրորդումն պունիկեան պատերազմի ընդ-հետ Կաննեայ ճակատամարտին, արս տասն արձակեաց Հաննիբաղ 'ի Հռովմ, երդմնի արարեալ զնոսա, զի թէ ոչ յաջողեսցին փրկանաւորել զգերեալսն, անդրէն դարձեալ եկեսցեն. և համարակալքն 'ի հասարակաց գանձուց դարմանեցին զամենեսեան զնոսա ցորչափ կեցինն, ևս. և զմին 'ի նոցանէ՝ որ երդմնազանց գտեալ

1 Իմա զԿարքեդոնացիս, որ Պունիկեանք ևս կոչին:

2 Աստեղանիշս այս հատուած մինչև ցմիւս նշանակն պակասէ 'ի բազումս 'ի գրչագրաց, և յերկուանան ոմանք 'ի գիտնոց ընդ հարազատութիւն բանիցն:

էր ։ Քանզի հրամանաւ Սնոփրադայ ելեալ նորա ըստ բանակին, և յետ սուղ ինչ պահու անդրէն դարձաւ, որպէս թէ զմոռացեալն ինչ կամէր առնել․ ապա միւս ևս անգամ մեկնեալ 'ի բանակէն՝ ազատ յերդմանէն զանձն իւր համարէր․ այլ բանիւք չափ էր ազատութիւնն այն, և ոչ արդեամբք․ իսկ 'ի հաւատարմութեան իւր ցանգ 'ի միտս քո պարտիս ուշ ունել և ոչ 'ի բանսդ ։ Այլ օրինակ մեծ յորժ թողին մեզ նախնիք զարդարութեան 'ի վարել ընդ թշնամիս, այնու՝ զի յորժամ այր փախստեայ 'ի Պիւռոսէ առ ծերակոյտն եկեալ՝ բան տայր դեղամահ սպանանել․ զարքայ, ծերակոյտն և Կ․ Փաբրիկիոս ետուն զփախստեայն 'ի ձեռս Պիւռոսի ։ Այսպէս և ոչ զառն թշնամեաց և հզօրի և անպատճառ 'ի մարտ մտուցելոց զկորուստն յանձն առին դաւով լինել* ։

Այլ յաղագս պատերազմական պարտեաց և պատշաճից այսչափ ինչ հերիքասցի ։

Յուշ լիցի մեզ, եթէ առ անաւագս անգամ արդարութիւն է պահելի ։ Արդ անաւագ աշտիճան և վիճակ՝ ծառայիցն է ։ Ոչ անբարիս օրինադրեն՝ որք հրամայեն այնպէս վարել ընդ սոսա, որպէս ընդ վարձկանս․ այս ինքն է զգործ պահանջել, և զարդար տանել զհատուցումն ։ Այլ քանզի կրկնակի լինի անիրաւ, այս է, կամ բռնութեամբ և կամ նենգաւ, նենգն աղուէսու զուգցես անկ, բռնութիւնն առիւծու․ երկոքեան իսկ օտար ամենայնիւ 'ի մարդոյ, այլ նենգն առաւել ատելութեան արժանաւոր ։ Քան զամենայն անիրաւութիւն գլխաւորագոյն այն է, զոր առնիցէ ոք սակս երևելոյ այր բարի ։ Յաղագս արդարութեան շատ լիցին ասացեալքս ։

ԺԴ․ Մնամ է այսուհետև ասել ըստ խոստացելոյ կարգիս՝ յաղագս բարերարութեան և առատաձեռնութեան, քան զոր չիք ինչ յանկաւորագոյն բնութեան մարդոյ․ սակայն և աստ բազում զգուշութեան պէտք են ։ Քանզի նախ զառաջինն պէտք են հայել՝ զի մի 'ի վնաս լինիցի բարերարութիւնն, եթէ այնոցիկ՝ որոց մարդասիրելն կարծեմք, և եթէ այլոց ։ Երկրորդ՝ զի մի առաւելագոյն իցէ մարդասիրութիւնն քան զկար զօրութեան ։ Այլ երրորդ, զի ըստ արժանեաց իւ-

րաքանչիւր լինիցի ։ Քանզի այս հիմն է արդարութե՛ , յոր արժան է և զամենայն վերածել ։ Վասն զի որք միանգամ շնորհ այնպիսի առնեն ումեք , ուստի մնաս հասանիցէ նմա փոխանակ օգտի , ոչ բարերարք և ոչ պարգևատուք են համարելի , այլ մարդահաճոյք մնասակարք ։ Նա որք ոմանց մնասեն՝ զի այլոց բարերարեսցեն , 'ի նմին անիրաւութեան են , որպէս այն թէ զօտարինն յիւրեանս ձգիցեն ։ Բազումք այնոքիկ են , և առաւել փառասէրք և պատուախնդիրք , որք 'ի կիսոց յափշտակեն՝ զի յայլս առատաձեռնեսցեն . և այսպիսիք համարին յանձինս՝ եթէ բարերար առ բարեկամս իւրեանց երևեսցին , եթէ հարստացուսցեն զնոսա որով օրինակաւ և իցէ ։ Իսկ այդ այնչափ օտար է 'ի պատշաճից , զի և չկարէ լինել ինչ այնպէս հակառակ պատշաճից ։ Այլա ուրեմն պէտք են տեսանել զայնպիսի վարել մեզ առատաձեռնութիւն , որ օգտեսցէ բարեկամաց , մնասեսցէ և ոչ ումեք ։ Սմին իրի զՍիղղային և զԿեսարու զփոխաքերութիւն ընչից յարդար տերանց առ օտարս՝ ոչ առատաձեռնութիւն արժան է կարծել . զի չէ՛ և չէ ինչ ազատական՝ որ ոչն իցէ և արդար ։

Միւս ևս կարգ զգուշութեան էր՝ չանցանել մարդասիրութեան ըստ չափ կարողութեան և զայից . զի որք մարդասիրագոյն կամին լինել քան զարժանն , նախ այնու իսկ յանցանեն՝ զի անիրաւին առ մերձաւորս . վասն զի որչափ ինչ 'ի սոսա մատակարարել և թողուլ իրաւացի էր , առ օտարս զնոյն փոխանցեն ։ Նա է յաղախսում առատաձեռնութեան բազում անգամ զօշաքաղութիւն և կեղեքումն անիրաւ , որպէս զի ունիցին ինչս բաւական 'ի պարգևաբաշխութիւն ։ Նա է իսկ տեսանել զկոյրս յայնցանէ որ ոչ այնչափ 'ի բնէ են առատաձեռն , քան 'ի փառամոլութենէ , բարերարս երևելոյ զի բազում ինչ առնեն՝ առաւել առ աչս մարդկան , որպէս թուի , քան 'ի յօժարութենէ կամաց ։ Իսկ այդպիսի կեղծաւորութիւն կից է մանաւանդ ընդ ունայնութեան՝ քան ընդ ազատականութեան կամ ընդ հաստատութեան ։

Երրորդ խնդրելին էր , զի 'ի բարերարութեան ընտրութիւն արժանաւորութեան լինիցի . և յայսմ մասին պարտ է հայել 'ի բարս նորա՝ ում բարերարեմքն , և

'ի սիրտ նորա 'ի մեր կոյս, և 'ի կենաց կցորդութիւն և 'ի քաղաքավարութիւն, և 'ի ծառայութիւնս նորա առաջինս վասն մերոյ օգտի։ Արդ ըղձալի է զի այս ամենայն միահամուռ գտցին. ապա թէ ոչ՝ յոլովագոյն և մեծահարկի պատճառք կայցեն 'ի միջի։

ԺԵ. Եւ քանզի կեամք ոչ ընդ արս կատարեալս և ուղղապէս իմաստունս, այլ ընդ այնոսիկ որոց բարիս առնել գովելի է, եթէ իցեն 'ի նոսա կերպարանք առաքինութեան, վասն որոյ լաւ վարկանիմ յուշ առնել և զայս, թէ չէ՛ արժան անտես առնել և ոչ զոք՝ յորում նշմար ինչ առաքինութեան երևեսցի. այլ առաւել այնպէս պարտ է պատուասիրել զիւրաքանչիւր ոք, զի իւրաքանչիւրն առաւել իցէ զարդարեալ թեթևագունիւքս այսոքիւմբք առաքինութեամբք, համեստութեամբ, բարեխառնութեամբ, և սովին այսու՝ զորմէ բազմօք խօսեցաք ցայս վայր, արդարութեամբ։ Վասն զի քաջասրտութիւն և մեծասրտութիւն յայր ոչ կատարեալ և ոչ իմաստուն՝ բազում անգամ եռանդուն ևս է. իսկ այդ առաքինութիւնք յայր բարի մանաւանդ յարևանալ երևին։

Այսոքիկ 'ի մերմէ կողմանէ բարերարութիւնք։ Իսկ ըստ բարեսիրութեան այլոց առ մեզ՝ նախ այն իսկ է 'ի պատշաճից սակի, զի շատ երախտապարտ լիցուք այնմ որ շատ սիրէ զմեզ. այլ զբարեսիրութիւն ոչ ըստ օրինի երիտասարդագունից կշռեսցուք վառմամբ իւիք սիրոյ, այլ առաւել հաստատուն և անյողդողդ մտօք։ Ապա եթէ կայցեն արդիւնք, փոյթ մեծ պիտի՝ ոչ զի սկսցուք, այլ զի հատուսցուք և շնորհս. զի չիք ինչ պարտուպատշաճ ծառայութիւն կարևոր՝ իբրև զշնորհահատոյցն լինել։

Օի թէ զյանօթ առեալ իրս՝ մեծաւ ևս չափով, եթէ կարող միայն իցես, հատուցանել հրամայէ Եսիոդոս[1], զի՞նչ ոչ պարտիմք առնել ընդ երախտեօք զրաւեալք. ո՞չ ապաքէն արժան է նմանող լինել անդոց պտղաբերաց, որ բազմօք առաւել տան՝ քան զոր առնուն։ Օի եթէ զնոսա յորոց ակնունիմք օգուտ ինչ հանդիպել, ոչ ինչ դանդաղիմք պատուասիրել, ո՞րպէս

1 «Նովին չափով, և լաւագոյն՝ թէ մարթիս»։ Եսիոդ. Գործ. և Տիւ.։

վարեցիւք ընդ [illegible] որք պարտին օգտեցին։ Զի ուր կրկին ազգք են [illegible]ականութեան, մին երախտիս առնելոյ, և մի[illegible] երախտահատոյց լինելոյ, առնելն կամ չառնել զերախտիս ընդ մերով իշխանութեամբ է. իսկ չհատուցանելն՝ ոչ է օրէն առն բարւոյ, միայն թէ առանց անիրաւութեան զայդ առնել կարող իցէ։

Եւ յընդունելութեան երախտեաց արժան է ընտրութիւն առնել. վասն զի չիք տարակոյս, թէ մեծագունին առաւելապէս եմք պարտապան. բայց յայսմ նախ պէտք են կշռադատել՝ թէ իւրաքանչիւր ոք որով ոգւով և փութով և բարեսէր կամօք արարեալ իցէ։ Զի բազումք բազում ինչ առնեն յանխորհուրդս, առանց կշռութեան կամ չափու և եղանակի, յամենայն մարդիկ բերեալք յեղակարծ իմն յարձակմամբ ոգւոյ՝ որպէս հողմով. արդ այսպիսի երախտիք ոչ նոյնպէս մեծ ինչ են գրելի, որպէս որ զխոհեմութեամբն լինին և խորհրդով և հաստատուն մտօք։ Այլ յերախտահատոյցն լինել և 'ի շնորհակալիս, եթէ այլով մասամբ հաւասարք իցեն, այն է առաւել 'ի պատշաճից սակի, զի ըստ առաւել կարօտելոյ իմիք առն առն՝ առաւելապէս լինիցի ոք նպաստամատոյց. զորոյ զհակառակն գործեն յոլովք. զի յումմէ առաւելագոյնի իմիք ունին ակն, թէպէտ և անկարօտ իցէ նա, սակայն նմին սպասահարկեն առաւելութեամբ։

ԺԶ. Գեղեցիկ պահի մարդկան ընկերութիւն և ընդակցութիւն, եթէ ըստ առաւելագոյն մերձաւորութեան՝ յաճախագոյն ցուցցի ումեք մարդասիրութիւն. այլ արժան թուի խորագոյնս հետազօտել, թէ ո՞ր այն իցեն 'ի բնէ սկզբունք հաղորդակցութեան և ընկերութեան մարդկութեան։ Քանզի առաջին այն է՝ որ նըշմարի 'ի միաբանութեան համօրէն ազգի մարդկան. և սորայս զօդ է բան և բանականութիւն, որ ուսուցանելով, ուսանելով, հաղորդելով, պայքարելով, դատելով դաշնաւորէ զմարդիկ ընդ միմեանս, և զօդէ զնոսա բնաւորական իմն ընկերութեամբ։ Եւ ոչ այլով իւիք այնչափ հեռի գտանիմք յանբանիցն 'ի բնութենէ յորս ստէպ ասեմք թէ գոյ արիութիւն ' զոր օրինակ 'ի ձիս

1 Մանաւանդ 'ի լատին բառ- րիութիւն է և ուժեղակութիւն։
բառ, զի առ. նոսա fortitudo և ա-

և յառիւծունս. իսկ արդարութիւն, ուղղութիւն և բարութիւն՝ ոչ երբէք, վասն զի անբանք են և անխօսունք:

Այս ճոխափայլ ընկերութիւն մարդոյ ընդ մարդոյ, և ամենեցուն ընդ ամենեսին. այն է՝ յորում պարտ է պահել զհաղորդութիւն իրաց ամենայնի, զորս ընձեռեաց բնութիւնն 'ի պէտս հասարակաց. իբր զի որ միանգամ գրեալ կան յօրէնս և 'ի քաղաքական իրաւունս՝ այնպէս պահեսցին պնդապէս, որպէս և սահմանեալ իսկ է, և 'ի սոցունց աստի այլքն այնպէս տնօրինեսցին՝ որպէս առակն է Յելլենացւոց. "Բարեկամաց ամենայն ինչ հասարակաց է": Բայց ամենայն ինչ մարդկան հասարակ՝ այն իրք թուին, որ են յայնմ ազգէ՝ որ յԵննիոսէ յայս ինչ իրի սահմանեալ՝ մարթի 'ի բազումս փոխաբերիլ.

Որ ուղեցոյց մոլորելոյն սիրով կայ,
Առեալ զոգցես լոյս 'ի լուսոյն իւրմէ տայ.
Որպէս զի ոչ պակասեսցէ լոյս նորա:

Ի միոյ աստի բաւէ շատ իսկ խրատ ընծայել, զի զոր ինչ առանց վնասու մարթ է յանօթ տալ՝ տացուք զայն և անծանօթին:

Աստի և այն հասարակաց բանք. մի արգելուր զջուր ինքնահոս: Թողացո հուր 'ի հրոյ լուցանել թէ կամիցի ոք: Տուր վարանելոյն խորհուրդ հաւատարիմ. որք օգտակար են որոց առնուն, և ոչ ծանր որոց տանն: Վասն որոյ և զայսոսիկ արժան է 'ի կիր արկանել, և միշտ մատուցանել ինչ մի յօգուտ հասարակաց: Այլ քանզի չափ փոքր է իւրաքանչիւր անձին, իսկ կարօտելոցն անչափ է բազմութիւն, ռամկական առատաձեռնութիւնն վերածելի է յայն սահման Եննիոսի. "Որպէս զի ոչ պակասեսցէ լոյս նորա". իբր զի մնասցէ կարողութիւն առատաձեռն առ մերսն լինելոյ:

ԺԷ. Իսկ աստիճանք ընկերութեան մարդկան բազումք են. քանզի առ խորշելոյ յանբաւութենէ անտի՝ հնաւորագոյն է ընկերութիւն նոյն ազգի, գրոհի, լեզուի, որով առաւել միանան մարդիկ: Մերձաւորագոյն ևս՛ իսկ է՝ նորին քաղաքի լինել քաղաքացի. վասն զի բազում ինչ իրք են հասարակաց առ քաղաքակիցս, հրապարակ, տաճարք, ճեմելիք, ճանապարհք, օրէնք,

իրաւունք, դատաստանք, քուէայք. նա և սովորութիւնք, ընտանութիւնք, և բազմաց ընդ բազում բանք և դաշինք: Այլ և նա անձուկ կապակցութիւն ընկերութեան է 'ի մէջ ազգականաց. զի յանբաւութենէ անտի ընկերութեան մարդկային ազգի 'ի դոյզն ինչ և 'ի նեղագոյն ամփոփի:

Զի որովհետև 'ի բնէ հասարակ է այս կենդանեաց, ունել զորդեծնութեան ցանկութիւն, առաջին ընկերութիւն 'ի լծակցութեան անդ է. յետ նորա 'ի զաւակս. այնուհետև 'ի միում տան ամենայն ինչ է հասարակաց: Եւ այս իսկ է սկզբնաւորութիւն քաղաքի, և որպէս թէ սերմնարան տէրութեան հասարակաց: Յետոյ գան ընդակցութիւնք եղբարց, ապա եղբօրորդւոց և քեռորդեաց, որք իբրև չկարեն 'ի միում տան օժանդակիլ, 'ի տունս բաժանին իբրև հատուածք գաղթականութեան: Զհետ գան ամուսնութիւնք և խնամութիւնք, և 'ի սոցանէ ևս բազմապատիկ տոհմակցութիւնք: Եւ այս սերունդ և զաւակագործութիւն սկիզբն է պետութեան հասարակաց: Եւ արեան մերձաւորութիւն զօդէ զմարդիկ սիրով և մարդասիրութեամբ: Զի մեծ ինչ է զնոյն ունել յիշատակս (կամ գշիրիմս) նախնեաց, զնոյն պահել կրօնս, և հասարակաց ունել զգերեզմանս:

Այլ յամենայն ընկերութեանց միջի չիք այնպէս գերապանծ, և ոչ այնպէս հաստահիմն, որպէս յորժամ արք բարիք համաբարոյք միացեալ իցեն ընտանութեամբ: Վասն զի պատշաճն այն՝ զոր ստէպ յեղյեղեմք, թէպէտ և յայլում ումեք 'ի մէնջ նշմարեսցի, սակայն և զմեզ շարժէ, և բարեկամս զմեզ առնէ ընդ նմա՝ յորում երևի այդ լինել:

Եւ թէպէտ և ամենայն առաքինութիւն յինքն զմեզ յանկուցանէ, և տայ մեզ սիրել զայնոսիկ յորս ինքն գտանել թուի, սակայն առաւելապէս զսոյն ներգործէ արդարութիւնն և առատաձեռնութիւն. վասն զի չիք ինչ այնպէս սիրելի և շաղկապիչ, որպէս համաբարոյութիւն լաւաց. քանզի յորս նոյն փոյթք են և նոյն կամք, յայնպիսիս զուգապէս այր ընդ եղբօր զուարթանայ որպէս ընդ անձին. և եղանի այն ինչ զոր Պիւթագորասն կամի 'ի բարեկամութեան, միութիւն 'ի բազմաց

լինել։ Մեծ է և հաղորդութիւն ծագեալ յերախտեաց առ միմեանս եղելոց. որք յորժամ փոխադարձք իցեն և ձրի յերկաքանչիւր կողմանց, զօգէն զնոսա հաստատուն ընկերութեամբ։

Այլ յորժամ ընդ ամենայն յածեսցիս մտօք և բանիւ, յամենայն ընկերութեանց միջի չիք այլ ծանրագոյն և պատուական իբրև զայն, որ ընդ հասարակութիւն և ընդ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ։ Սիրելի են ծնողք, սիրելի զաւակք, տոհմակիցք, ընտանիք. այլ զամենայն բոլորեցունց սէր՝ միայն հայրենիք բովանդակեալ ունի. ոյր փոխանակ ո՞ 'ի լաւաց դանդաղեսցի 'ի մահ դիմել, եթէ ունիցի օգուտ գործել նմա։ Սմին իրի ևս քան զևս անքերելի է անագորոյն բարք նոցա, որք հերձիւք եղեն հայրենեաց ամենայն ժանտագործութեամբ, և 'ի բնաջինջ առնել զայն 'ի հիմանց պարապեցան և պարապին։

Բայց թէ խնդիր լինիցի և զուգակշռութիւն, ո՞յց ումանց առաւել պարտ իցէ հատուցանել զպաշտօն պատշաճից. Նախապատիւ եղիցին հայրենիք և ծնօղք, որոց երախտապարտ եմք առաւել. ապա զաւակք և տունն համօրէն՝ որ 'ի մեզ և եթ պատկանի, և չկարէ ունել զայլ ապաստան. յետոյ կարևոր մերձաւորք, ընդ որս կից է բազում անգամ և բախտ մեր հասարակաց։ Վասն այսորիկ զհարկաւոր նպաստս կենաց՝ սոցա պարտիմք առաւել զորս ասացիդ. իսկ կեանք և կենաց կցորդութիւն, խորհուրդք, զրոյցք, յորդոր, մխիթարութիւն, է զի և յանդիմանութիւն, 'ի բարեկամութիւնս մանաւանդ ունին զտեղի. և այն բարեկամութիւն է զուարճալի քան զամենայն՝ զոր համաբարոյ բնութեան զուգեալ իցէ։

ԺԸ. Այլ յայս ամենայն պարտուպատշաճ ծառայութիւնս՝ տեսանել արժան է, եթէ զինչ ինչ առաւել հարկաւոր իցէ իւրաքանչիւր ումեք. և զինչ ինչ իւրաքանչիւր 'ի նոցանէ առանց իսկ մեր կարող իցէ ածել զ[illegible], և կամ ոչ կարիցէ։ Եւ այսպէս ոչ նոյն աստիճանք լինին կարեաց՝ որպէս ժամանակաց։ Են ծառայութիւնք՝ որք առաւել ումանց քան այլոց պիտին. զոր օրինակ դրացւոյն վաղագոյն օգնեա 'ի ժողովել զպտուղս, քան եթէ եղբօր կամ ընտանւոյ. ապա ե-

թէ վէճ իցէ 'ի դատաստանի, մերձաւորիդ և բարեկամիդ առաւել պաշտպան կաց քան դիպացուցն ։ Զայսոսիկ և զայսպիսիս պարտ է քաջ դիտել յամենայն գործս պատշաճից, և սովորութիւն առնել կրթանօք, որպէս զի մարթասցուք բարւոք մատակարար լինել պատշաճիցն, և յաւելլով և կարճելով տեսանել զոր միայն բովանդակութիւն . յորմէ 'ի միտ առնուցուս, թէ որչափ ինչ պարտիմք իւրաքանչիւրոց ։

Այլ զոր օրինակ ոչ բժիշկք, ոչ զօրավարք և ոչ փաստաբանք, թէպէտ և հմուտք իցեն կանոնաց արուեստին, կարող ինչ են առանց մարզից և վարժութեան 'ի գլուխ տանել գործ արժանաւոր գովութեան մեծի, սոյնպէս և կանոնք պահելոյ զպատշաճն աւանդել աւանդին, որպէս և մեք առնեմք, այլ մեծութի իրացն պահանջէ և զմարզս և զվարժութիւն ։ Բայց արդ ըստ բաւականին գոգցես ասացաք՝ եթէ յիրաց եղելոց յիրաւունս մարդկային ընկերութեան որո՞վ օրինակաւ քաղի վայելչն, յորմէ և պատշաճն յարդարի ։

Աստանօր պարտ է խելամուտ լինել, եթէ 'ի քառեակ տեսակաց միջի նախակարգելոց՝ յորոց յառաջ գայ համեստութիւն և պարտուպատշաճ ծառայութի, առաւել քան զառաւել պանծալի տեսանի այն որ եղանի 'ի մեծանձն սրտէ, որ վսեմամիտ իցէ և արհամարհող մարդկային իրաց ։ Ամին իրի դիւրապատրաստ նախատինք են մեծ՝ զոր դէպ լիցի ասել[1] .

Երիտասարդք դուք կանացիք,
Զայդ առնացի կին տեսլիք ։

Եւ կամ զայս օրինակ[2] .

Ճամպա յաւար, ո՛ Սաղմակեան,
Առանց քրտանց և արեան ։

Զսորին հակառակն է տեսանել 'ի գովեստս . զի ըզգործս մեծանձնութեան և զարիական քաջութեան և զվեհապանծութեան՝ չգիտեմ որպէս լիաբերան դրուատեմք ։ Յայսմանէ է ընդարձակն այն ասպարէզ բանից հռետորաց զՄարաթոնէ, զՍաղամինեայ, զՊղատէայ, զԹերմոպիլեայց, և զԼեւկտրայց ։ Աստի և մերս Կոկ-

1 Ըստ Եննիոսի, կամ այլում ումեք քերթողի ։

2 Սաղմակիս աղբիւր էր 'ի Կարիա, զորմէ վիպեն առասպելք՝ կնատիչ ունել զօրութիւն ։

ղէս , աստի Պղեկոսեանք , աստի Սկեպտիկոնեանք՝ Արկէսոն և Պոռղիոս , աստի Մարկոս Մարկեղոս , և այլ ևս անթիւք , ևս առաւել ժողովուրդն հռովմէական ինքնին գլխովին գերազանց գտանի մեծամեծութեամբ ։ Փոյթ պատերազմական փառաց յայտնի լինի և յայնմ , զի զանդրիս իսկ տեսանեմք իբրև 'ի զարդ զինուորութե կանգնեալս ։

ԺԹ. Նոյն այն փքացումն ոգւոյ որ 'ի վիշտս վտանգի և 'ի վաստակս երևեալ , եթէ անմասն իցէ յարդարութենէ , և մաքառիցի ոչ վասն հասարակաց փրկութե , այլ վասն անձին օգտաշահութեանց , մոլեկան է ։ Զի ոչ միայն չէ այդ 'ի սահմանի առաքինութեան , այլ մանաւանդ անագորոյն մտաց է , որ զամենայն ցրէ ըզմարդկութիւն ։ Սորին վասն իմաստութեամբ սահմանի արիութիւնն 'ի Ստոյիկեանց , յորժամ ասեն զայն Առաքինութիւն մրցական 'ի կողմանէ արդարութեան ։ Վասն այսորիկ ոչ ոք է որ զարիութեան ստացաւ ըզփառս դաւաճանութեամբ և չարութեամբ , և գովութեան եղև ժառանգորդ . զի չէ հնար վայելչական լինել իմիք , որ անմասն է յարդարութենէ ։

Գեղեցիկ ուրեմն է Պղատոնին առասացութիւն . Ոչ միայն , ասէ , գիտութիւնն որ հեռի իցէ յարդարութենէ՝ խորամանկութիւն առաւել քան իմաստութիւն է յորջորջելի , այլ և անձն պատրաստական դնել զինքն 'ի վտանգ , եթէ առ 'ի յիւրմէ դրդի ցանկութե , և ոչ 'ի հասարակաց օգտէն , յանդգնութեան ժառանգեսցէ զանուն քան զարիութեան ։ Արդ այսուհետև կամիմք , զի արի և մեծամեծն մարդիկ՝ իցեն միանգամայն բարի և անկեղծ . ճշմարտասէրք լինիցին , և ոչ խաբեբայք . որ են 'ի մասնէ բուն գովեստից արդարութե ։

Նոյն այն իսկ է դժոխրմքեր , զի յայսպիսի վսեմութեան ոգւոյ և 'ի մեծութեան սրտի՝ կարի հեշտեաւ դարմանի կամակորութիւն և իշխանասիրութիւն յոյժ ։ Քանզի զոր օրինակ ըստ Պղատոնի՝ ամենայն բարք Լակեդեմոնացւոց վառեալ էր ցանկութեամբ յաղթող լինելոյ , սոյնպէս որչափ ոք առաւելու պանծալի մեծամեծութեամբ , նոյնչափ առաւել կամի ամենեցուն իշխան լինել , մանաւանդ թէ միայն լինել ։ Արդ դըժուարին է 'ի ցանկալ անդ գեր 'ի վերոյ լինել ամենե-

ցուն՝ պահել զհաւատարութիւն, որ յոյժ է յանկաւոր արդարութեան։ Պատի յայսմանէ լինի, զի ոմանք ոչ պայքարաւ, և ոչ որ և է իրաւամբք՝ որ հատարակաց, որ օրինաւոր, յաղթել յանձն առնուն. և զտանեն 'ի ժողովրդեան յոլովակի կաշառատուք և եղեռնագործք, որպէս զի առաւել մեծութիւնս ստասցեն, և առաւել վերագոյնք իցեն բռնութեամբ՝ քան հաւասարք արդարութեամբ։ Այլ որչափ դժուարին է իմն, նոյնչափ և զովելի. զի չիք ժամանակ, յորում օրէն իցէ անբաժ յարդարութենէ լինել։

Այս արդ արի և մեծասիրտ են համարելի՝ ոչ որ առնենն, այլ որ վանեն զանիրաւութիւն։ Իսկ ճշմարիտ և իմաստուն մեծանձնութիւնն զհամեստն զայն՝ յորում առաւել զհետ երթայ բնութիւնս, 'ի գործս հաստատեալ գիտէ, և ոչ 'ի փառս. և առաւել կամի լինել՝ քան երևել իշխան։ Քանզի և որ կախի զտգէտ խառնաղանձին մոլորութենէ, այնպիսին մի գրեսցի 'ի թիւս վեհիցն արանց։ Այս կարի իսկ դիւրագոյն դրգի 'ի գործս անիրաւս՝ որչափ ոք բարձրամիտ է և փառասէր։ Այս այս է ապաքէն դիւրագայթ վայր. զի դժուարաւ ոք գտանի, որ յետ յանձին կրելոյ զվաստակս, և 'ի վտանգս լինելոյ միջամուխ, ոչ ցանկանայցէ փառաց որպէս վարձուց գործոց իւրոց։

Ի. Ամենայնիւ արին և մեծասիրտն՝ երկոքումբք իրօք առաւել 'ի վեր երևի. յորոց մին հաստատեալ է յանտեսն առնել զարտաքին իրօք, ուր դնէ ոք 'ի մտի՝. թէ չէ արժան մարդոյ զարմանալ կամ ցանկանալ կամ զհետ լինել իմիք, բայց միայն որ համեստն իցէ և վայելչական. և ոչ ներքոյ անկանել ոչ մարդոյ, ոչ խռովութեան ոգւոյ, և ոչ բախտի։ Իսկ միւսն է, զի յորժամ զայդ սիրտ ունիցիս զոր ասացիդ, գործս գործիցես ոչ միայն մեծամեծս և կարի օգտակարս, այլ և դժուարինս յոյժ և տաժանաւորս, և լիս վտանգօք կենաց, և յոքունց իսկ իրաց՝ որ կենաց են անկ։

Այս այս երկուց իրացս բովանդակ պարծանք և մեծութիւն, ըստ նմին և օգտակարութիւն, 'ի վերջնումն անդ է. իսկ պատճառն և բանն որ առնէ զոք այր մեծ՝ յառաջնումն անդ է։ Վասն զի յայնմ է բանն, որ առնէ վեհանձնեայ և արհամարհող մարդկեղէն իրաց։

Եւ այս տեսանի յերկուս՝ եթէ զայն ևեթ բարի համարիցիս որ համեստն է, միանգամայն և յամենայն ամբոխմանէ սրտի ազատ լիցես։ Քանզի և զորս գերապանծ և զարմանալի բազմաց թուին՝ դուզնաքեայ ինչ վարկանել, և քամահել զնոքօք անսայլայլակ և հաստատուն խորհրդով, գործ է քաջասրտութեան և մեծանձնութեան. և զորս դառն թուին, ուր բազմապատիկ և պէսպէս հանգիպին այդպիսի դէպք կենաց և ընչից մարդկան, այնպէս տանել՝ զի ոչ իւիք օտարանայցես 'ի պայմանէ բնութեան կամ 'ի պատուոյ առն իմաստնոյ, արիական ոգւոյ է գործ և մեծամեծ հաստատութեան։

Եւ ոչ իսկ վայել է այնմ՝ որ ոչ խոտանկի յերեսաց երկիւղի, լուծանիլ ցանկութեամբ, և անպարտելոյն 'ի վաստակոց՝ յաղթիլ 'ի փափկութենէ։ Վասն որոյ և 'ի սոցանէ է զգուշալի, և խորշելի յարծաթսիրութենէ։ Զի չիք ինչ այնպէս նշանակ փոքրոգի անձին՝ որպէս սիրել զմեծութիւնս, և ոչ այնպէս համեստագոյն և մեծավայելուչ, որպէս արհամարհել զինչս՝ եթէ չունիցիս, և 'ի բարերարութիւն վարել և յառատաձեռնութիւն՝ եթէ ունիցիս։ Զգուշանալ պարտ է և 'ի փառասիրութենէ, ըստ որում 'ի վեր անդր ասացի. վասն զի կապտէ 'ի բաց զազատութիւն, որ վասն պարտի լինել բովանդակ ճիգն մեծանձն արանց։ Չէ արժան հետամուտ լինել և իշխանութե. մանաւանդ թէ արժան է կամ երբեմն չառնուլ յանձն, և կամ երբեմն և հրաժարել։

Դատարկանալ պարտ է և յամենայն ամբոխմանէ սրտի, եթէ 'ի ցանկութենէ և յերկիւղէ, և եթէ 'ի վատասրտութենէ և 'ի հեշտախտութենէ և 'ի բարկութենէ. որպէս զի առընթեր կացցէ հանդարտութի և աներկեւանութիւն, որ բերէ ընդ իւր զանսայլայլութիւն միանգամայն և զարժանապատուութիւն։ Շատ ևս այնք են և եղեն, որոց ցանկացեալ հանդարտութեանն զոր յիշեցի, 'ի զբաղմանց հրաժարեցուցին զանձինս, և յանգործութիւն եղեն ապաստան։ Յորոց սակի և ազնուական փիլիսոփայք և կարի ականաւորք, և ոմանք ոմանք արթունք մտօք և ծանրաբարոյք 'ի մարդկանէ, ոչ զամբոխին և ոչ զիշխանաց զբարս կարող ե-

ղէն բառնալ, և բնակեցին ոմանք յագարակս՝ զզուեալք յատենին իրս ։ Նոցա այն էր միտք՝ որ ինչ և թագաւորաց․ իբր զի կարօտասցին և ոչ իմիք, հնազանդեսցին և ոչ ումեք․ այլ ազատութեամբ վարեսցին, որում անձն է ըստ կամի կեալ ։

ԻԱ․ Արդ որովհետև միօրինակ այդ է ՚ի կարողութեան ցանկասիրաց և հանդարտելոց, նոքա կարծեն ՚ի ձեռն բերել զայդ՝ եթէ ինչս բազումս ունիցին․ սոքա՝ եթէ շատացեալ գոցեն իւրոյին իրօք և սակաւուք ։ Ուր և ոչ միումն կարծիք է ամենայնիւ անգոսնելի․ այլ հանդարտելոցն կեանք է առաւել հեշտ և ապահով, և ոչ այնչափ ծանր կամ դժկամակելի այլոց․ իսկ որոց տան զանձինս ՚ի զբաղանս տէրութեան և ՚ի գործել զմեծամեծս, է առաւել բարեբեր մարդկան ազգի, և ճահողագոյն առ պայծառութիւն և ՚ի տարածութիւն ։

Նմին իրի և այնոցիկ թերևս ներել արժան է յոչն տալոյ յանձինս զհոգ տէրութեան հասարակաց, որք գերապանծ ուշիմութեամբ ճոխացեալք՝ ՚ի վարդապետութիւն զանձինս ետուն․ և այնոցիկ՝ որք կամ առ նուազութեան առողջութեան, և կամ յայլ ևս ծանր պատճառաց խափանեալք, ՚ի բաց հրաժարեցին ՚ի հոգոց հասարակաց, այլոց թողլով զկարողութիւն և զգովութիւն տնտեսութեան սոցին իրաց ։ Իսկ որոց չկայցեն պատճառք այսպիսի և ոչ մի, եթէ ասիցեն՝ թէ ինքեանք արհամարհեն զայն ինչ իրս՝ որ զարմանալի թուին բազմաց, իշխանութիւնք և պետութիւնք, զայնպիսիս ոչ միայն չգովեմ, այլ և պարսաւանաց զդեմ արժանի ։ Ապաքէն անմարթ է չհաւանել դատաստանի այդպիսեաց յայնմ՝ զի զփառս արհամարհեն և յոչինչ համարին․ այլ սակայն երևին յաշխատութեանց և ՚ի տաղտապանաց՝ եթէ վնասուց և եթէ հերքմանց՝ զանգիտել իբրև ՚ի վատանունութենէ և ՚ի չարահամբաւութենէ ։ Զի են որ ՚ի ձախողակս վրդովին, զփափկութիւն ՚ի սպառ անգոսնեն, ՚ի ցաւս են թուլամորթք, անտես առնեն զփառս, վատահամբաւութեամբ կործանին․ և յայսոսիկ ևս յողդողդ միտք ։

Այլ որոց տուեալ է ՚ի բնութենէ աջողակութիւն գործոյ, առանց ընդ բանս ինչ ածելոյ պարտ է նոցա ունել զդատաւորութիւն և զգործակալութիւն ՚ի տէ-

րութեան հասարակաց։ Զի և ոչ այլ ազգ մարթ է յուտին կալ քաղաքի, որպէս և ոչ հանդիսանալ մեծանձնութեան։ Այլ որոց յանձն առնուն զհոգ տէրութեան՝ ոչ ինչ ընդհատ յիմաստասիրաց, չասացից թէ առաւելագոյն իսկ, պէտք են նոցա 'ի կիր արկանել զմեծավայելուչ բարս և զարհամարհութիւն մարդկեղէն իրաց, և զոր ստէպն երկրորդեմ՝ զհանդարտութի սրտի և զաներկևանութիւն. վասն զի չէ պարտ նոցա նեղսրտութեամբ վարիլ, այլ ծանրութեամբ և անայլայլակ ոգւով կեալ։

Այլ այսոքիկ այնչափ առաւել դիւրագործ են իմաստասիրաց, որչափ նուազ հանդիպին 'ի կեանս նոցա իրք՝ զորս բախտն հարկանիցէ դժբախտութեամբ, և որչափ նուազ ունին կարօտութիւն. թող զի եթէ և ձախող ինչ իրք դիպեսցին, ոչ այնպէս չարաչար կործանեն նոքա։ Սմին իրի ոչ անպատճառ զմեծագոյն յուզմունս շարժութեան սրտի կրեն, և մեծագունի աշխատութե ունին պէտս հոգաբարձուք տէրութեան քան զհանդարտեալսն. վասն որոյ պարտ է նոցա մեծ ևս մեծանձնութիւն յանձին բերել, և ազատութիւն յանձկութեանց կրից։

Իսկ որ մատչին 'ի գործակալութիւն, զգոյշ լինիցի՝ ոչ լոկ նկատել զի իրքն համեստ իցեն, այլ զի և ունիցի կարողութիւն ձեռն 'ի գործ արկանելոյ։ Ուր և զայն պէտք են դիտել, զի ոչ վայրապար յուսահատ լիցի առ վատութեանն, և ոչ կարի յանձնապաստան առ ցանկութեանն։ Այլ յամենայն իրս՝ նախ քան զմիջամուխն լինել, պիտոյ է արթուն պատրաստութիւն վաղագոյն։

ԻԲ. Բայց քանզի բազումք են որ զպատերազմական իրս մեծ քան զքաղաքականս համարին, ժամ է մեղմել զայդ կարծիս։ Վասն զի յոլովք 'ի խնդիր եղեն բազում անգամ պատերազմաց առ փառասիրութեան. և այս ստէպ պատահէ 'ի մեծանձն և 'ի բազմահանճար անձինս, ևս առաւել՝ եթէ աջողակք իցեն 'ի գործ զինուորութեան և պատերազմասէրք։ Սակայն եթէ կամիցիմք ճշմարտութեամբ դատել, բազում ինչ իրք քաղաքականք՝ մեծ ևս գտան և պայծառ ևս քան զպատերազմականսն։ Զի թէպէտ և Թեմիստոկղէս իրա-

ւամբք գովի , և պայծառափայլ է անուն նորա՝ քան ըզ-
Սողոնին , և վկայ 'ի մէջ բերի Սաղամիս քաջափայլ
յաղթութեանն , իբրու նախապատիւ քան զխորհուր-
դըն զայն Սողոնի , որով զառաջինն կարգաւորեաց զԱ-
րիսպագացիս . սակայն ոչ փոքր մեծագործութիւն զայս
քան զայն ասել արժան է . վասն զի այն մի անգամ օգ-
տեաց քաղաքին , իսկ սա յաւէժաբար օգտեսցէ . սովին
խորհրդով օրէնք Աթենացւոց պահին , սովին և առաջ-
նոցն սահմանք : Թող զի Թեմիստոկլէս չունի ինչ ա-
սել , եթէ այսու օգնեցի Արիսպագին . բայց նա իրա-
ւամբք ասասցէ , եթէ յինէն օգնականութիւն եգիտ
Թեմիստոկլէս . վասն զի պատերազմն մղեցաւ խորհր-
դով ծերակուտին՝ որ 'ի Սողոնէ էր հաստատեալ :

Զնոյն օրէն է ասել և յաղագս Պաւսանեայ և Լի-
սանդրի . զի թէպէտ և գործովք արութեան սոցա ընդ-
արձակեալ կարծի իշխանութիւն Լակեդեմոնացւոց ,
սակայն և ոչ դոյզն մասամբ 'ի համեմատութիւն բե-
րել արժան է զնոսա ընդ Լիկուրգոսին օրինաց և վար-
դապետութեան : Նա զի յայդց պատճառաց զլխովին ե-
ղև նոցա ունել զօրականս հլուս և առաքինիս : Ապա-
քէն և ինձ այնպէս թուէր , թէ ոչ յաւուրս մանկու-
թեան մերոյ Մ . Սկաւրոս 'ի վայր գտանէր քան զԿայ-
իոս Մարիոս , և ոչ 'ի ժամանակին յորում դեգե-
րեաք 'ի գործ տէրութեան , Կ . Կատուղոս քան զԿ .
Պոմպէոս : Վասն զի սակաւ են զէնք արտաքոյ , եթէ
չգոյցէ խորհուրդ առտնին : Նա ոչ աւելի օգուտ պե-
տութեանն գործեաց Ափրիկանոս , այրն անհամեմատ և
զօրավար քաջ , 'ի յատակել սատակել անդ զՆուման-
տիա , քան եթէ 'ի նմին ժամանակի Նասիկա այր
սոսկական , յորժամ զՏիբերիոս Գրակքոս սպան . միայն
թէ վերջինս այս չէ լոկ գործ առտնին , այլ 'ի պատե-
րազմական անդր հայի . որովհետև զօրութեամբ բազ-
կի եղ 'ի գլուխ . բայց սակայն և այդ խորհրդով գոր-
ծեցաւ քաղաքականաւ առանց զօրու :

Այն ինչ է քաջալաւ , որ որպէս լսեմ՝ մախացողս
ունի յարձակեալս յիւր վերայ յաչաղանօք .

Տեղի տուք զէնք պատմուճանին ,
Տեղի տացէ պերճախօսի սաղարթենին :

Թողից զայլս . ո՞չ ապաքէն 'ի տեսանել մեր անդ զաւէ-

րութիւն հասարակաց՝ զէնք տեղի ետուն պատմուճանաց. զի ոչ երբէք այնպէս ծանր վտանգ եղև հասարակաց իրաց, և ոչ այնպէս հանդարտութիւն: Այս օրինակ խորհրդով և հանճարով մերով արագ արագ 'ի ձեռաց անտի յանդուգն քաղաքացւոց 'ի վայր անկան զէնք գլխովին: Արդ ո՞ւր ուրեք 'ի պատերազմի այսպիսի գործեցան գործք մեծամեծք. ո՞ր այն յաղթանակ սմին զուգական[1]: Քանզի ինձ օրէն է, որդեակ իմ Մարկոս, պարծել քո առաջի, որում անկ է և ժառանգութիւն փառացն, և գործոց հետևութիւն: Ստուգութեամբ ասեմ, զայս պատիւ ինձ արար լու 'ի լու բազմաց Գնէոս Պոմպէոս այրն փառաւորեալ բազմադէմ գովութեամբք պատերազմականօք, յասել անդ, թէ Ի զուր ինձ լինէր յաղթանակ 'ի մէջ ածել երրորդ, եթէ չունէի տեղի յաղթանակի քոյովդ առ տէրութիւն երախտաւորութեամբ: Ապա ուրեմն ոչ փոքր են առտնին արիութիւնք քան զզինուորականս. և առաւել իսկ 'ի նոսա քան 'ի սոսա պիտոյ է փոյթ և խընամ ունել:

ԻԳ. Անշուշտ համեստն այն՝ զոր պահանջեմք 'ի վըսեմ և 'ի մեծագործ անձնէ, ներգործի ոչ մարմնոյ այլ հոգւոյ զօրութեամբք. բայց պարտ է կրթել զմարմինս, և այնպէս տնօրինել, զի մարթասցի հպատակել խորհրդոյ և բանի՝ 'ի կատարումն գործոց և 'ի տանել վաստակոց: Իսկ համեստն զորոյ զհետ ելեալ եմք, հաստատեալ է ամենայնիւ 'ի ճիգն հոգւոյ և 'ի մտածութէ, յորում ոչ դոյզն օգուտ մատակարարեն պատմուճանազգեացքն վերակացուք տէրութեան՝ քան զորս պատերազմ մղեն: Նա և այսպէս բազում այն է զի ըստ նոցին խորհրդոյ կամ ոչ յանձն առնուն զպատերազմն կամ վճարեն, և է երբէք զի ինքեանք հրատարակեն. զոր օրինակ Մարկոսի Կատոնին (խորհրդով) այն երրորդ պատերազմն պունիկեան. յորում մեռելոյն անգամ զօրեաց հրամանատարութիւն:

Վասն այսորիկ ըղձալի է առաւել բանին ընտրողութեան քան զքաջութիւն պատերազմական. բայց ըղ-

[1] Ակնարկէ 'ի դաւաճանութեն Կատիլինայ, զոր մեծաւ արթնութեամբ և խոհական խորհրդով ցրեաց Կիկերոն. այլ կարի են պանծանքն, թէպէտ և առ որդին ասացեալ:

գուշակել չառնել զայդ առ խորշելոյ մանաւանդ 'ի պատերազմէ՝ քան օգտի աղագաւ։ Նոյնպէս պարտ է յանձն առնուլ զպատերազմ, զի ոչ ինչ այլ, բայց միայն խաղաղութիւն երևեսցի խնդրել։ Իսկ արիական և հաստատուն սրտի է գործ՝ ոչ խռովիլ 'ի դժուարինս. և ոչ ամբոխմամբ՝ ըստ առածին 'ի սանդղոց և 'ի վայր կործանիլ, այլ վարել խոհական մտացն խորհրդով, և ոչ 'ի բանէն օտարանալ։

Արդ թէ այս սրտի է գործ, և այն մեծի հանճարոյ, յառաջագէտ լինել մտօք լինելեացն, և իւիք իրօք կանխել կարգաւորել՝ զինչ ինչ մարթի պատահել երկաքանչիւր կողման, և զոր պարտ իցէ առնել՝ եթէ դիպեսցի ինչ. և չառնել ինչ, զորմէ հարկ լիցի երբեմն ասել. Ոչ կարծէի։ Նոյնքիկ են մեծ և վսեմ ոգւոյ գործք՝ խոհական խորհրդով յանձնապաստան եղելոյ։ Իսկ անխորհրդաբար 'ի ճակատ մտանել և ձեռներէց լինել, բախել ընդ թշնամւոյն, ապառումն մտաց է և գազանակերպ։ Այլ ուր ժամն և հարկն պահանջիցէ, ձեռն 'ի գործ առնել պարտ է, և նախապատիւ համարել զմահն քան զծառայութիւն և զվատթարութիւն։

ԻԴ. Իսկ յաւեր և յաւար քաղաքաց քաջ միտ դնել պարտ է, զի մի լիցի ինչ յահուր և անագորոյն մտօք։ Այս այս է առն մեծի, կշռել զիրսն, և ըստ այնմ զչարագործսն պատժել, զխառնիճաղանճն պահել. յամենայն յաջողուածս զուղիղն և զհամեստն պինդ ունել։ Քանզի զոր օրինակ են որ ըստ յառաջագոյն ճառելոցս՝ զպատերազմական իրս նախապատիւ համարին քան զքաղաքականս, նոյնպէս գտանիցես զյոլովս՝ որոց առաջին պանծալիք և մեծամեծք թուին վտանգաւոր և ջերմ մտածութիւնք քան զհաստունս և զհանդարտս։

Ոչ երբէք ոչ ուրեք 'ի վտանգէ խուսափել արժան է, որով անզօր և վատասիրտ երևիցիմք։

Այլ արժան է խոյս տալ և յայսմանէ, մի անձամբ զանձինս 'ի վտանգ արկանել անպատճառ. քան զոր ոչ ինչ է անմտագոյն։ Վասն այնորիկ 'ի բերել 'ի վտանգս՝ զբժշկացն սովորութեան 'ի դէպ է զհետ երթալ. որք զթեթև խօթացեալս մեղմով դարմանեն, իսկ ցաւոցն ծանրագունից հարկ լին ածել զվտանգաւոր և զանստոյգ դարմանս։ Վասն որոյ 'ի համբարտութեան՝ հակառա-

կաց ցանկալ մրրկաց՝ անմտի է. իսկ հնարս հայթհայթել մրրկի զխաղդ և է օրինակաւ, իմաստնոյ. և այնչափ ևս, որչափ առաւել շահել ունիս զբարիս յելս գործոյն, քան զչարիսն 'ի կալն յերկուանալ վիճակի: Նոյն վտանգքն իւրաց կէս մի 'ի գլուխ միջամուխ եղելոցն գան, և կէս մի տէրութեան հասարակաց. և դարձեալ են 'ի գործոց որ 'ի վտանգ կենաց կարգին, և են որ փառաց և երախտեաց քաղաքացւոց. արդ առաւել դիւրապատրաստ պարտիմք լինել 'ի վտանգ անձանց՝ քան հասարակացն. և կամակար մտանչիլ 'ի սակս պատուոյ և փառաց՝ քան վասն այլոց ինչ դիւրութեանց:

Բազումք գտան որք պատրաստ էին ոչ զինչս և եթ, այլ և զկեանս անգամ տալ վասն հայրենեաց. որք և ոչ փոքր զեան բերել իւրեանց փառացն յանձն առնուլին, նա և 'ի պահանջել անգամ տէրութեն: Որ օրինակ Կալլիկրատիդաս զօրավար եղեալ Լակեդեմոնացւոց 'ի պելոպոնեսեան պատերազմի, յետ բազում գործս արութեան 'ի գլուխ տանելոյ՝ յեղծումն դարձոյց զամենայն, յոչն անսալ խորհրդոյ նոցա՝ որք ասէին 'ի բաց հեռացուցանել յԱրգինուսայ զտորմիղ նաւաց, և ոչ մտել 'ի մարտ ընդ Աթենացիս: Որոց ետ նա պատասխանի. Լակեդեմոնացիք կարօղ են 'ի կորուսանել զայն նաւատորմիղ՝ միւս ևս պատրաստել. այլ ես չկարեմ 'ի փախուստ դառնալ առանց խայտառակութե: Բայց այս հարուած Լակեդեմոնացւոց չափաւոր եղև. այլ մահառիթն այն է, բախիլն Կղէոմբրոտայ անխորհրդաբար ընդ Եպամինոնդայ՝ առ երկիւղի նախանձարկութեան, յորում Լակեդեմոնացւոցն յոյս 'ի գետին անկաւ: Բանիծն լաւ է Մաքսիմոս, զորմէ այսպէս խօսի Էննիոս.

Եկաց այր ոք մերոց չարեաց 'ի դարմանս
Հանդարտ 'ի գործ ուանձայն յառաջ քան զփրկանս.
Մեծ ևս 'ի փառս արդ նա փայլէ առ յապայս:

Այս ազգ սխալանաց խոտելի է և 'ի քաղաքականս. զի են որոց խորհուրդք բարի են յոյժ, այլ առ ահի նախանձու ոչ համարձակին առնել:

ԻԵ. Որ միանգամ առաջնորդ լինել հանդերձեալ են ժողովրդեան, ամենայն իրօք զՊղատոնին կալցին խրատըս կրկին. մի՝ զի այնպէս խնամ ունիցին օգտի քա-

ղաքացւոց, զի զինչ և առնեն՝ ՚ի նոյն հայեցուցեն, զանձանց դիւրութիւն մոռացեալք. միւս ևս՝ զի զբոլոր զմարմին հասարակաց խնամարկեսցեն. և մի յորժամ զմասն մի հոգան, զայլսն անտես առնիցեն ։ Նման զի զոր օրինակ զհովանաւորութի որոց, նոյնպէս և զտըն֊տեսութի ժողովրդեան՝ պարտ է վարել յօգուտ յան֊ձնելոցն ՚ի խնամս, և ոչ որոց հաւատացաւն խնամքն ։ Իսկ որք զմասն մի քաղաքացւոց յանձանձեն, և զմի մասն անտես առնեն, զեան մեծ յոյժ վնասուց ածեն ՚ի քաղաքն, զապստամբութիւն և զերկպառակութիւն. որով կէսք՝ ռամկաց կուսակիցք երևին, կէսք Թևա֊կիցք աւագաց, սակաւք հասարակաց բոլորից ։

Յայսմանէ առ Աթենացիս մեծամեծ երկպառակու֊Թիւնք. իսկ ՚ի մերում միջի ոչ միայն հերձուածք, այլ և մահաբեր մարտք քաղաքականք. յորոց պարտի խորշիլ մերժիլ քաղաքացի ծանրաբարոյ և քաջ՝ ար֊ժանաւորն վերակացութեան ՚ի ժողովրդեան, որ և ան֊ձնատուր լինիցի բոլորովին ՚ի խնամս հասարակաց. ոչ ընչից և ոչ իշխանութեան լեալ ՚ի խնդիր. և այնպէս պաշտպանեսցէ ամենեցուն, զի ամենեցուն օգտեսցէ ։ Ո՛չ և մի զոք սուտ զրպարտութեամբք յատելութիւն կրԹեսցէ կամ ՚ի մախանս. և յամենայնի այնպէս փոյթ կալցի արդարութեան և համեստութեան, մինչև եթէ դէպ լիցի յանձին կրել ՚ի պէտս պահպանութեան սո֊ցա ծանր ծանր վիշտս, ընտրեսցէ մեռանել առաւել քան Թողուլ ՚ի ձեռանէ զորս ասացիդ ։

Զուառական է ստուգապէս ամբարհաւաճութիւն և փառամոլութի. զորմէ գեղեցիկ գրէ նա ինքն Պղատոն և ասէ. Որ միանգամ մի զմիով ելևելս առնեն, Թէ ո՛ առաւել տնտեսեսցէ զժողովուրդն, նման է գործ նո֊ցա նաւավարացն կագելոց, Թէ ո՛ ՚ի նոցանէ ղեկավա֊րեսցէ ։ Այն սա պատուիրեաց, զի համարեսցուք ստոյգ զնոսա ոյք զէն առնուն այր ընդդէմ եղբօր. և ոչ զորս ըստ ընտրութեան իւրեանց կամին տնօրինել զիրս ժո֊ղովրդեան. որպիսի եղև հակառակութիւն անկռիւ ընդ Ափրիկանոս և ընդ Մետեղոս ։

Չէ արժան լսել և նոցա, որք արժան համարին ծան֊րացասումն լինել Թշնամեաց. և զայդ վարկանելին գործ մեծասիրտ և քաջի առն ։ Քանզի չէք ինչ առաւել զո֊

վելի, և մեծի և պատուականն առն պաշտմանաւր՝ որպէս քաղցրաբարոյութիւն և զթութիւն[illegible]ակ 'ի ժողովուրդ-դեան և 'ի հաւատարադատու[illegible]ուանց պարտ է վարել նաև զդիւրալուր ունկնդրութիւն, և զանուանեալն մեծանձնութիւն. զի մի, եթէ բարկասցուք կամ մատուցելոցն 'ի տարաժամու և կամ անպատկառ ժտեղեացն, լիցի մեզ անկանել 'ի դաժանութիւն անպէտ և ատելի: Այլ սակայն այնպէս պարտ է վարիլ հեզութեն և գթութեամբ, զի խառնեսցի 'ի նոսա 'ի պէտս հասարակաց օգտի և խստութիւն, առանց որոյ անհնար է լինել տնտեսութեան քաղաքի:

Բայց ամենայն պատիժ և պատուհաս պարտի լինել առանց թշնամանաց. և ոչ 'ի շահ նորա որ պատուհասէն զոք կամ յանդիմանէ՝ վերածեսցի, այլ առ հասարակաց օգուտ: Այլ և ս զգուշանալ արժան է, զի մի լինիցի պատիժն մեծ քան զյանցուածն. և մի յաղագս նոյնատիպ վնասուց լինիցի զոմանս տանջել, իսկ զոմանս և ոչ 'ի դատ կոչել:

Մեծապէս սանձել պարտ է զբարկութիւն 'ի պատուհասելն. զի ոչ երբէք ոք որ ցասմամբ բերի 'ի պատժել, կացցէ 'ի չափաւորութեան՝ որ ընդ մէջ առաւելոյն և նուազին, ընդ որ ձեմականք հաճին. և իրաւամբք հաճին, միայն թէ չգովէին զբարկութիւն իբրև օգտակար ինչ բնաւորութ, որ՝ յամենայնի է հերքելի. և ըղձալի, զի առաջնորդք հասարակաց նման գտցին օրինաց՝ որ բերին 'ի պատուհասել ոչ բարկութեամբ, այլ արդարութեամբ:

ԻԶ. Այլ և ս 'ի յաջողուածս իրաց յորդելոց ըստ հաճոյս անձանց մերոց, մեծապէս խորշեսցուք յամբարտաւանութենէ, յարհամարհութենէ և 'ի յանդգնութենէ: Վասն զի որպէս 'ի ձախողութիւնս, նոյնպէս և 'ի յաջողութիւնս ոչ կալ 'ի չափուն՝ ծանծաղմտութիւն է. գեղեցիկ և պատուական է հաւասարութիւն յամենայն 'ի կեանս, և նոյն հանապազ դէմք կերպարանաց, և նոյն ճակատ. զոր օրինակ զՍոկրատայ լսեմք և զԼելիոսէ: Ապաքէն զՓիլիպպոս մակեդոնացւոց արքայ; որ գործովք քաջութեան և փառօք յաղթեալ

1 Ըստ Ստոյիկեանց:

տեսանի յորդւոյն, 'ի հեզութեան և 'ի մարդասիրութեան գեր 'ի վերոյ տեսանեմ քան զորդին։ Վասն որոյ առաջինն միջոց մեծ գտաւ, և երկրորդն բազում մասամբ վատթար. մինչ զի ուղիղ պատուիրանադրել երևէին որք խրատեն, զի որչափ բարձրագոյն գտանիմք, այնչափ ցածագոյն ցուցցուք զանձինս։ Պանետիոս զԱփրիկանոսէ աշակերտէ և զընտանւոյ իւրմէ՝ սովոր էր, ասէ, ասել. Ո՛ որ օրինակ սովորութիւն է ըղձիս յանդգունս 'ի պատճառս ստէպ արշաւանաց պատերազմի խայտացեալս՝ 'ի ձեռս տալ սանձահարծիչ վարժողաց, զի մեղմասցին, և դիւրին լիցի վարել զնոսա. նոյնպէս և զմարդիկ որ յաջողութեամբ սնքացեալք իցեն իբրև անսանձք և յանձնապաստանք, պարտ է ընդ կրկէսս բանի և վարդապետութեան շրջաբերել, զի քաջ տեսանիցեն զանհաստատութիւն իրաց մարդկութեանս և զայլափոխութիւնս բախտի։

Նաև դարձեալ յառաւել յաջողութիւնս առաւել 'ի ձեռս առնուլ պարտ է զխորհուրդ բարեկամաց. և մեծ ևս քան զոր յառաջն մեծարանս ընծայել նոցա։ Միանգամայն և զգուշալի, զի մի շատ ունկն մատուսցուք մարդահաճոյից, և մի թողցուք մարդելուզել մեզ. յորում դիւրին է պատրիլ. վասն զի յայնժամ սկսանիմք այնպիսի համարել զանձինս, իբրև զի իրաւամբք գովիցեմք։ Յորմէ անթիւ ծնանին վնասք. որովհետև մարդիկ փքացեալք կարծեօք՝ ծաղր լինին ամօթով, և 'ի մեծամեծ մոլորութիւնս շաղին։ Այլ այսոքիկ այսքան։

Նաև զայս այսպէս արժան է դատել, թէ մեծամեծ իրք և մեծասիրտ ոգւոյ գործք 'ի նոցանէ գործին՝ որք հասարակաց են առաջնորդք. զի տնտեսութիւն նոցա է համատարած և առ բազումս պատշաճեալ։ Բայց կան և եղեն ևս մեծասիրտք բազումք 'ի հանդարտութեան վարս. որք հետազօտեցին և կամ 'ի գլուխ հանին զիրս մեծամեծս, կալով 'ի վիճակի իւրեանց սահմանի. և կամ անցեալք 'ի դասս իմաստասիրաց և վերակացուաց տէրութե, բերկրական էր նոցա առանձին գործք. ոչ յանչափս յաճախելով զնոսին, և ոչ արտաքոյ թողլով զիւրեանցն 'ի վայելից նոցին. մանաւանդ թէ և բարեկամաց մատակարարելով և հասարակաց՝ յորժամ պէտքն պահանջէին։ Միայն թէ նախ զա-

ռաջինն այն ինչք բարիոք ծնունդ ունիցին, և ոչ իւիք երբէք յանիրաւ շահուց վատթարութեան. և դարձեալ՝ յոլովից ելեն 'ի շահ օգտի, և այն՝ արժանաւորաց. և ևս՝ զի աճեսցեն խելօք, արթնութեամբ և խնայութեամբ. և ոչ վատնեսցին 'ի պէտս զեղխութեան և անառակութեան, այլ առաւել առատաձեռնութեան և բարերարութեան: Որ զայս ամենայն պահիցէ, մարթ է այնպիսւոյն կեալ մեծավայելուչ, ծանրաբարոյ և քաջասիրտ, միանգամայն և անկեղծ, հաւատարիմ և մտերիմ ոգւով բարեկամութեան ընդ մարդկան:

ԻԵ. Յարմար է ասել այսուհետև զմիոյ մնացեալ մասանէ համեստութեան, յորում փայլէ ամօթխածութիւն, և [illegible] զգացես վարուց, բարեխառնութիւն և պարկեշտութիւն, և բովանդակ հանդարտութիւն ամբոխմանց սրտի, և չափ և եղանակ իրաց: Այս այն է որ 'ի Յելլենացւոց և 'ի Հռովմայեցւոց Վայելչական անուանի: Այլ ճիգն սորա այն, զի ոչ 'ի վայր քան զհամեստն երևեսցի. վասն զի որպէս վայելչականն է համեստ, նոյնպէս և համեստն վայելուչ:

Իսկ թէ զինչ խտիր կայցէ ընդ համեստն և ընդ վայելուչն, դիւրագոյն է իմանալ քան ճառել: Զի վայելուչն յայնժամ 'ի վեր երևի, յորժամ յառաջեսցէ համեստութիւնն: Ո՛ինչ զի ոչ միայն յայսմ մասին համեստութեան, զորմէ աստանօր 'ի դէպ է մեզ խօսել, այլ և յերիս անդ նախաճառեալս փայլէ վայելչութիւն: Վասն զի եթէ բանականութեամբ վարիլ, և եթէ խոհականն բանիւ, և զոր առնեսդ՝ խորհրդով առնել, և յամենայնի հայել և կալ պաշտպան ճշմարտին է վայելուչ. ընդ հակառակն՝ խաբիլ, սխալել, մոլորիլ, անկանել, այնչափ անվայելուչ է, որպէս զցնորիլն և 'ի մտաց անկանիլ: Այլ ամենայն ինչ արդար՝ է և վայելչական. և զարդին հակառակն անիրաւն, որպէս ամօթալի, նոյն և անվայել: Զնոյն իսկ ինձ և զարիութենէ. զի որ ինչ գործի այրաբար և քաջասրտութեամբ, է գործ մարդոյ արժանի և վայելչական. և որ ոչ այսպէս, յոռի է, ըստ նմին և անվայելուչ:

Արդ ուրեմն առ ամենայն ինչ համեստ է և վայելչական. և այս այնպէս յայտնի, զի ոչ խոր ինչ տեսութիւն խնդրէ, այլ ակն յանդիման կայ: Քանզի է ինչ

մեան վայելչականին զոր և յամենայն առաքինութիւն պարտ է իմանալ, որ առաւել 'ի միտս մարթի զանազանել յառաքինութենէն, քան եթէ իրօք։ Որ օրինակ վայելչութիւն և գեղեցկութիւն մարմնոյ ոչ մարթի զատանել 'ի քաջողջութենէ. ըստ նմին՝ վայելչականն, զորմէ մեր բանքս են, բոլորովին արդեօք ընդխառնեալ է ընդ առաքինութեան. այլ մտօք և խորհրդածութեամբ զանազանի։

Այս է ստորագրութիւն նորին կրկնակի. վասն զի նախ հանրական իմն իմանամք վայելչականութիւն, որ յամենայն համեստութեան զատանի. և երկրորդ այլ նմին ներքոյ անկեալ, որ անկ է իւրաքանչիւր մասին համեստութեան։ Զառաջինն զայն զայս օրինակ գրեթէ սովորութիւն է սահմանել. վայելչականն է՝ որ յանկաւոր է գերազանցութեան մարդոյն, յայնմ՝ յորում բնութիւն նորա տարբերեցի յայլոց կենդանեաց։ Իսկ զմիւս մասն ստորանկեալ ընդ սեռիւ, այսպէս սահմանեն. վայելչականն այն է ասեն, որ այնպէս յանկաւոր է բնութեան, մինչ զի 'ի նմին բարեկարգութիւն և չափաւորութիւն երևեսցի հանդերձ ազատական իմն ցուցիւք։

ԻԲ. Եթէ զայս այսպէս իմանալ իցէ արդար, իմաստասիրել կարող եմք 'ի վայելչականէ անտի, որում քերթօղք երթան զհետ. զորմէ այլուր Ճոխագոյն բանք լինին։ Բայց արդ՝ յայնժամ պահեալ ասեմք 'ի քերթողաց զվայելչութիւն, յորժամ իւրաքանչիւր անձին զպատշաճականն տան գործել և ասել։ Որ օրինակ, եթէ 'ի բերանոյ Այասայ կամ Մինովսայ ասասցէ ոք,

Թող ատեսցեն, այլ երկիցեն։

կամ Նոյն ծնողն է գերեզման ծննդոց.

Անվայելուչ երևի, զի արդար լուաք զնոցանէ լինել. և սակայն 'ի դէմս Ատրէոսի[1] ասացեալ ծափաձայն զավի. զի արժանի անձն են բանքս։ Բայց քերթօղք թող զվայելուչն դատեսցեն ըստ դէմս կերպարանաց. իսկ մեզ բնութիւնն ինքնին զխօսելն ետ զիւրաքանչիւր դէմս, գերապանծ և գեղեցիկ վայելչութեամբ քան զամենայն կենդանեաց։

Սմին իրի թող քերթօղք տեսցեն 'ի բազմապատիկ

1 Առն ակիրատի։

դիմադրութիւնս անդ և զայն, թէ զինչ 'ի ձահ իցէ և զինչ վայելչական նաև վատթարաց. այլ քանզի մեզ 'ի բնութենէ տուեալ մասունք զգօնութեան, չափաւորութեան, բարեխառնութեան և ամօթխածութեան, և ինքնին բնութիւն ուսուցանէ ոչ անտես առնել զայնուիկ՝ թէ որպէս արժան իցէ քաղաքավարել առաջի մարդկան, զհետ գայ, զի և վայելչականն այն առ ամենայն համեստութիւն պատկանեալ՝ երևեսցի սփռեալ և տարած, որպէս և այն՝ որ նկատի յիւրաքանչիւր ազգս առաքինութեանց։ Քանզի զոր օրինակ գեղեցկութիւն մարմնոյ վայելուչ բաղադրութեամբ անդամոց զօշոտէ զաչս, և զուարճացուցանէ դոլլին իսկ այդուիկ՝ զի ամենայն մասունք չքնաղ իմն յօրինուածով դաշնաւորեալ են ընդ իրեարս, նոյնպէս և վայելչութիւնն 'ի վարս փայլեալ՝ յինքն յանկուցանէ զհաւանողական հաճութիւն այնոցիկ, ընդ որս քաղաքավարիցի ոք կարգաւորութեամբ և զգօնութեամբ և չափաւորութեամբ բանից և գործոց։

Այս և արժան իսկ է ակնածութիւն իմն ցուցանել առաջի մարդկան, եթէ առ պատուականս և եթէ առ այլս։ Վասն զի անտես առնել՝ թէ որպիսի է ոք յաչս այլոց, ոչ միայն յանդգնութիւն է, այլ և ամենևին իսկ ցոփութիւն։ Այլ է ինչ զանազանութիւն 'ի պատշաճական գնացսն որ առ մարդիկ, ընդ արդարութիւն և ընդ ակնածութիւն. արդարութեան մասին է՝ ոչ խուել զմարդիկ, ակնածութեան՝ ոչ դառնացուցանել. յորում առաւել քաջ տեսանի վայելչականին զօրութիւն։ Յայսոսիկ առաջարկութիւնս, որպէս կարծեմ՝ ծանուցաւ թէ զինչ այն իցէ ձայնեալն 'ի մէնջ վայելչական։

Իսկ գործ նորա պատշաճական նախ առաջին ընդ այս ուղղի ճանապարհ, որ առաջնորդէ առ պատշաճն և առ պահպանութիւն բնութեան. որոյ առաջնորդութեան եթէ զհետ ընթանասցուք, ոչ երբէք խոտորեսցուք։ Դարձեալ 'ի միտ առնուցումք որ ինչ սրատեսն է և նրբահայեաց բնութեամբ, և որ քաջայարմարն է առ մարդկան ընկերակցութիւն, նա և որ ինչ ուժաւորն իցէ և կորովին։ Այլ առաւելագոյն յարգ վայելչականին յայսմ մասին է՝ զորմէ ճառեմք։ Զի ոչ մարմնոյ միայն շարժմունք յարմարք բնութեան են ընտրելի, այլ ա-

ռաւել ևս հոգւոյն՝ նոյնպէս բարեյարմարանք բնութեան։

Վասն զի կրկին զօրութիւն է հոգւոյ և բնութեան. մի մասն ՚ի յօժարութեան հաստատեալ՝ որ ցանկութիւն կամ կիրք ասի, որ տատանեալ յուզէ զմարդ. և միւսն ՚ի բանն՝ որ ուսուցանէ և յարդարէ զինչ պարտ իցէ առնել և յորմէ հրաժարել։ Այս հարկ է, զի բանն առաջնորդեսցէ, և յօժարութիւնն հպատակեսցի։

ԺԹ. Արդ ամենայն առնելութիւն պարտի անմասն լինել ՚ի յանդգնութենէ և յանհոգութենէ. և չառնել ինչ, զորոյ չկարիցէ տալ զպատճառ հաւանելի։ Զի այս իսկ է գրեթէ սահման պատշաճականին։

Այս պարտ է գուն գործել՝ զի յօժարութիւնքն հնազանդեսցին բանին. ոչ յառաջ վազեսցեն քան զնա, և ոչ լքանիցեն առ վատութեան կամ վատասրտութեան. և իցեն հանդարտ և ազատ յամենայն ամբոխմանէ սրտի, յորմէ ՚ի վեր փայլեսցէ ամենայն զգօնութիւն և ամենայն բարեկարգութիւն։ Վասն զի այն յօժարութիւնք որք հեռագոյնս թափառին, և որպէս խայտացեալք եթէ ՚ի ցանկալն և եթէ ՚ի խորշելն՝ ոչ ըստ բաւականին սանձեալ լինին ՚ի բանէ, անշուշտ անցանեն ըստ սահման և ըստ չափ։ Վասն զի լծընկեց լինին և զընկենուն զհնազանդութիւն, և ոչ հպատակեն բանի՝ որում ներքոյ են անկեալ օրինօք բնութեան. որովք ոչ միայն ոգւոցն խռովութիւն հասանէ, այլ և մարմնոց։ Ի դէմս հայեաց բարկացելոցն, կամ յուզելոց ՚ի ցանկութենէ իմեմնէ կամ յերկիւղէ, և կամ խնդացելոց ՚ի տարապայման հեշտութենէ. որոց այլատարազ են երեսք, ձայնք, շարժմունք և կացք։

Յորոց ուսանիմք իմաստասիրել առ օրէնս պատշաճից ՚ի վեր ելեալ՝ թէ պարտ է զամենայն յօժարութիւնս ամփոփել և ցածուցանել. և արծարծանել զուշ և ըզփոյթ պնդութեան, զի մի ինչ յանդգնութեամբ և ըստ բերման, անխորհրդաբար և անհոգաբար գործեսցուք։ Քանզի և ոչ ծնաւ զմեզ բնութիւնն զի երևեսցուք առ խաղ և առ կատակ ստեղծեալ, այլ մանաւանդ ՚ի լրջմտութիւն և առ ծանր ծանր և մեծամեծ փոյթս։ Օրէն է արդեօք ՚ի կիր արկանել զխաղն զայն և զկատակ, այլ այնպէս՝ որպէս զհանգիստ քնոյ և զայլ դիւրութիւնս, յետ ՚ի գլուխ տանելոյ զծանր իրս և զլըր-

Ջակոնս։ Եւ նոյն իսկ խօսելն ընդ կատակս չպարտի լինել խեղկատակութեամբ և անպարկեշտութեամբ, այլ ազգօն և զուարճալի։ Քանզի զոր օրինակ տղայոց ոչ զամենայն խաղ խաղալոյ տամք համարձակութիւն, այլ զայն որ չիցէ օտար 'ի համեստ շարժութենէ, նոյնպէս և 'ի կատակս անդ պարտի փայլել նշոյլ իմն գեղեցիկ հանճարոյ։

Եւ պարզաբար՝ կրկին ազգ է կատակաց. մին գռեհկական, ժանտաժուտ, խենէշ, պղծալից. միւսն պանծալի, քաղաքավար, մտացի և քաղցրաբան։ Այսպիսիք են ոչ միայն Պղաւտոսն մեր, և Ատտիկեցւոցն վաղեմի խաղք ծաղրաշարժք, այլ և սոկրատեան փիլիսոփայիցն մատեանք լի են, և բազումք են բազմաց զուարճախօսութիւնք. զոր օրինակ են նոքա, զորս Կատոնն ծերն հաւաքեաց, որ և առածք կոչին։ Եւ այսպէս դիւրին է զանազանութիւնն մտացի և գռեհկական կատակաց. մին այն որ 'ի դէպ ժամու լինի և յոգւոյ զուարթացելոյ, վայելչական մարդոյ. իսկ միւսն և ոչ ազատ անձին յանկաւոր, եթէ ընդ իրացն դժպատեհութիւն խառնեսցի և ցոփաբանութիւն։ Արժան է և խաղալոյն չափ դնել, զի մի յանչափս մեղկասցուք, և զրգանօք գգուեալ 'ի վատթարութիւն ինչ անկղիտանայցեմք։ Բայց առաջի առնեն պարկեշտ օրինակս խաղուց Դաշտն [1] մեր և զբօսանք որսորդութեան։

Լ. Այլ առ ամենայն խնդիր պատշաճից պատկանի հանապազ որոճել 'ի միտս՝ թէ որքան է գերազանցեալ մարդոյս բնութիւն քան զանասնոց անբանից և զգազանաց։ Նոքա ոչ ինչ զգան բաց 'ի հեշտութենէ, և 'ի նոյն բերին ամենայն ձգամբ. իսկ միտք մարդոյ ուսմամբ բուծանին, և խորհելով՝ միշտ զիմն կամ հետազննէ, կամ առնէ, և զուարճութեամբ տեսոյ և լսոյ բերի։ Այն զի՝ եթէ ոք փոքր մի աւելի հեշտասէր իցէ՝ միայն թէ չիցէ յանբանից ազգէ, զի գտանին և այնպիսիք 'ի մարդկանէ ոչ իրօք՝ այլ կոչմամբ. այլ եթէ իցէ ոք

[1] Դաշտ, կամ Դաշտ Արէսեան կոչի 'ի Հռովմ հրապարակն այն որ էր նուիրեալ Արէսի անուանելոյ աստուած պատերազմի. յորում մարզէին պատանիք Հռովմայեցւոց 'ի կիրթս զինուորութե. և այլ ամենայն խաղք հրապարակական հանդիսից անդէն կատարէին։

փոքր մի ուղղորդ, թէպէտ և ըմբռնեսցի 'ի հեշտասիրութենէ, ողողակէ և թանգուզէ զյօժարութիւն ցանկութեան առ պատկառանաց: Յորմէ պարտ է 'ի միտ առնուլ, թէ ցանկութիւն մարմնոյ ոչ է լրիւն արժանի գերազանցութեան մարդոյս. և թէ պարտ է արհամարհել զայն և 'ի բաց մերժել: Ապա եթէ ոք տեղի տայ իւիք ցանկութեան, պարտ է նմա զգուշեաւ կալ 'ի չափն վայելից: Արդ կերակուր և ըմպելի յառողջութիւն մարմնոյ և առ ոյժ պատկանիցին, և ոչ 'ի հեշտութիւն: Այլ և ես եթէ կամիցիմք խորհել՝ թէ որքան է 'ի բնութեանս գերազանցութիւն և արժանապատուութիւն, խելամուտ եմք թէ քանի՛ անարգ է զեղխիլ յանառակութիւնս, և մեղկ և գիրգ կեանս վարել. և քանի՜ համեստ խնայութիւնն իցէ, ժուժկալութիւն, լրջմտութիւն և սակաւապէտ կեանք:

Թուի իմն այնպէս՝ եթէ բնութիւնն կրկին մեզ ըզգեցուցեալ իցէ դէմս. յորոց առաջինն է հասարակաց. այն զի ամենեքեան եմք հաղորդ բանի, և գերազանցութեան նորա՝ որով 'ի վեր եմք քան զանասունս. յորմէ ծագէ ամենայն համեստ և վայելչական, և 'ի նմանէ բղխէ բանն գտակ պատշաճից. և միւսն այն՝ որ միոյ միոյ առանձինն է շնորհեալ: Քանզի զոր օրինակ 'ի մարմինս բազմադիմի են խտիրք. զի զոմանս տեսանեմք երագոտն յընթացս, զայլս զօրաւոր զօրութք 'ի մրցմանս. որպէս և 'ի տեսիլ գեղոյ ոմն մեծարոյ 'ի բնէ, այլ ոք չքնաղ. սոյնպէս և 'ի հոգիս են մեծ ևս զանազանութիւնք:

Ի Լուկիոս Կրասոս և 'ի Լ. Փիլիպպոս էր շնորհ մեծ բանի. մեծ ևս ճարտարութի՟ յոյժ 'ի Կ. Կեսար յորդին Լուկիոսի: Բայց զայնու ժամանակաւ 'ի Մ. Սկաւրոս, 'ի Մ. Դրուսոս երիտասարդ՝ անհամեմատ անաչառութի՟. 'ի Կ. Լէլիոս զուարթութի՟ շատ. յընտանին նորա 'ի Սկիպիոն ամբարհաւաճութիւն մեծ, կեանք տխուր: Ի մէջ Յունաց յաղագս Սոկրատայ լսեմք քաղցր լինել և քաղցրաբան և զուարճախօս, և յամենայն բանի քօղաւոր, ըստ յունական ձայնին ծաղրածու. ընդ հակառակն՝ Պիւթագորաս և Պերիկղէս ամենեւին ծանրաբարոյք լինել ասին՝ առանց իրիք զուարթութեան: Խորամանկ ասի լինել Աննիբաղ 'ի Պենացիս. և 'ի մե-

րոց զօրավարաց Կ. Մաքսիմոս ասեն գիտէր դիւրաւ վերարկել, լռել, պատրուակել, դարանիլ և գուշակել զԹշնամեացն խորհուրդս: Յորում մասին Յոյնք վերագոյն քան զայլս դնեն զԹեմիստոկղէս և զփերէացին Յասոն: Առաւել հնարագէտ և խորագէտ գործ է Սողոնի, որ ձևացոյց զանձն մոլեգնեալ առ ապահովել զկեանս, և աւելի ևս օգտել հասարակաց:

Բազմօք աննման գտանին սոցա այլք՝ անկեղծք և անպատրուակք, որք ոչն արժան համարին առնել և ոչինչ գաղտնածածուկ և դարանօք՝ ճշմարտասէրք, նենգատեացք. դարձեալ և այլք՝ որք զամենայն ինչ յանձն առնուն կրել, և ամենայն ումեք ծառայել, միայն Թէ հասցեն կամաց իւրեանց. զոր օրինակ տեսանեմք ըղ Սիղլա և զՄ. Կրասոս: Յայսմ աւանդի զԼիւսանդրէ լակեդեմոնացւոյ կարի յոյժ աչալուրջ լինել և համբերատար. և հակառակ այնմ Կալլիկրատիդաս, որ առաջնորդ եղև նաւական գնդի իսկ և իսկ զկնի Լիւսանդրի: Նա ևս գտանի այր ոք այր, որ Թէպէտ և աւագուԹեամբ ճոխացեալ, այլ 'ի բանս իբրև զմի 'ի բազմուԹենէ երևի լինել. զոր 'ի Կատուղոս՝ եԹէ 'ի հայրն և եԹէ յորդին, տեսաք. որպէս և 'ի Կ. Մուկիոս Մանկիա: Լուայ զնոյն նոյնպէս լինել և յանդրանիկն Պ. Սկիպիոնի Նասիկա: Զնորին հակառակն՝ Թէ հայր նորա, այն որ զՏիբերիոսի Գրակքոսի զվնասակար փուԹոյ վրէժս եառ, ոչ ինչ քաղցրուԹիւն ունէր խօսից: Որպէս և ոչ Քսենոկրատէս խստաբարոյն 'ի փիլիսոփայս, որ և յայն սակս ասեն մեծանուն եղև և ականաւոր: Այլ ևս անԹիւ խտիրք են բնուԹեան և բարուց, որ ոչն են անգոսնելի:

ԼԱ. Արդ իւրաքանչիւր ումեք պարտ է զիւրն պահել բնուԹիւն, ոչ որ ախտաւոր՝ այլ որ սեպհականն իցէ. որով և հեշտեաւ պահի վայելչականն այն զոր խնդրեմք: Վասն զի այնպէս պարտ է վարել, զի ոչ իւիք ընդդէմ կքրեսցուք համրական բնուԹեան. բայց յետ պահելոյ զայն՝ իւրական բնուԹեան զհետ եկեսցուք: Մինչ զի Թէ և իցեն այլք ոմանք առաւել ծանրաբարոյք և լաւաբարոյք, սակայն մեք զմեր փոյԹ՝ բընուԹեան կանոնաւ չափեսցուք: Զի և չէ 'ի ճահ դիմամարտիլ ընդ բնուԹեան, և ոչ զհետ վարիլ այնմ՝

որում ոչն ունիս հաստանել: Յորմէ առաւել 'ի վեր երևի, թէ որպիսի ինչ իցէ վայելչականն այն. վասն զի ըստ առածին, Ոչ ինչ է վայելուչ յոչ կամաց Աթենասայ. այս է՝ յորժամ ընդդէմ կայ և դիմամարտ յառանէ բնութիւնն:

Ապաքէն եթէ կայ ինչ վայելչական, ոչ այլ ինչ է այն անշուշտ՝ բայց զուգակշռութիւն համօրէն կենաց, միանգամայն և իւրաքանչիւր գործոց. զոր անմարթ է պահել քեզ, եթէ այլոցն բնութեան զհետ կրթեալ՝ զքոյովդ զանց առնիցես: Քանզի զոր օրինակ զայն բարբառ պարտ է մեզ վարել՝ որ դիտելին է մեզ, զի մի՛ հանգոյն ոմանց որ զյունականն բառս 'ի ներքս մուծանեն՝ կարի իրաւամբք այպանելի լիցուք, նոյնպէս և յարարուածս և յամենայն վարս չպարտիմք այլափոխութիւն ինչ 'ի վերայ ածել:

Եւ այս պէսպիսութիւն բնութեանց այնչափ ունի զօրութիւն, մինչ զի ուր երբեմն պարտ թուի ումեք զիւրովլին ջնալ, այլում 'ի նոյն պատճառս չէ պարտ: Միթէ այլ պատճառք էին Մարկոսի Կատոնի, և այլ այլոց, որք անձնատուր եղեն Կեսարու յԱփրիկէ: Եւ թերևս պարսաւելի իսկ լինէին այլք, եթէ անձամբ զանձինս սպանանէին. զի վարք նոցա ոչ խիստ էր, և բարք հեշտինք. իսկ Կատոնի քանզի անկարծելի իմն ծանրաբարոյութիւն առեալ էր 'ի բնութենէ, և ինքն զնոյն հանապազորդեան տոկունութեամբ էր ամրացուցեալ, լաւ ևս թուեցաւ նմա մեռանել՝ քան զերեսս տեսանել զբռնաւորին:

Որչափ ինչ շատ կրեաց Ոդիսեւս յայնմ անընդհատ մոլորութեան, յորժամ և կանանց ծառայէր (եթէ արժան իցէ կանայս անուանել զԿիրկէ և զԿալիպսով), և միանգամայն յամենայն 'ի բանս՝ ամենեցուն բարեմիտ և զուարթ զանձն կամէր ցուցանել. իսկ 'ի տան թշնամանեաց անգամ ծառայից և աղախնեաց տարաւ, զի երբէք որում ցանկանայրն հասցէ: Բայց Այաքս անձնամատն՝ բիւր անգամ ընտրէր մեռանել, քան զնոյն կիրս կրել:

Զայսոսիկ զմտաւ ածեալ՝ պարտ է նայել, զինչ ինչ իւրական ունիցի իւրաքանչիւր ոք՝ և զնոյնս տնօրինել, և ոչ փորձել՝ թէ ո՛րք վայելեն ինքեան օտարին իրք:

Վասն զի այն ինչ տիրապէս վայելէ առն իւրաքանչիւր, որ ոչ տիրապէս իւր է ։

Ապա ուրեմն զիւր ուշիմութիւն ծանիցէ այր իւրաքանչիւր, և անաչառ դատաւոր լիցի լաւութեանց և պակասութեց իւրոց. զի մի՛ իմաստնագոյնք քան զմեզ երևեսցին խուզարկուքն Թատերականք. քանզի նոքա ոչ եթէ զլաւս 'ի լաւաց, այլ զանձանց իւրեանց համապատշաճ ընտրեն զառասպելս ։ Որք միանգամ զօրաւոր են ձայնիւ, զԱնտիգոնայս և զՄեդոս կերպարանին. և որք շարժուածով, զՄենելայէ և զԿղիտեմնեստրա ։ Եւրիպիդոս՝ զոր եսն յիշեմ, միշտ զԱնտիոպաս ձևացուցանէր. ոչ ստէպ Սոփոկղէս զԱյաքս ։ Եւ արդ եթէ կատակողն զայս քաջ դիտիցէ 'ի տեսարանի, իսկ իմաստունն ոչ կարիցէ դիտել 'ի կեանս ։ Ապա ուրեմն յոր ինչ իրս քաջայարմար իցեմք, 'ի նոյնս վաստակեսցուք առաւել ։ Ապա եթէ հարկն ուրեք երբէք յայնս ձգեսցէ զմեզ՝ որք արտաքոյ են մերում ուշիմութեան, պէտք են 'ի մէջ առնուլ զամենայն փոյթ և զմտածութիւն և զճիգն, զի զնոսին՝ եթէ ոչ վայելուչս, գէթ նուազ անվայելուչս մարթասցուք կատարել ։ Եւ ոչ պիտի ջանալ այնչափ հասանել բարեաց՝ որ չեն մեզ տուեալ, որչափ խուսափել 'ի չարեաց ։

ԼԲ. Յերկուս դէմս առն կերպարանացն զորոց 'ի վեր անդր ասացի, յարէ և երրորդ, զոր պատահումն ինչ կամ ժամանակն 'ի ներքս ածէ. որպէս և չորրորդ, զոր մեք մեզէն մերովս կամօք պատշաճեմք անձանց ։ Վասն զի Թագաւորութիւնք, տէրութիւնք, աւագութիւնք, փառք, մեծութիւնք, ձոխութիւնք, և որ սոցին են հակառակք, ընդ դիպուածով են, և 'ի ժամանակաց ղեկավարին ։ Իսկ այն՝ թէ զո՛ր կերպարանս մեզ կամ իցէ առնուլ զանձամբ, զմերոց կախի կամաց. և այսպէս են որ յիմաստասիրութիւն տան զանձինս, են որ 'ի քաղաքական իրաւունս, և են որ 'ի պերճախօսութիւն. և 'ի նոյն առաքինութեանց կարգի՝ է որ յայսմ և է որ յայնմ առաւել ընտրէ գերապանծ լինել ։

Եւ որոց հարքն կամ նախնիք յառաքինութեան իմիք համբաւեցան, այնպիսիքն ջանան բազում մասամբ յայն ազգ գովութեան գերապանծ լինել. զոր օրինակ Կ. Մուտիոս որդի Պուբլիոսի 'ի քաղաքական իրա-

ւումս, Ափրիկանոս որդի Պօղոսի 'ի զինուորութեան մասին։ Նա կեցք 'ի գովութիւնս անդր զօր 'ի հայրց ընկալեալ՝ յաւելուլ ինչ և յանձանց. որպէս սա ինքն Ափրիկանոս պերճախօսութիւն 'ի վերայ ած պատերազմական քաջութեան։ Զնոյն և Տիմոթէոս արար Կոնոնի որդին՝ որ ոչ ընդհատ գոլով 'ի հօրէն 'ի փառս մարտի՝ յաւել 'ի նոյն գովութիւն և զուսման և զուշիմութեան պարծանս։ Եւ երբէք զի ոմանք զանց զառաջնոցն արարեալ նմանութեամբ, անձանց իմն կարգեն սեպհական ընթացս. և առաւել յայսմ մասին ձգնին յօլովակի այնոքիկ՝ որ յանանշան նախնեաց ծագեալ, 'ի մեծամեծս դէտակն ունին։

Արդ զայս ամենայն, 'ի խնդրել մեր արդ թէ զինչ ինչ վայելուչ իցէ, պարտ է մեզ որոճել 'ի խորհուրդս և 'ի սրտի։

Նախ քան զամենայն պէտք են սահմանել անձին, թէ ո՞յք ոմանք և որպիսի կամիցիմք լինել, և յո՛ր պայման կենաց. որ է մտածութիւն դժուարին քան զամենայն։ Վասն զի 'ի սկզբան մանդ. երիտասարդական հասակի, ուր առաւել տկարութիւն է խորհրդոյ, յայնժամ այր իւրաքանչիւր դնէ 'ի մտի վարել զայն ընթացս կենաց՝ յոր առաւել հարեալ է սիրով. և այնպէս մինչ չև բաւական լեալ 'ի դատել՝ եթէ ո՛ր այն իցէ լաւն 'ի լաւաց, անձամբ զանձն պարաւանդէ յայս ինչ օրինակ ընթացից կելոյ։ Զի զոր զՊրոդիկեանն Հերակլեայ ասեն, ըստ որում՝ է տեսանել առ Քսենոփոնի, թէ այն ինչ զառաջինն յարբունս հասանէր, որ է ժամանակ տուեալ 'ի բնութենէ առ ընտրելոյ զճանապարհ կենաց յոր և կամք իցեն ումեք մտանել, ել յանապատ ուրեմն առանձնութեան, և անդ նստեալ խորհէր ընդ միտս յերկար վարանմամբ, քանզի երկուս տեսանէր ճանապարհս, մի փափկութեան և միւս ևս առաքինութեան, յո՞ր 'ի նոցանէ արդեօք լաւ իցէ ոտնփոխ լինել. այդ ասեմ թերևս Հերակլեայ մարթացաւ դէպ լինել Դիոսասերմանն. այլ մեզ ոչ նոյնպէս, որք զհետ երթամք որոց և հաճոյ թուիցի յաչս իւրաքանչիւր, և վարիմք զկնի ջանից նոցա և գնացից. և շատ ևս այն է՝ զի ծնողացն մարզեալ խրատուք՝ 'ի նոցուն բերիմք սովորոյթ և 'ի վարս։ Այլք ձգին դատաստանաւ բազ-

մութն, և որ ինչ մեծագունի մասին գեղեցիկ թուի՝ այնմ առաւել իղձ լինին ։ Սակայն ոմանք եթէ երջանիկ յաջողուածով, եթէ բնութեանն բարերարութք, և եթէ կրթանօք ծնողաց՝ ընդ ուղիղն ընթացան կենաց ճանապարհ ։

ԼԳ. Արդի սակաւս է տեսանել, որք կամ մեծահրաշ հանճարով, կամ գերափայլ հմտութեամբ, և կամ երկոքումբքն իսկ ճոխացեալ՝ գտին եւս ժամ պարապոյ առ ՚ի խորհել, թէ ընդ որ ընթացս կենաց առաւել կամիցին ճանապարհորդել. և յայսմ խորհրդեան զամենայն մտածութիւն պարտ է ժողովել առն առն յիւր ընտրութիւն ։ Զի որովհետև յամենայն ՚ի գործս, յեղանակէ անտի իւրաքանչիւր բնութեան՝ ըստ ճառելոցս ՚ի վեր անդր՝ հետազօտեմք եթէ զինչ ինչ իցէ վայելչական, ապա և ՚ի տնտեսել զկարգաւորութիւն բովանդակ կենաց՝ եւս քան զեւս հոգ ՚ի մտի ունել պարտ է վասն սոցին իրաց, որպէս զի մարթասցուք անձամբ յանձինս հաստատուն լինել ՚ի հանապազորդութեան կենաց, և ոչ ՚ի պարտուպատշաճն կաղալ ինչ երբէք ։

Այլ քանզի առ այս բնութիւնն օգտէ մեծապէս, և ինչք կամ բախտ մերձաւորապէս, զերկաքանչիւրն իսկ քաջ պարտ է կշռել յընտրութեան անդ վիճակի կենաց, այլ առաւել՝ զբնութիւնն. զի սա բազմօք հաստատագոյն է և անյեղլի. ուր բախտն երբէք երբէք՝ ըստ որում ինքնին զլխովին մահկանացու և կորստական, մաքառել երևի ընդ անմահ բնութեան ։ Այն ուրեմն որ միանգամ զամենայն խորհուրդ կենաց վերածէ յեղանակ իւրոյին բնութեան որ չիցէ ախտաւոր, այնպիսին հաստատութիւն ունի. քանզի այդ է կարի վայելչականն. եթէ ոչ ՚՚ի միտ առնուցու արդեօք, եթէ սխալեաց յընտրութեան անդ վիճակի կենաց ։ Այլ եթէ հանդիպեսցի այս, որպէս և մարթի իսկ հանդիպել, պարտ է փոփոխումն առնել վարուց և զընթացից ։ Զայս փոփոխումն, եթէ ժամանակն լիցի ձեռնտու, զլաւագոյն և հեշտեաւ առնեմք. ապա թէ ոչ՝ մեղմով և ոտն առ ոտն պիտի առնել. զոր օրինակ զբարեկամութիւնս ոչ այնչափ հաճոյականս և ոչ այնչափ հաւանելիս՝ սակաւ քակել վայելուչ դատին իմաստունք, քան եթէ յանկարծակի խզել ։

Իսկ յետ փոխելոյ զվարուց յեղանակ, ամենայն իրօք պարտ է գուն գործել, զի ցուցցուք՝ եթէ բարի խորհրդով արարաք զայն։

Այլ քանզի խուն մի յառաջ ասացաք, եթէ արժան է նախանձեաց լինել նմանող, նախ զայն 'ի բաց ձգել պարտ է, զի մի պակասութեանց նոցա լիցուք նմանողք. երկրորդ՝ եթէ բնութիւնն ոչ տանիցի նմանել ինչ ինչ իրաց, զոր օրինակ յառաջասացեալ Ափրիկանու որդին՝ զոր հայրն յորդեգիրս ետ Պօղոսի, առ տկարութեան առողջութեանն ոչ կարաց հօրն լինել նմանող, որպէս նա նմանող լեալ էր հօր իւրում. արդ ասեմ, եթէ չկարիցէ դատից պաշտպան կալ, կամ բեմբասացութեամբ խաղաղել զժողովուրդն, կամ մարտ յարդարել, սակայն զայն ինչ պարտ է 'ի գործ արկանել որ ընդ իւրով իցէ կարողութեամբ, զարդարութիւն իմա, զհաւատս, զմարդասիրութիւն, զհամեստութիւն, ըզպարկեշտութիւն. որով ոչ ևս պահանջիցի 'ի նմանէ՝ որ ինչ պակասի։ Իսկ ժառանգութիւն ամենայնաւ 'ի հարց յորդիս աւանդի, քան զամենայն զանձ պատուական, պարծանք առաքինութեան և գործոց լաւութեան. զոր յանարգութիւն դնել՝ գործ անարժանութեան և ամպարշտութեան պարտ է համարել։

ԼԴ. Եւ քանզի գործք պատշաճից ոչ նոյն զքեն այլ և այլ հասակաց, են որ երիտասարդաց անձն, և են որ ծերոց, արժան է ասել ինչ մի և յաղագս զանազանութեանս։ Արդ երիտասարդին անձն է յերիցագունից պատկառել. և 'ի նոցանէ ընտրել զառաւել լաւսն և զփորձն՝ առ 'ի յենուլ 'ի նոցուն խորհուրդ և յակնարկութիւն։ Վասն զի անգիտութիւն խակ տիոց իմաստութեամբ ծերոց կարգաւորեսցի և ուղղեսցի։ Եւս առաւել 'ի հեշտախտութեանց պարտ է արգելուլ զայդ հասակ, և կրթել յաշխատանս և 'ի վշտակրութիւնս հոգւոյ և մարմնոյ, զի քաջափայլեսցէ ճարտարութիւն նոցա 'ի պատերազմական և 'ի քաղաքական հանդիսի։ Եւ 'ի կամելն իսկ թոյլ տանել անձանց և խրախճանալ՝ զգոյշ լիցին յանչափութենէ. յուշ լիցի նոցա պարկեշտութիւն, որ դիւրաւ յաջողէ՝ եթէ յայնպիսիս կամիցին զի առաջիկայ գտցին և երիցագոյնք։

Իսկ ծերոց արժան թուի մեղմել զաշխատութիւնս

մարմնոյ, և ևս առաւելոյ զհոգւոյն կրթութիւն։ Պարտ է նոցա զուն գործել նպաստամատոյց լինել և բարեկամաց և երիտասարդաց, և առաւել տերութեան հասարակաց՝ խորհրդով և իմաստութեամբ՝ ըստ կարի և առաւել քան զկար։ Ոչ ինչ այնպէս զգուշալի է ծերութեան, որպէս չտալ զանձն 'ի թուլութիւն և 'ի յուլութիւն։ Իսկ վավաշոտութիւն՝ որպէս ամենայն հասակի դժպատեհ է, նոյնպէս յետին գարշութիւն է ծերութեան։ Նա եթէ յաւելցի և անժուժութիւն տռփանաց, կրկին են չարիք. զի ինքն ծերութիւնն աղեղանայ, և զերիտասարդացն անժուժութիւն առնէ անամօթագոյն։

Չէ ինչ օտար 'ի կարգէս ասել և զպաշտամանց աւագաց, ոսկականաց, քաղաքացեաց, և օտարականաց։ Արդ սեպհական պաշտօն աւագութեան է 'ի միտ առնուլ՝ թէ ինքն յանձին բերէ զդէմս քաղաքին, և պարտական է պնդագոյնս պահել զնորուն պատիւ և զվայելչութիւն. պահպանել զօրէնս, և զիրաւունս մատակարարել. յիշել՝ թէ ինքեան է հաւատացեալ աւանդ սոցա։ Իսկ ոսկականին պարտ է զոյգ և կշիռ իրաւամբք կեալ ընդ քաղաքակիցսն. ոչ նկուն լինել և ընկեցիկ, և ոչ սոնք փքացեալ. որպէս և 'ի տերութեան հասարակաց զայն ինչ իրս կամել՝ որք խաղաղութեան մասին են և համեստութեան։ Զի զայնպիսին ընաւորեցաք իմանալ և կոչել բարի քաղաքացի։

Իսկ օտարականի և նժդեհի գործ է՝ ոչ ինչ այլ իրս առնել, բայց զիւրն տուրևառս. ոչ ինչ հետազօտել զայլմէ, և ոչ իւիք հետաքրքրիր յօտար տերութեան լինել։ Զի այսօրինակ գոգցես է գտանել զխնդրելին զայն՝ թէ զինչ իցէ վայելչական, և զինչ յանկաւոր անձանց, ժամանակաց և հասակաց։ Չիք այլ ինչ այնպէս վայելուչ, որպէս յամենայն 'ի գործս և 'ի խորհուրդս պահել զանայլայլութիւն։

ԼԵ. Նաև քանզի վայելչականն այն յամենայն 'ի բանս և 'ի գործս՝ նկատի և 'ի մարմնոյ շարժուածս և 'ի կայս. և այն հաստատեալ է յերիս, 'ի գեղապատշաճութեան, 'ի կարգաւորութեան, և 'ի բարեվայելուչ գնացս. դժուարինք այսոքիկ 'ի ճառել. շատ լիցի գիտակ լինել։ Յերիս յայսոսիկ բովանդակի և փոյթն

լինելոյ յաշս այնոցիկ՝ ընդ որս և առ որս կեամք ։ Ասա-ցուք սակաւուք և զայսմանէ ։

Այլ նախ բնութիւնն ինքնին մեծապէս երևի խնամ կալեալ մարմնոյ մերում․ զի զդէմս կերպարանաց մերոց և զայլ ևս համաձայնութիւն՝ որ յանդամսն առնել պար-տէր զտեսիլ համեստ, զայն յերևելի վայրի եդ․ իսկ զանդամսն մարմնոյ՝ զտուեալս ’ի կարիս բնութեան, որոց էր լինել ’ի տեսիլ անգեղեայ և դժպատեհ, զնոյն պատրուակեաց և ղուղակեաց ։ Նոյն և այսպիսում Ճարտարարուեստ կազմութեան բնութեան զհետ չո-քաւ ամօթխածութիւն մարդկան ։ Ասան զի զորս բը-նութիւնն ծածկեաց, զնոյն ամենայն ողջամիտք տա-րամերժեն յաչաց․ և ’ի հարստակել անգամ կարեաց բնութեան՝ ջանան ըստ կարի գաղտնածածուկ օրինա-կաւ առնել․ և զանդամոց մարմնոյ որոց կարևոր են պէտ-քըն, չտան զանուն, ոչ զանդամոցն և ոչ զպիտոյիցն․ և զոր ինչ գործելն չէ՛ զարշելի միայն ’ի ծածուկ, այն և ’ի խօսս է ցոփութիւն ։ Մինչ զի ոչ յայտնի գործականու-թիւն իրացդ այդոցիկ, և ոչ ցոփաբանն լինել ազատ է ’ի շամբշութենէ ։

Այլ չէ արժան ունկն դնել Կնակեանց, և կամ ե-թէ եղեն Ստոյիկեանք ոմանք ոչ ինչ ընդհատ ’ի Կնա-կանաց, որք եպերեն և այպանեն զայն, զի մեք զայն ինչ իրս որք չեն իրք վատթար, անշնորհ համարիմք ’ի բերան առնուլ և անուանել․ իսկ զգործս վատթա-րութեան սեպհական անուամբք յորջորջեմք ։ Աւազակել, զաւաճանել, շնալ, է գործ վատթարութեան․ այլ սակայն զանուն սոցա չէ ցոփութիւն ։ Որդեծնութիւն գործ՝ է գործ համեստ․ այլ անուանել զնոյն՝ է ցոփ ։ Բազում և այլ ինչ ’ի դէմս մեզ ածեն նոքա վասն սոցին իրաց ընդդէմ պարկեշտութեան․ այլ մեք զբնութեան զհետ երթի-ցուք, և յամենայնէ՝ զոր ոչ տանին տեսանելիք և լսե-լիք, փախիցուք ։

Կալ, ընթանալ, նիստ և հանգիստ, երեսք և աչք, շարժմունք ձեռաց, սոքա իցեն ’ի վայելչականն յայն ։

Յորս յերկուց իրաց պարտ է խորշել առաւել․ զի մի ինչ լինիցի կանացի կամ մեղկ, և մի ինչ խիստ կամ շինականագոյն ։ Այլ չէ իսկ ներելի զաւեշտարարաց և ատենախօսաց՝ զի յանկաւոր ինքեանց համարեսցին,

զորս մեզ ցուցութիւն վարկանիմք ։ Կատակողացն 'ի թատրոնի սովորութիւն այնչափ զինքեան բերէ ամօթխածութիւն ըստ հին կանոնի, զի ոչ ոք 'ի հանդէս ելանէ խաղու առանց անդրավարտեաց, խիթացեալք՝ զի մի յանկարծ քացմամբ անդամոց՝ անպարկեշտ տեսիլ երևեցուսցեն ։ Այլ ըստ մերում սովորութեան որդիք չափահասք չերթան 'ի բաղանիս ընդ ծնողաց, որպէս և ոչ փեսայք ընդ աներաց ։ Արդ պարտ է պահել զայս ազգ պարկեշտութեան, մանաւանդ ուր բնութիւն ինքնին է վարդապետ և առաջնորդ ։

ԼԶ. Այլ քանզի գեղեցկութեան երկու ազգք են, մին չքնաղ, և միւսն պերճ, զչքնաղութիւնն պարտիմք կանացի գրել, զպերճութիւնն առնացի. վասն որոյ և արժան է յանձնէ 'ի բաց տարագրել զամենայն զարդ՝ առն մարդոյ անվայել, և զգուշանալ յայսպիսի պակասութեանց նաև 'ի գնացս և 'ի շարժմունս ։ Քանզի և կրկիսական շարժուածք բազում մասամբ են ատելի. և կատակողաց ծեքծեքմունք ինչ անպատեհք դառնացուցանեն զհանդիսականս. և յերկաքանչիւրսն բնականն և պարզն գովելին ։ Իսկ պերճութիւն 'ի դէմսն լաւութեամբ գունոյն երևի. և գոյնն կրթութեամբք մարմնոյն ։ Արժան է և ևս հոգ յանձին ունել 'ի լինել յարդարուն որ չիցէ ատելի, և ոչ յոյժ խնամեալ այնչափ՝ զի հեռի իցէ 'ի գեղջուկ և յանմարդի անհոգութենէ ։ Նոյն օրէնս պարտ է պահել և 'ի զգեստս. յորում, որպէս և 'ի յոլովագոյն իրս, չափաւորութիւնն է լաւ քան զամենայն ։

Այլ և զգոյշ լինել պարտ է, զի ոչ կարի յամրաշարժ լիցուք մեղկութեամբ 'ի ծանր գնացս, մինչև երևել նման բառնալեաց զգահաւորակս [1] 'ի հանդիսի, և ոչ յերագել անդ շտապեցուք խուճապմամբ. մինչև հեւալ և այլագունիլ դիմաց և ծամածռիլ բերանոյ ։ Այլ բազմօք առաւել պարտ է խնամ ունել, զի մի շարժմունք հոգւոյն օտարանայցեն 'ի բնութենէ. և այս յաջողէ եթէ զգոյշ լինիցիմք՝ զի մի անկանիցիմք յամբոխմունս կրից և 'ի սրտաթափութիւնս. և պինդ կալցուք զուշ միտաց 'ի պահպանութիւն վայելչականին ։

1 Գահաւորակք յածեցուցա- նեալ իրս յամբագնաց յոյժ ։ Նէին զկուռս և զորքազան անուա-

և յակամայս եկեսցուք և 'ի հարկէ ևեթ՝ եթէ ոչ ինչ այլ դեղ դարմանոյ գտանիցի. այլ սակայն մի ընդխառնեսցի ցասումն, ընդ որում անհնար է ուղիղ ինչ առնել և կամ խորհրդով։

Մեծաւ մասամբ օրէն է գթութիւն խառնել 'ի պատուհասն, բայց կից ընդ ծանրութեան. զի և անաչառ խստութիւն ցուցցի, և մի լինիցի արհամարհութիւն։ Այլ զայն ևս պարտ է ցուցանել՝ թէ զայդ դառնութիւն կշտամբութեան 'ի պատճառս կշտամբելոյն յանձին կալայք։ Գործ ուղղութեան է՝ և 'ի կագս կռուոյ անգամ որ ընդ յետին թշնամիս լինին, թէպէտ և զանվայելսն մեզ լուիցուք, ծանրութիւն պահել, և զսրտմտութիւն մերժել յանձնէ։ Զի որ ինչ ամբոխմամբ իւիք լինի, այն ոչ կարէ կալ 'ի հաստատութեան, և ոչ յիրաւունս 'ի մերձ կացելոցն գրի։ Տարադէպ է և զանձնէ քարոզ լինել, մանաւանդ ստութ̃բ, և հանդերձ ծաղու լսելեաց, նմանօղ լեալ Սնապարծ Զօրականին[1]։

ԼԹ. Այս քանզի զամենայն ինչ հետազօտեմք, կամիմք իսկ ստուգապէս, ասելի է և ևս թէ որպէս արժան իցէ լինել տան առն պատուականի և իշխանի, որ կանգնի 'ի բնակութիւն. առ որ պարտ է յարմարել զստորագրութիւն շինութեանն, բայց լեալ մտադիր պատուոյ և դիւրութեան։ Գնէոսի Ոկտաւիոսի, որ եղև առաջին հիւպատոս յազգատոհմէ անտի, որպէս լսեմք, շինեալն նորա 'ի Պաղատինն[2] տուն հոյակապ և մեծաշուք, եղև նմա 'ի պատիւ. զոր տեսեալ ամբոխին՝ համարէին 'ի դէպ՝ զի տէր նորա, թէպէտև նոր այր, 'ի հիւպատոսութիւն 'ի վեր ելցէ։ Զոր քակեալ Սկաւրոսի՝ մեծացոյց յաւելուածովք զիւրն ապարանս։ Բայց նա եղև առաջին՝ որ զհիւպատոսութիւնն 'ի տուն իւր ած։ Իսկ սա որդի առն մեծի ևականաւորի՝ 'ի տուն անդր ընդարձակեալ ոչ միայն արհամարհութիւն եբեր, այլ վատանուանութիւն և թշուառութիւն միանգամայն։

Արժանապատուութեանն պարտ է առնել յաւելուածս զարդուց և 'ի տանէն, այլ ոչ եթէ միայն 'ի տա-

1 Անուանէ զԹրասոնն Տերենտիոսի 'ի Ներքինին, և զՊիրգոպոլինիկէ Պղաւտեայ։

2 Անուանեալ Լեառն Պաղատին 'ի Հռոմ։

նէն ակն ունել զամենայն։ Զի ոչ եթէ յանուն տան տէրն, այլ յանուն տեառն տունն է բարեհամբաւելի։ Նա զոր օրինակ յայլ իրս ոչ զանձին եւեթ, այլ և զայլոցն պարտ է հոգալ, նոյնպէս և 'ի տան պայծառ առն որ ասպնջական ունի լինել բազմութեան հիւրից, և ընդունարան բազմութեան յամենայն վիճակէ մարդկան, արժան է հոգ տանել ընդարձակութեան։ Նա թէ ոչ՝ տուն ընդարձակ 'ի նախատինս տեառն իւրոյ լինի յոլովակի, եթէ միայնութիւն է 'ի նմա. մանաւանդ եթէ երբեմն ընդ օտար տերամբ իցէ յաճախեալ։ Նա զի անարգանք են լսել յանցաւորաց.

Ո՛վ թէ, որպիսի՜, վաղեմի դու տուն
Իշխիս 'ի տեառնէ ընդդիմանակ նախնեայն.

զոր առ մեօք զյոլովից տանց 'ի դէպ է ասել։

Նա և ես զգուշանալ պարտ է, մանաւանդ եթէ դու քեզէն շինեսցես, զի մի ծախիւք և մեծագործութեամբ ըստ չափին ելանիցես. և յայսմ մասին ես բազում չարեաց օրինակք կան առաջի։ Նամն զի յոլովք փութով պնդութեան՝ առաւել յայդմ մասին նախանձաւոր լինին գործոց իշխանաց. զոր օրինակ Լ. Լուկուղոսի առն ծայրացելոյ ո՞ ոք եղև առաքինութեանն նախանձաւոր. բայց քանիք դաստակերտացն մեծագործութեանց։ Ապաքէն յայսոսիկ պարտ է չափ դնել և 'ի չափաւորութեան կալ. և զնոյն չափաւորութիւն յամենայն պէտս և 'ի սպաս կենաց պարտ է երևեցուցանել։ Այսոքիկ այսքան։

Ի ձեռն արկանել 'ի գործ՝ յամենայնի պարտ է հրակել յերիս. նախ զի յօժարութիւն բաղձանաց հպատակեսցի բանին. քան զոր չիք ինչ յանկաւորագոյն 'ի պահպանութիւն պատշաճից. երկրորդ՝ զի յուշ ածցուք որչափ ինչ իցէ այն զոր կամիմք կատարել. զի մի աւելի կամ պակաս փոյթ և խնամ յանձին կալցուք քան զպէտսն պահանջեալ. երրորդն է զգուշանալ՝ զի կարգեալքն 'ի շուք և 'ի պերճութիւն մի եղիցին ըստ չափ։ Իսկ չափն ընտիր է կալ 'ի վայելչականսն, զորմէ կանխեցաք ասացաք, և ոչ հեռագոյնս օտարանալ։ Բայց զերագոյնն երեցս այսոցիկ է հպատակել բանի զբաղձանս։

Խ. Ժամ է այսուհետև ասել զկարգաց իրացն, և

զդիպողութենէ ժամանակաց ։ Ի սմին գիտութեան բո-
վանդակի անուանեալն 'ի Յունաց բարեկարգութիւն .
ոչ զոր մեք չափաւորութիւն թարգմանեմք , յորում
չափ 'ի մէջ բերի [1] . այլ այն է բարեկարգութիւն [2] յո-
րում տեսանի պահպանութիւն կարգի ։ Նոյն թէպէտ և
մեք համեստութիւն յորջորջիցեմք զնոյն , զայս օրինակ
սահմանեն զայն Ստոյիկեանք . Բարեկարգութիւնն է
գիտութիւն առնելեաց կամ ասելեաց 'ի պատշաճ տե-
ղի սեպհականս ։ Նա այսպէս նոյն երևի ունել զօրութի
կարգին և պատշաճողութիւն տեղւոյ ։ Քանզի և ըզ-
կարգն այսպէս սահմանեն . Յարմարումն իրաց ըստ յան-
կաւոր և պատշաճաւոր տեղեաց ։ Նա զտեղին գործո-
ղութեան՝ դիպողութիւն ժամանակի ասեն լինել ։ Իսկ
ժամանակն առնելոյ՝ յունարէն ասի Դէպ ժամանակ .
և լատիներէն՝ Պատեհ [3] ։ Նա ըստ այսմ ( բարեկարգու-
թիւն ) համեստութիւնն , 'ի մէնջ այսպէս թարգմա-
նեալ , ըստ ասացելոցս՝ լինի Գիտութիւն դիպողութե
ժամանակաց պատշաճելոց 'ի գործել ։ Մարթի նոյն լի-
նել խոհեմութեանն սահման , զորմէ 'ի սկզբան անդ
ճառեցաք . այլ յայսմ վայրի խնդիր մեր է յաղագս չա-
փաւորութեան և բարեխառնութեան և զհանգու-
նատիպ առաքինութեանց ։ Նոյն պատշաճականքն խո-
հեմութեան առանձին՝ յիւրում տեղւոջ ցուցան . այլ
զանկաւորացն առաքինութեց , զորոց առաջիկայ բանս
է , որ և հայլին 'ի պարկեշտութիւն , և 'ի հաճութիւն
այնոցիկ ընդ որս քաղաքավարիմք , ասասցուք 'ի մնայ ։

Նոյն կարգ այնպիսի պարտ է ունել 'ի գործս , զի որ-
պէս 'ի ճառ իմն հանդերձեալ , նոյնպէս և 'ի վարս՝ ա-
մենայն ինչ իրք իցեն պատկանեալք և յարմարեալք
ընդ իրերաց ։ Որպէս և անպատեհ է և յոյժ անարգի՝
'ի կարևոր ինչ դէպս 'ի վերայ բերել զասացուածս ինչ
խրախականս , կամ զբան ինչ մեղկ ։ Պերիկղէս ընդ
Սոփոկղի քերթողի իւրումն գործակցի 'ի դատաւորանի ,
'ի պարապել երկոցունց 'ի հասարակաց ծառայութե , դէպ
եղեալ անցանել ընդ այն գեղեցիկ մանկան , և յասել

1 Modus է Եղանակ կամ չափ . և Modestia Չափաւորութի , կամ համեստութիւն ։

2 Յունականն Εὐταξία, Բարեկարգութիւն , 'ի ձայնէցս 'Ευ, բարի . τάττεσθαι, կարգել ։

3 Յն , Εὐκαιρία . Լտ , Occásio.

Սոփոկղի, քանի՛ գեղադէշ է մանուկդ Պերիկղէս, նա քաջիկ եւս պատասխանի․ Սոփոկղէ, վայել է ասն դատաւորի ոչ միայն զձեռս անարատ պահել, այլ և զաչս։ Բայց թէ Սոփոկղի զայն բան ասացեալ էր 'ի զովութի ըմբշամարտկաց¹, ազատ լինէր յարդարացի կշտամբանաց։ Այսքան է զօրութի տեղւոյ և ժամանակի։ Զոր օրինակ եթէ ոք որ ունիցի դատ վարել յատենի, զճանապարհայն կամ 'ի ճեմել իւրում՝ անձամբ յանձին որոճեսցէ զխորհուրդս, կամ զայլ ինչ խորհեսցի ուշի ուշով, չէ ստգտանաց․ սակայն եթէ 'ի սեղանի առնիցէ զայդ, տմարդի ոք ցուցեալ լինի՝ անգիտութեամբն դէպ ժամանակի։

Այլ որ ինչ միանգամ կարի օտարանան 'ի մարդկութենէ, զոր օրինակ 'ի հրապարակի երգել, կամ այլ ինչ մեծ ինչ անպատեհ գործ, դիւրաւ յայտնի լինին, և ոչ շատ կարօտին խրատուց և կանոնաց։ Այլ որ փոքր թուին յանցանք, և ոչ 'ի բազմաց մարթին խելամտել, 'ի նոցունց պարտ է խորշել մեծ եւս խնամով։ Զոր օրինակ 'ի սրինգս կամ 'ի փողս՝ թէպէտև դոյզն լինիցի անհամաձայնութի, բայց իմաստուն հմուտքն արուեստին․ նոյնպէս պարտ է զգոյշ լինել 'ի վարս, զի մի գուցէ անհամաձայնութիւն ցուցցէ ոք յանձին․ և այնչափ առաւել յոյժ, որչափ մեծ և լաւ է ներդաշնակութիւն գործոց քան զձայնից։

ԽԱ․ Եւ արդ զոր օրինակ 'ի լարս քնարերգութեան լսելիքն զգան և զկարի դուզնաքեայս, ըստ նմին և մեք եթէ սրագոյնք և արթունք կամիմք լինել, և ուշադիրք պակասութեանց, բազում անգամ զմեծամեծս 'ի փոքունց ունիմք իմաստասիրել։ Յաչաց հայեցուածոյ, 'ի պարզելոյ յօնից կամ 'ի կծկմանէ, 'ի թախծութենէ, 'ի զուարթութենէ, 'ի ծիծաղմանէ, 'ի խօսելոյ, 'ի լռելոյ, 'ի սաստկութենէ և 'ի թուլութենէ բարբառոյ, և 'ի սոցին նմանեաց հեշտեաւ ունիմք դատել, որ 'ի սոցանէ օրինօք լեալ իցէ, և զի՞նչ ինչ խոտորեալ 'ի պատշաճից և 'ի բնութենէ։ Յայսոսիկ չէ ինչ դժուարին՝ զորպէսն և զզիարդն նոցունց յայլոց անտի դատաստան առնել․ զի թէ ինչ մի անվայել երևեսցի յայլս,

¹ Նստեալ հանդիսատես գուպարուց մերկամրցանակ ըմբշաց։

խորշեսցուք մեք մեղէն ։ Վասն զի չգիտեմ որպէս յայլս տեսանել նշմարեմք քան յանձինս՝ զսխալանս ։ Ուստի կարի յոյժ դիւրաւ ուղղեն աշակերտք, զորոց զթերութիւնս նմանողօրէն յանձինս բերցեն վարդապետք խրատելոյ աղագաւ ։

Նա չէ տարադէպ՝ առ ընտրութիւն իրաց, որք տարակուսանս 'ի մէջ բերեն, 'ի ձեռն առնուլ զգիտնաւոր կամ զփորձ մարդիկ, և ստուգել զինչ հաճոյ թուիցի նոցա յազգս ազգս պատշաճից ։ Վասն զի բազմացոյնք բնաւորեալ են յայն հակամիտել, յոր 'ի բնութէ անտի առաջնորդին ։ Նա յայսպիսիս արժան է տեսանել ոչ միայն թէ զինչ ասէ այր իւրաքանչիւր, այլ և յինչ միտս իցէ, և յինչ պատճառս իցէ յայն միտս ։ Վասն զի զոր օրինակ նկարիչք և արձանագործք, և բանաստեղծք զկտովին, կամին՝ զի ամբոխն լիցի զննիչ գործոյ իւրեանց իւրաքանչիւր · որպէս զի եթէ ինչ մի եպերեսցի 'ի յոլովագունից, այն ինչ ուղղագրեսցի · որ և յիրերաց նաև յայլոց հարցանեն, զինչ պակասութի կայցէ յայս գործ · ըստ նմին օրինակի անկ է և մեզ բազում ինչ առնել կամ չառնել, փոխել կամ ուղղել դատաստանաւ այլոց ։

Բայց որ ինչ միանգամ գործին սովորութեամբ և քաղաքական օրինօք, զայնցանէ չէ օրէն կանոնս աւանդել · զի ինքնին իսկ կանոնադրեալ են այնոքիւք · և չէ պարտ ումեք բերել յայս վրիպակ կարծիս եթէ Սոկրատէս կամ Արիստիպպոս գործեցին երբէք ինչ մի և կամ խօսեցան հակառակ քաղաքական վարուց և սովորութե, նոյն և ինքեան օրինաւոր իցէ ։ Նոքա յայնմ ազատութեան վայելեցին առ մեծամեծ և անչափ լաւութեանցն ։ Իսկ զ՟ նախնեացն կարծիս 'ի սպառ հերքել արժան է · վասն զի թշնամի է պարկեշտութեան, առանց որոյ ոչ կարէ լինել ուղիղ ինչ և համեստ ։

Իսկ զայնոսիկ որոց վարք արտափայլեն 'ի համեստ և 'ի մեծամեծ իրս և բարեսէրք են առ հասարակաց տէրութիւն, և բարեացապարտք, կամ բարեաց արժանաւորք, պարտիմք մեծարել և պաշտել հանգոյն պերճացելոցն իւիք պատուով կամ իշխանութեամբ · որպէս և յարգ մեծ ընծայել ալեաց, տեղի տալ դատաւորաց, ընտրութիւն առնել քաղաքակցաց և օտարականաց, և

յօտարականս իսկ ըստ ինքնեկս՝ և ըստ եկս հասարակաց հաճութեամբ։ Այլ պարզաբար, զի մի զմիոյ միոյ ճառեցից, պարտ է մեզ զհամօրէն ազգի մարդկան զընդհանուր զաշնաւորութիւն և զմիաբանութիւն պաշտել, պաշտպանել և պահպանել։

ԽԲ. Իսկ յաղագս արուեստից և վաճառաշահուց, ո՞ր այն ազատականք իցեն, և ո՞ր այն սինլքոտք, ասասցուք արդ։ Նախ արհամարհ են այն վաճառաշահք, որք ատելութի ծնանին առ մարդիկ. որպէս մաքսաւորացն և վաշխառուաց։ Այլ ծառայական և անարգ շահք են վարձկանաց, և ամենեցուն նոցա, որոց գործքն և ոչ ճարտարութիւնք գնոց գնին։ Վասն զի այն իսկ վարձքն է նոցա համաձայնին նշանակ ծառայութեան։ Յանարգս պարտ է համարել և զնոսա, որք գնեն 'ի վաճառականաց՝ առ 'ի վաճառել անդրէն այլոց փութապէս. զի ոչ ինչ օգտին՝ եթէ ոչ ստեսցեն զլխովին, և չիք ինչ վատթարագոյն քան զխարդախութիւն։ Այլ գործաւորք առ հասարակ են յանարգ արհեստէ. զի ոչ ինչ հանճարաւոր մարթի գտանել 'ի գործարանի։ Չեն ընաւին գովելի և այն արհեստք որք փափկութեանց ծառայեն, կիտորսակք, ապանդատարք, խոհարարք, պարարտաբոյծք, ձկնորսք, ըստ Տերենտիոսի ասելոյն։ Դու յաւել, եթէ կամիս իցեն, իւղեփեցք, կաքաւիչք, և ամենայն խաղ վիզաց կամ քուեայց։

Բայց այնոքիկ արհեստք՝ յորս են կամ առաւել հանճար կամ ոչ սակաւ պիտանութիւն, որպիսիք են բժշկականն, ճարտարապետականն, և ուսումն իրաց համեստից, այսոքիկ գան 'ի ճահ այնոցիկ՝ որոց վիճակին են վայելչական։ Իսկ վաճառականութիւնն, եթէ դուզնաքեայ ինչ է, ըստ անարգս է գրելի. ապա եթէ մեծ և առատ, բազում ինչ բերելով յամենայն կողմանց, և բազմաց բաշխող անխարդախ, չէ 'ի սպառ եպերելի։ Այլ ևս եթէ ոք յագեալ 'ի շահուց, մանաւանդ թէ շատացեալ, որպէս ստէպ 'ի խորոց 'ի նաւահանգիստ, նոյնպէս և 'ի նաւահանգստէ անտի յագարակս իւր և 'ի կալուածս զանձն ժողովեսցէ, այնպիսին թուի կարի քաջ իրաւամբք արժանի գովութեան։ Ի մէջ ամենայն շահաբերաց չիք լաւագոյն քան զերկրագործութիւն, և ոչ պտղաբեր, և ոչ քաղցր. և ոչ իսկ առա-

ւել վայելչական մարդոյ, մանաւանդ առն ազատի։ Նա՛և քանզի զայսմանէ լուեալ ասացաք 'ի ձառն Կատոնի մեծի, անտի առնուցուս որ ինչ հայի յառաջարկութիւնդ։

ԽԳ. Արդ շատ իսկ բացայայտեալ տեսանի, եթէ զխորհրդ յառաջագայից պատշաձականքն 'ի մասանց. անտի համեստութեան։ Իսկ յաղագս բուն իսկ համեստից մարթի պատահել բազում անգամ վէճ՝ եթէ յերկուց համեստից ո՞ր այն իցէ համեստագոյն. զորոյ զանց արար Պանետիոս¹։ Զի որովհետև ամենայն համեստութիւն ողջոյն 'ի չորս ամփոփեալ է մասունս. որոց առաջինն է ձանաչողութիւն, երկրորդն հաղորդակցութիւն, երրորդն մեծանձնութիւն և չորրորդն չափաւորութիւն, հարկ է սոցա 'ի բաղդատութիւն գալ ընդ միմեանս յընտրութեան անդ պատշաձից 'ի գործս։

Նա արդ ես այնպէս համարիմ՝ թէ յանկաւորագոյն են բնութեան գործքն պատշաձից՝ յառաջ եկեալքն 'ի հաղորդակցութենէ, քան որք 'ի ձանաչմանէ. և զայս մարթ է հաստատել ձեռնարկութեամբս. զի թէև դիպեսցի իմաստնոյ կեանք այնպիսի, մինչ զի լցեալ առատութեամբ ամենայն պիտոյից, 'ի խոր հանդարտութեան նկատող լեալ անձամբ յանձին խոկայցէ զկարևորագոյն գիտութեան, սակայն եթէ այնչափ իցէ առանձնութի, մինչև չկարել տեսանել մարդ զոք, զրկի և 'ի կենաց։ Նա է իսկ իշխան ամենայն առաքինութեանց իմաստութիւն, անուանեալն 'ի Յունաց σοφία, զանազանեալ 'ի խոհեմութենէ զոր φρόνησις, կոչեն Յոյնք. որ է գիտութիւն բաղձալեաց և խորշելեաց։ Իսկ իմաստութիւնդ այդ զոր իշխան կոչեցի, է գիտութիւն աստուածեղինաց և մարդկեղինաց, յորում փակի աստուածոց և մարդկան հաղորդակցութիւն և ընկերութիւն ընդ իրերաց։ Արդ եթէ մեծ է այս քան զամենայն, որպէս և է ըստուգապէս, հարկ է ապա լինել մեծ քան զամենայն՝ պատշաձին այնմիկ որ 'ի հաղորդակցութենէ ունի զծագումն։ Վասն զի ձանաչումն և նկատումն բնութեան թերակատար ունի լինել իւիք իրօք, և սկսեալ ևեթ, եթէ ոչ 'ի վերայ գայցէ առնելութիւն ինչ իրաց. իսկ

¹ Ստոյիկեան. զի ըստ սոցին մեծայն, որպէս և չարիք ամենայն։ գոլոյն հաւասար գնին բարիք ա-

առաւելութիւնդ այդ առաւել 'ի վեր երևի 'ի հոգալ ըզ-մարդկան պէտս ։

Ապա ուրեմն պատկանի առ ընկերութի ազգի մարդ-կան, սմին իրի պարտ է վերադաս առնել զայս քան ըզ-Ճանաչումն. զոր և իւրաքանչիւր ոք յառաքինեաց ար-դեամբք ցուցանէ և հաւատարմացուցանէ ։ Վասն զի ո՞ ոք է այնչափ յառեալ 'ի տեսութիւն և 'ի ծանօթու-թիւն բնութեան իրաց, զի 'ի զննել և 'ի նկատել նո-րա զիրս ամենայնիւ արժանաւորս գիտութեան, եթէ յանկարծակի հասցէ նմա լուր վշտաց վտանգի հայրե-նեաց՝ որում կարող իցէ սատար լինել և ձեռնտու, ոչ թողուցու լքանիցէ զայն ամենայն, թէ և եղեալ իցէ 'ի մտի կարող լինել զաստեղս թուել, կամ զչափ առ-նուլ մեծութեան աշխարհի ։ Օնոյն առնիցէ և 'ի կա-րիս կամ 'ի վտանգս ծնողին և բարեկամին ։

Յորոց լինի իմաստասիրել, թէ քան զուսմունս և ըզ-պաշտօնս գիտութեան նախապատուել արժան է ըզ-պաշտօնս արդարութեան՝ կարգեալս յօգուտ մարդկան. քան զոր ոչ ինչ այլ կարևոր պարտի լինել մարդոյ ։

ԽԴ. Սակայն և նոքա, որոց ուսումն և ամենայն կեանք ծախեցաւ 'ի Ճանաչումն իրաց, ոչ օտարացան 'ի յաճա-խելոյ զօգուտս և զպէտս մարդկան ։ Վասն զի վարժե-ցին ուսմամբ զբազումս, զի լինիցին լաւագոյն քաղաքա-ցիք, և օգտակարագոյնք հասարակաց. որպէս Լիսիս պիւթագորեան զԹեբայեցին Եպամինոնդաս, և Պղա-տոն զսիրակուսացին Դիոն, և բազումք այլք զբազումս, և մեք իսկ զկնովին՝ որ զինչ շահ օգտի տուաք հասա-րակաց տէրութեան, եթէ տուաք ինչ, 'ի գիտնոց և 'ի գիտութենէ հրահանգեալք և կահաւորեալք մատեաք 'ի նոյն ։

Եւ ոչ միայն առ կենդանութեամբ և յառաջնկայու-թեան մարդէն և ուսուցանեն զուսումնասէրս, այլ և զնոյն 'ի գլուխ տանեն յետ մահու արձանագրութեամբ տառից ։ Եւ ոչ թողուն 'ի նոցանէ բան ինչ պատկա-նեալ կամ առ օրէնս, կամ առ վարս, կամ առ հրա-հանգս վարդապետութեան հասարակաց. որպէս այն թէ զիւրեանցն հանդարտութիւն նուիրեալ իցեն 'ի մեր պէտս ։ Եւ այսպէս ինքեանք զանձինս տուեալ յու-սումնասիրութիւն և յիմաստասիրութիւն՝ բոլորովին 'ի

մարդկան. օգուտ կարգեցին զհանճար և զաշխատութիւն իւրեանց ։ Սորին աղագաւ լաւ ևս է սակաւ լինել 'ի խօսս բանից, միայն թէ իմաստութեամբ, քան թէ առանց բանի կարի իսկ նրբատես լինել մտօք ։ Վասն զի մտածութիւնն ինքն յինքեան առնու՝ շրջան. `իսկ պերճախօսութիւնն յինքեան պարարտէ զնոսա՝ ընդ որս զօդեալ են հաղորդակցութեամբ ։

Նա զոր օրինակ մեղուացդ պարք ոչ 'ի կազմել ըզխորիսխ մեղու համահաւաքին, այլ քանզի հաւաքական են բնութեամբ՝ խորիսխ կազմեն. սոյնպէս և առաւել ևս մարդիկ բնութեամբ համահաւաքեալք՝ փոյթ 'ի մտի դնեն խորհելոյ և գործելոյ ։ Նոյն ուրեմն առաքինութիւնն այն, որ հանդերձի 'ի հօգալոյ զմարդկան պէտս, այս ինքն յընկերութենէ ազգի մարդկան, եթէ ոչ միասցի ընդ ճանաչման իրաց, երևի ճանաչումն ցուրտ և թափառական ։ Նոյնպէս և քաջասրտութիւնն, եթէ բարձցես զմարդկային հաղորդութիւն և զընկերութի, գազանութիւն իմն է և տմարդութիւն ։ Նա այսպէս միաբանութիւն և հաղորդակցութիւն մարդկան յաղթական գտանի փութոյ ճանաչման ։

Նա չէ ճշմարիտ ասացեալն յոմանց յաղագս կարեաց կենաց, թէ ոչ կարող էաք զկարիս բնութեան 'ի ձեռս բերել և զլխաւորել առանց այլոց, և վասն այն եղև այդ հաղորդութիւն և ընկերութի ընդ մարդիկ ։ Նոյնպէս զի ամենայն ինչ որ միանգամ կարևորք իցեն 'ի թոշակ կենաց, եթէ աստուածային գաւազանաւ [1] ըստ առածին՝ մեզ մատակարարէր, յայնժամ ամենայն մտացի թողեալ զամենայն զգործս՝ անձնատուր լինէր բա[illegible] 'ի ճանաչումն և 'ի գիտութիւն ։ Բայց չէ այդ այդպէս. Նա և այնպէս յառանձնութենէ փախչէր, և ընկերակից ուսման խնդրէր՝ եթէ ուսուցանել և եթէ ուսանել կամէր. առնել՝ միանգամայն և լսել ։ Նոյն ուրեմն զամենայն գործ պատշաճից՝ կարգեալ 'ի պէտս կցորդութեան և ընկերութեան մարդկան, արժան է նախապատիւ առնել քան զայն՝ որ յածի զճանաչմամբ և զգիտութեամբ ։

1 Այս է ըստ մերում ռամկական առածին՝ Եթէ իջանէր յերկնից պարկաւ ։ Այսինքն՝ ինքնին մեզ մատակարարէր առանց մերոյս վաստակոց ։

ԽԵ. Մերևս զայն արժան իցէ քննել՝ թէ արդեօք հաղորդութիւնս այս քաղաքական ընկերութեանս, իցէ՞ նախապատուելի միշտ և քան զչափաւորութիւն և զհամեստութիւն։ Մեզ ոչ հաճոյ թուի բանդ. վասն զի են ինչ ինչ այնպէս պժգալի, և այլք այնպէս եղեռնաւոր, մինչ զի պարտ է հրաժարել յայնմանէ իմաստնոյն՝ թէպէտ և 'ի պէտս պահպանութեան իցէ հայրենեաց։ Շատ ինչ յայսպիսեաց աստի ժողովեաց Պոսիդոնիոս. այլ՝ են 'ի նոսին իրք ինչ այնպէս դժպատեհք և զազիրք, զի և ասել անգամ անարժան երևին։ Արդ զայսպիսիս չունի յանձն առնուլ վասն հասարակաց օգտի. և ոչ հասարակութիւնն կամի զի ոք յանձին կալցի վասն իւր։ Այլ ևս դիւրագոյն է լուծումն այդորիկ երկմըտութեան. քանզի ոչ պատահէ երբէք լինել պէտք առնելոյ ինչ յայնպիսեաց անտի առն իմաստնոյ յօգուտ հասարակաց։

Նա արդ արդարացեալ ուրեմն է՝ թէ յամենայն գործըս պատշաճից գերապանծ է քան զայլսն այն որ կարևորն իցէ ընկերութեան մարդկան։ Քանզի և ճանաչումն և խոհականութեան զհետ գայ գործ խորհըրդածեալ. ուստի մեծ ևս է խորհրդով գործելն՝ քան խոհեմութեամբ խորհել։ Նա այսոքիկ այսքան. զի յայտ յանդիման ցուցեալ եղև խնդիրս՝ թէ չէ դժուարին 'ի հետազօտել անդ զպատշաճս՝ դիտել, թէ զի՞նչ քան զի՞նչ ինչ իցէ նախապատիւ։ Նա յընկերութեան իսկ անդ աստիճանք են գործոց պատշաճից, յորոց մարթ է 'ի միտ առնուլ՝ թէ զի՞նչ քան զի՞նչ իցէ յարգի. զոր օրինակ առաջին պաշտօնն անկ է աստուածականին. երկրորդն հայրենեաց. երրորդն ծնողաց. սոյնպէս և այլքն հետ զհետէ ըստ կարգի։

Ի համառօտ բանիցս ասացելոց 'ի դէպ է իմաստասիրել՝ թէ մարդիկ ոչ միայն յերկբայս լինին, արդեօք այս ինչ համեստ իցէ եթէ տարադէպ, այլ և 'ի յանդիման լինել երկուց համեստից՝ թէ ո՞ր այն համեստագոյն ևս իցէ. զորոց որպէս ասացի, զանց արար Պանետիոս։ Այլ մեք յառաջիկայսն ընթասցուք։

# ՄԱՐԿՈՍԻ ՏՈՒԼԼԻՈՍԻ ԿԻԿԵՐՈՆԻ

# ՅԱՂԱԳՍ ՊԱՇՏՕՆԱՑ

## ԱՌ ՄԱՐԿՈՍ ՈՐԴԻ ԻՒՐ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ.

Ա. ՕԱՑՆ, թէ որով օրինակաւ, Մարկոս որդեակ, գործք պաշտաճից ծագեն 'ի համեստութենէ և յամենայն ազգէ առաքինութեան, որպէս կարծեմ՝ փոքր 'ի շատէ ցուցաք յառաջին գիրս։ Մնայ ինձ անցանել ընդ ազգս ազգս պաշտաճից՝ որ հային 'ի կենցաղս և 'ի վայելս բարեաց զոր 'ի կիր առնուն մարդիկ, [illegible] են ինչք և իշխանութիւն։ Յորում ըստ առաջելոցս լինի խնդրել, զինչ իցէ օգտակար, և զինչ անօգուտ. և յօգտակարս անդ զինչ օգտակարագոյն, կամ զինչ ամենաօգտակար. զորոց բուռն հարից ասել, յետ ասելոյ կանխաւ սուղ ինչ զկանոնադրութենէս և զդատաստանէ մտացս։

Սասն զի թէպէտ և գրեանք մեր զբազում զարթուցին ոչ միայն յընթերցասիրութի, այլ և 'ի սէր գրութեան, այլ տակաւին երկնչիմ մի՛ արդեօք ոմանց ոմանց 'ի լաւ արանց դժկամակ թուեսցի փիլիսոփայութեանն անուն, և զարմանայցեն ընդ ծախելն իմ զայնչափ փոյթ և ժամանակ։ Սրդ ցորչափ առաջնորդէր հասարակաց տէրութիւնն յարանց որոց էր հաւատացեալ իւր-

նամքն, ես յայնժամ զիմ զամենայն ջան և զմտածու-
թիւն 'ի նոյն ծախէի. այլ յորժամ ամենայն ինչ ան-
կաւ ընդ ձեռամբ տիրապետութեան միոյն՝ և ոչ մնաց
տեղի խորհրդակցութեան կամ իշխանութեան, կո-
րուսեալ իմ նա և զգործակիցս 'ի պաշտպանութե̃ հա-
սարակապետութեան՝ զընտիր որեարն, ոչ ևս ետու
զանձն իմ 'ի վիշտս վտանգի, յորս թակարդապատեալ
լինէի՝ եթէ ոչ զդէմ ունէի նոցա, և ոչ դարձեալ անձ-
նատուր եղէ 'ի մեղկութիւնս՝ առն զիտնաւորի անվայ-
ելս:

Այլ թէ կայր մնայր տէրութիւն հասարակաց 'ի վի-
ճակին յորում 'ի սկզբանն էր, և չանկանէր 'ի ձեռս մար-
դոց՝ որք ոչ այնչափ իղձ լինէին 'ի փոփոխել զիրս՝ որ-
չափ հիմն 'ի վեր շրջել: Քանզի նախ, որպէս սովոր
էաք առնել 'ի ժամանակի հասարակաց տէրութեան,
առաւել 'ի գործել քան 'ի գրել խնամ տարեալ. եր-
կրորդ 'ի գիր իսկ անցուցանէաք՝ ոչ զպայժմունս, այլ զանցս
գործոց մերոց. զոր օրինակ բազմօք արարաք: Բայց
յորժամ հասարակաց տէրութիւնն 'ի չիք դարձաւ զըլ-
խովին՝ յոր ծախէի զամենայն զիմ փոյթ և զխորհուրդ
և զգործ, լռեցին այնուհետև գրուածքն այն՝ եթէ ա-
տենականք և եթէ ծերակուտականք: Այլ զի անմարթ
էր անգործ լինել հոգւոյս 'ի սպառ, որովհետև անդստին
'ի մանկութենէ յուսմունս յայսոսիկ դեգերեալ էր իմ,
համեստութեամբ փարատել զտաղտկութիւնս հնա-
րաւոր գոլ վարկայ, եթէ 'ի փիլիսոփայութիւն անդր
ասեմ զանձն իմ դարձուցից: Յոր թէպէտ և յերիտա-
սարդութեան բազում ժամանակս ծախեցի՝ առ ուսա-
նելոյ, բայց յորժամ սկսայ արքանեկել շքոյ փառաց,
և բոլորովին ետու զանձն իմ 'ի գործ հասարակաց տէ-
րութեան, այնչափ մնայր տեղի փիլիսոփայութեան, որ-
չափ ինչ յաւելոյր 'ի ժամանակէն բարեկամաց և հա-
սարակութեան: Այլ զայն ևս բովանդակ ծախէի ըն-
թեռնուլ, և ոչ գոյր պարապ գրելոյ:

Բ. Այլ արդ 'ի մեծամեծ չարեացս միջի գէթ զայս
ինչ բարի, որպէս կարծեմ, 'ի ձեռս բերաք, զի 'ի գիր
դրոշմեսցուք զայն ամենայն՝ որ ոչ ըստ բաւականին ծա-
նօթ էին մերայոց, և ամենևին իսկ արժանիք էին գի-
տութեան: Վասն զի զինչ է, ո՛ն և ո՛ն ասեմ, ցանկալի

առաւել քան զիմաստութիւն․ զինչ այլ գերապանծ, զինչ այլ լաւագոյն մարդոյ, և զինչ առաւել վայելչական մարդկութեանս։ Այլ ահա այսմ ցանկացողք՝ փիլիսոփայք¹ անուանին․ զի և ոչ այլ ինչ է փիլիսոփայութիւն, եթէ թարգմանել կամիցիս, բայց իմաստասիրութիւն։ Իսկ իմաստութիւնն է՝ ըստ որում 'ի հնոց անտի սահմանեցաւ յիմաստասիրաց, գիտութիւն աստուածային և մարդկային իրաց, և պատճառացն՝ յորոց այսոքիկ յառաջ գան։ Այլ եթէ ոք զսորին ուսումն անգոսնէ, չգիտեմ զինչ այլ գովելի գտանիցէ։

Զի եթէ զզուարճութիւն ասիցես ոգւոյ և զհանգիստ 'ի հոգոց, ո՞ր գտանիցի համեմատ ուսումնասիրութեան այնոցիկ՝ որ միշտ 'ի խնդիր են տենչանօք իրաց որ 'ի դէպ են և առաջնորդեն առ բարիոք և երանելի կեանս․ և եթէ խնդրի սկիզբն անսայլայլակ վարուց և առաքինութեան, կամ այս արհեստ է, և կամ չիք այլ ընաւին՝ որով ժամանն լիցուք այդոցիկ։ Զիքն ասել ընաւին արհեստ մեծամեծացն, ուր և ոչ մին 'ի կարի փոքունց է առանց արհեստի, այնոցիկ է որ առանց խորհրդոյ բարբառին, և 'ի մեծամեծս սխալին։ Ապա եթէ կայցէ ուսումն ինչ առաքինութեան, ո՞ր գտցես, եթէ յայս ազգ ուսմանէ օտարասցիս։ Այլ զայսցանէ լաւ ևս ճառք 'ի մէջ անկանին 'ի յորդորանս անդ իմաստասիրութեան, զոր յայլում մատենի արարաք․ բայց 'ի ժամուս այնչափ ինչ մեզ յայտնաբանել պէտք եղեն, թէ հեմ 'ի վերջանալ 'ի պաշտամանց տէրութեան հասարակաց՝ 'ի սոյն ուսումնասիրութիւն առնել եղաք միջամուխ։

Այն որ 'ի դէմս մեզ ածեն, և այն՝ գիտնաւորք և ուշիմք, խնդրելով իմն՝ եթէ իմաստութեամբ կարծիցեմք գործել մեք, ոչք յետ ասելոյ՝ թէ անիմանալի է ամենայն ինչ², վիճել սկսանիմք զիրաց իրաց, որպէս և 'ի ժամանակի աստ յայսմիկ բերիմք կանոնս աւանդել ըղպատշաճից։ Որոց կամիմ, զի գիտելի լիցի մերս մտածութիւն․ զի ոչ եմք յայնցանէ որոց միտք թափառի մոլորական, և չգտանէ ինչ յոր հաստատեսցի։ Զի

1 Ի հայ բան՝ իմաստասէր։

2 Կիկերոն էր հետևող աղանդոյն Ակադեմականաց, ասել․ Ոչ ինչ է հաւաստի՝ այլ ամենայն ինչ հաւանական․ վասն որոյ և ասէին ոչ ինչ գիտել մարդոյ։

որպիսի՞ միտք լինէր այն, մանաւանդ թէ որպիսի կեանք, յառնելն անտես ոչ միայն զօրինօք հետազօտութեան, այլ և վարելոյ զկեանս։ Իսկ մեք՝ յասել այլոց զիրս իրս ստոյգ և զայլս անստոյգ, որոշեալք ՚ի նոցանէ ՚ի կարծիս՝ ասեմք. է ինչ հաւանելի, և այլ ինչ անհաւանելի։

Այս արդ զի՞նչ է որ զիս արգելուցու զհետ երթալ որոց հաւանելի ինձ երևին. և զսոցին հակառակն մերժել, և խորշելով ՚ի համարձակախօսութենէ՝ փախչել ՚ի յանդգնութենէ, որ օտար է յոյժ յիմաստութենէ։ Այս զամենայնէ վէճ խնդրոց յարուցանեն մերայինք. զի հաւանելիդ այդ չկարէր նշողել, եթէ ոչ յերկուց կողմանց յուզումն լինէր պատճառաց. այլ այսոքիկ մեկնեցան յակադեմեան զիրս մեր, որպէս կարծեմ, ըստ կարի լրջմտութեամբ։ Այլ քեզ Սիկերոնդ իմ, որ թէպէտ և ՚ի վաղեմի և յազնուական իմաստասիրութեան՝ դեգերիս առաջնորդութեամբ Կրատիպպասի, որ նմանեալն է այնոցիկ որ ծնօղք եղեն այդց գերապանծ իմաստից, սակայն և մերումս այսոցիկ՝ ձերումդ մերձաւորին, ոչ կամիմ անծանօթ լինել քեզ։ Արդ անցցուք ՚ի բուռն հարեալն մեր։

Գ. Արդ քանզի հինգ եղանակք առաջի եդան զիւրի պատշաճից, յորոց երկուքն առ վայելչութի և համեստութիւն բերին, երկուքն առ կենաց դիւրութիւնս, որ են ինչք և իշխանութիւնք և կարողութիւնք, և հինգերորդն առ դատաստան ընտրութեան, եթէ երբէք զոյս ատացիդ, հակառակիլ երևիցին իրերաց, ապաքէն կատարեցաւ մասն համեստութեան, որում ցանկամ [illegible] քեզ քաջ լինել խելամուտ։ Իսկ որ յայժմուս առաջի կայ մեզ ճառել, այն իսկ է որ օգտակարն կոչի կամ պիտանի։ Յորում մասին խոտորնակ սովորութիւնն շեղեցաւ ՚ի ճանապարհէ, և առ փոքր փոքր յայն վայր եհաս, մինչ զի զհամեստութիւնն զատուցեալ յօգտակարութենէ, եդ թէ կայցէ համեստ որ ոչ օգտակար իցէ, և օգտակար որ ոչ համեստ. մեծ ևս ժանտ քան զայս բերել մարդկան վարուց չէր կարելի։

Ծայրագոյն անշուշտ իշխանութեամբ, և այն՝ անաչառ և համեստ կարգօք, զանազանեն իմաստասէրք

1 Պերիպատետիկեան, այս ինքն ճեմական։

զերիս զայսոսիկ կախեալս զմիմեանց յիմաստոսն. վասն զի զոր միանգամ արդարն է՝ զայն և օգտակար գոլ վարկանին. և զհամեստն՝ նոյնգունակ արդար. յորմէ յայտ է թէ համեստն է և օգտակար։ Եւ զի վաստակեալքն աչօք բազում այն է զի ընդ չարարուեստ և ընդ խորամանկ անձինս պշուցեալք՝ զչարութիւնն իմաստութիւն համարին, զնոցա զմոլորութիւն պարտ է 'ի բաց փարատել, և համոզել զմիտս նոցա յայս՝ եթէ զամենայն զոր կամին կարող են 'ի ձեռս բերել համեստ խորհրդովք և արդար գործովք, և ոչ խաբէութեամբ և չարութեամբ։

Որք կարգեալքն 'ի պէտս կենաց մարդոյն կէս մի անշունչք են. զոր օրինակ ոսկի, արծաթ և բերք երկրի, և որ նման են սոցա. և կէս մի շնչաւորք կամ կենդանիք, որոց են սեպհական յօժարութիւնք և ըղձութիւնք իւրաց, և 'ի սոցանէ են որ անբանք են, և են որ բանականք։ Անբանք, ձի, արջառ և այլ անասունք, մեղուք՝ որոց վաստակօք լինին ինչ ինչ պիտանացու 'ի պէտս և 'ի կեանս մարդկան։ Իսկ բանաւորաց երկու ազգք գոյին. մի՝ աստուածոց, և միւս ևս՝ մարդկան։ Զաստուածս հաշտ առնէ բարեպաշտութիւն և սրբութիւն. յետ նոցա և ըստ նոցա մարդ մարդոյ մեծապէս օգտել կարող է։

Եւ վնասակարաց նոյն բաժանումն է. այլ քանզի համարին եթէ աստուածքն ոչ վնասիցեն, զնոսա զատուցեալ՝ կարծեն եթէ մարդ մարդոյ բազմօք կարէ վնասել կամ օգտել։ Վասն զի զորս անշունչս ասացաք բազում մասամբ ձեռագործք են մարդկան. զորս ոչն ունէաք՝ եթէ ձեռն և արհեստ ոչ սատարէին. և ոչ 'ի պէտս վարէաք զնոսին առանց մատակարարութեան մարդկան. վասն զի ոչ բժշկութիւն, ոչ նաւարկութիւն, ոչ երկրագործութիւն, և ոչ արմտեաց և այլ ևս պտղոց ստացումն և պահպանութիւն ունէր լինել երբէք առանց գործակցութեան մարդոյ։ Ապաքէն և արտաքս տանել զաւաւելեալսն մեր, և 'ի ներքս բերել՝ որոց կարօտիմքն, լինէր յայտոցիկ և ոչ մին, եթէ ոչ տային մարդիկ զանձինս յարբանեկութիւն սոցին իրաց։ Սովին պատճառաւ և ոչ քարինս լինէր հատանել յերկրէ կարևորս 'ի պէտս մեր, և ոչ երկաթ և պղինձ,

ոսկի և արծաթ 'ի ծոցոյ հողոյ 'ի վեր բերել առանց աշխատութեան և ձեռին մարդոյ։

Դ. Իսկ յարկք ընաւ' առ զդէմ ունել սաստկութե՟ ցրտոյ և մեղմել զնեղութի՟ տապոյ, ուստի՞ էր 'ի սկըզբան անդ հայթհայթել ազգի մարդկութեանս, կամ զկնի գտանել 'ի կարիս, յետ կործանելոյ նոցա կամ յօդոց բռնութենէ կամ յերկրի սասանութենէ և կամ յերեսաց հնութեան, եթէ միաբանական կեանք չէր ունեալ օգնականութիւն առ 'ի մարդկանէ խնդրել վասն այսոցիկ։

Ո՞ւր թողից զջրանցս, զգետոց ածանցս, զանդոց ոռոգմունս, զպատուարս ընդդէմ ալեաց, զձեռագործ նաւահանգիստս. զի ուստի՞ կարող էաք ունել զ[illegible]իկ առանց գործակցութեան մարդկան. յորոց քաղ[illegible] է, որպէս և յայլ բազում գլխոց, թէ որչափ [illegible] տուղս և օգուտս քաղեմք յանշունչ իրաց. [illegible] էր մեզ ընաւին 'ի ձեռս բերել զնոյնս առանց ձեռին և վաստակոց մարդոյ։ Եւ զո՞ր օգուտ կամ զդիւրութիւն 'ի կենդանեաց հնար էր մեզ քաղել, եթէ ոչ էր ձեռն տուեալ մարդկան. քանզի և որք նախագիտ եղեն իրացս' թէ զո՞ր օգուտ յորմէ՛ անասնոյ մարթ իցէ ունել մեզ, ապաքէն մարդիկ էին. և ոչ իսկ զարդիս կարօղ եմք առանց գործակցութեան մարդկան կամ արածել զնոսա, կամ ընտելացուցանել, կամ պահպանել և կամ զ'ի դէպ ժամու զարդիւնսն ժողովել. նոքին դարձեալ զվնասակարս 'ի նոցանէ սպանանեն, և զպիտանացուս որսան։

Եւ զի՞ է ինձ 'ի համար բերել զարհեստից զբազմութիւն, առանց որոց անմարթ էր ընաւին կեանս ունել։ Ո՛ ի ո՞ ոք էր որ դարմանէր զհիւանդս, ո՞ւ յանձնանձել զառողջս, ո՞ր այն պարէնք և սպասք, եթէ ոչ սատար մեզ լինէին արհեստք բազմապատիկ։ Ողջոք յարդարեալ կեանք մարդկան' այսչափ զանազանի 'ի պարենից և 'ի վարուց անբանիցն։ Եւ քաղաքք ոչ կանգնէին և ոչ լինէին երբէք առանց անթիւ մարդկան, որք զօրէնս և կարգս հաստեցին. յորոց' և իրաւանց արձանագրութիւն արդար, և սահմանեալ կանոն կենաց։ Որոց զհետ եկն և հեզութիւն բարոյից և պարկեշտութիւն. կեանքն եղև անհապահեստ. որպէս և տալով

և առնլով և փոփոխելով զինչս և զպէտս առն ըստ եղբօք իւրում, կարօտիմք և ոչ իմիք ։

Ե. Յերկարաբան աստանօր գտանիմք քան զարժանն. զի ո՞ է որում չիցեն քաջայայտ բազմապատիկ բանիւք երկրորդեալքն 'ի Պլանետիոսէ՝ թէ Ոչ ոք, ոչ զօրավար պատերազմի, և ոչ տանուտէր տան կարող եղև գործս կատարել մեծամեծս և փրկաբարս առանց սատարութեան մարդկան ։ Որք 'ի նմանէ յիշատակին Թեմիստոկղէս, Պերիկղէս, Կիւրոս, Ագեսիղայոս, Աղեքսանդր, որոց անհնար էր ասէ այնչափ ինչ առնել առանց ձեռնտուութեան մարդկան ։ Յանտարակուսելին վկայս յաճախէ անհարկաւորս ։

Եւ որպէս մեծամեծ օգուտս քաղեմք 'ի համաշունչ լինելոյ մարդկան և միախորհ, նոյնպէս չիք և ոչ մի սրածութիւն այնչափ ժանտաբեր մարդոյ քան զհասեալն 'ի մարդոյ ։ Կայ մատեան Դիկէարքոսի ճեմական առն մեծի և ճոռոմախօսի յաղագս կորստեան մարդկան. ուրանօր հաւաքեալ 'ի մի զայլ պատճառս որ 'ի հեղեղէ, 'ի սրածութենէ, յամայութենէ, և 'ի յեղակարծ բազմութենէ գազանաց, յորոց 'ի յարձակմանց ծախեցան՝ ասէ, ազգք ինչ մարդկան, յետ այնորիկ գայ 'ի բաղդատել՝ թէ որչափ առաւել բնաջինջ եղեն մարդիկ 'ի յարձակմանէ մարդկան, այս ինքն յերեսաց պատերազմաց կամ խռովութեանց, քան յայլ ամենայն աղետից ։

Արդ քանզի ոչ տանի ճառս երկբայութիւն՝ թէ մարդ մարդոյ մեծապէս օգտէ և վնասէ անխտիր, սեպհական գործ ասեմ զայդ լինել առաքինութեան միաբանել զոգիս մարդկան և զուգաւորել 'ի պէտս միմեանց ։ Արդ որ ինչ միանգամ յանշունչս և 'ի կիրառութեան անասնոց անբանից գործին յօգուտ կենաց մարդկան, վաստակասէր արհեստից են գործ. իսկ ջանք մարդկան կազմք և՛ պատրաստք առ 'ի պայծառազարդութիւն մերոցս իրաց՝ արծարծանին իմաստութեամբ և առաքինութեամբ գերապանծ արանց ։

Քանզի և առաքինութիւն առ հասարակ յերիս կոչցես յածի. յորոց առաջինն է նկատող լինել զինչ ինչ յիւրաքանչիւր գործ ճշմարիտ և անկեղծ իցէ, զինչ համապատշաճ միոյ միոյ, զինչ հետևորդ, ուստի իւրաքան-

չիւր ինչ ծնանիցի, և զինչ պատճառ իցէ իւրաքանչիւր իրաց: Երկրորդն՝ սանձել զամբոխեալ շարժմունս հոգւոյն, որ 'ի յունաց πάθη[1] յորջորջին, և զյօժարութիւնս՝ զոր նոքա ὁρμὰς[2] անուանեն, հնազանդել բանին: Երրորդն՝ ընդ այնոսիկ ընդ որս գումարիմք, բարեմարդութեամբ վարիլ և զգաստութեամբ, որոց գործակցութք զբնութեան պէտս լի և անթերի ունիցիմք. և դարձեալ եթէ վիշտք ինչ մեզ հասանիցեն, 'ի ձեռն նոցա 'ի բաց վանեսցուք, և վրէժս առցուք յորոց մեզ վնասել հնարեցան. և այնչափ ինչ տուգանս 'ի վերայ ածցուք, որչափ ինչ ներէն արդարութիւն և մարդասիրութիւն:

Զ. Բայց թէ եւ իւիք մարթասցուք ստանալ զայս կարողութիւն զբռամբ աճելոյ և պահելոյ զմարդկան ձեռնտուութիւն, ասասցուք 'ի մօտոյ. այլ կանխաւ կամիմ ասել սակաւուք: Ո՞ է որ ոչն գիտիցէ, թէ մեծ զօրութիւն է բախտի ըստ երկաքանչիւր կողման, ըստ յաջողութեանց և ըստ ձախողութեանց. զի ուր աջողակ շնչէ, նաւարկեալ բերիմք յելս ցանկալիս, և յընդդէմն շնչել՝ տագնապիմք: Արդ 'ի սոյն այս բախտ են դիպուածք որք դուն ուրեք պատահեն. զոր օրինակ են նախ յանշնչից՝ մրրիկք, օդոց խռովութիւնք, նաւաբեկութիւնք, կործանմունք և հրկիզմունք, և երկրորդ 'ի գազանաց՝ հարուածք, խայթուածք և յարձակմունք. այլ այսոքիկ՝ որպէս ասացի, դուն ուրեք երբէք:

Բայց կորուստ զօրաց՝ որպէս եղև ոչ բազում աւուրբք յառաջ երից բանակաց[3], յաճախ ևս բազմաց. կոտորած զօրավարաց, որպէս արդ ևս գերապանծ և անհամեմատ առն[4]. և դարձեալ յաչաղանք ամբոխին, և առ մախանաց տարագրութիւնք, թշուառութիւնք և փախուստք բարեացապարտ քաղաքացեաց յոլովագոյն: Որպէս և յաջողուածք, փառք և պատիւ, իշխանութիւնք, յաղթութիւնք, թէպէտ և դիպուածոյք են, բայց սակայն առանց գործակցութեան և ձեռնտուութեան մարդկան

1 Կիրք կամ Ախտ:
2 Բաղձանք կամ Խղձք:
3 Առաջին մեծին Պոմպէի 'ի Փարսաղիա. երկրորդ Գ. Մետեղլոս Պիոսի Սկիպիոնի յԱփրիկէ, պարտեալ 'ի Կեսարէ. երրորդ որդւոցն Պոմպէի 'ի Կեսարէ 'ի Սպանիա:
4 Պոմպէոսի մեծի:

ոչ յայս և ոչ յայն կողմն մարթին բերիլ։ Յետ խելամուտ լինելոյ այսմ՝ ժամ է ասել, թէ որով օրինակաւ հնար իցէ զմարդկանն սատարութիւն յօգուտ մեր ամոքել և զարթուցանել. յորում եթէ յերկարեսցի ճառս, 'ի բաղդատել անդ ընդ առաւելութեան օգտութեանն՝ թերևս և համառօտագոյն երևեսցի։

Արդ զոր ինչ միանգամ ընծայեն մարդիկ մարդոյն 'ի մեծացուցանել զնա և 'ի պատուաւորել, կամ 'ի շնորհս բարեկամութեան զայդ առնեն՝ երբ սիրեն զոք վասն իրիք պատճառի, կամ առ պատուելոյ՝ զառաքինութիւն նորա նկատեալ, արժանաւոր զնա դատին մեծաց բարեբախտութեանց, կամ հաւատս ունին 'ի վերայ նորա, համարին՝ թէ զբարին իւրեանց խոկայցէ նա յոյժ. կամ զանգիտեն 'ի կարողութենէ նորա. և կամ զորին հակառակն՝ յորոց ակնկալութիւն է ինչ. զոր օրինակ յորժամ թագաւորք և իշխանք ժողովրդեան պարգևս ինչ խոստանան. կամ ևս 'ի սէր դրամոց և վարձուց յօժարին յայն, որ է անարժան անարգագոյն քան զամենայն պատճառս՝ եթէ այնոցիկ որ այնու պարտ յանձին ունիցին, և եթէ այնոցիկ՝ որ 'ի նոյն ջանայցեն ապաստան լինել։

Վասն զի չարաչար են իրքդ՝ յորժամ զոր պարտն էր առնել առաքինութե͞, դրամովք ոք փորձի առնել։ Այլ քանզի երբեմն և այս սատարութիւն է հարկաւոր, ըզզիարդն վարելոյ նովաւ առասցուք՝ յետ խօսելոյ կանխաւ զմերձաւորագունիցն առաքինութե͞։ Իսկ ևս ներքոյ արկանեն մարդիկ զանձինս տէրութեան և իշխանութեան այլոյ՝ առ բազում պատճառաց. քանզի կամ 'ի բարեկամութէ͞ սաղրին, կամ 'ի մեծութենէ երախտեաց, կամ 'ի բարձրութենէ պատուոյ, կամ 'ի յուսոյ՝ թէ օգուտ ունի լինել անտի անձանց, կամ յերկիւղէ՝ զուցէ բռնութեամբ հարկեսցին հպատակել, կամ յակնկալութենէ պարգևաց և խոստմանց պարանեալք. և կամ 'ի վախճանի, զոր շատ ևս 'ի մերում տէրութեան տեսանեմք, վարձուք վարձկանեալք։

Է. Այլ քան զամենայն ինչ՝ չիք բարեպատեհ այլ 'ի պահպանել զիշխանութիւն և յապահովել կալ՝ որպէս սիրելին լինել. և ոչ դժպատեհ այլ՝ որպէս լինելն զանգիտելի։ Քանզի քաջ իսկ խօսեցաւ Էննիոս. Յոր-

մէ երկնչին, ատեն. և զոր ոք ատեայ, կորստեան նո-
րուն ցանկայ: Այլ թէ ոչ ինչ իշխանութիւն կարօղ է զդէմ ունել ատելութեանց, եթէ անզխտելի էր ժամանակաւ, զարդիս դիտելի եղև[1]: Այլ ոչ եթէ սորին ևեթ բռնաւորի զոր յանձին կալաւ քաղաքն զինուք նուաճեալ, կորուստն յայտնի առնէ՝ թէ որչափ բուռն է ատելութիւն մարդկան 'ի սատակումն, այլ և համանմանն եւք այլոց ևս բռնաւորաց. զի և ոչ մի 'ի նոցանէ զոգցես վրէպ եղև 'ի նոյն օրինակ սատակմանէ: Աստն զի չարաչար պահապան է հանապազորդութեն երկիւղ. ընդ հակառակն՝ բարեհաճութիւնն հաւատարիմ է մինչև ցյետնջենաւորութիւն անգամ:

Նայև այնոցիկ՝ որք բռնակալութբ իշխեն, հարկ 'ի վերայ կայ դժնեայ լինել առ հպատակս, որպէս տեարց առ ծառայս՝ եթէ չիցէ մարթ այլ ազգ ունել զնոսա 'ի հնազանդութեան: Նաև որ միանգամ յազատ քաղաքի կամին ահընկէց լինել, չիք ինչ անմտագոյն քան զայդ: Օք թէ և խորասուզեալ իցեն օրէնք յերեսաց իշխանութեան ուրուք, թէպէտ և ահաբեկ լեալ ազատութիւնն, այլ գայ ժամանակ՝ զի գլուխ ամբառնան դոքա կամ զանխուլ դատաստանօք, կամ ծածուկ քուէարկութեամբ 'ի վերայ բարձի և պատուոյ: Այլ դժնդակ ևս են խայթուածք ազատութեանն նիրհեցելոյ, քան յոտին կացելոյ: Արդ որ քաջայայտ իսկ է և օգտէ ոչ միայն առ անձին պահպանութիւն, այլ և բազմօք առ կարողութիւն և առ իշխանութիւն, զայնու գիրկս արկցուք. այս է, 'ի բաց դիցի երկիւղ, և պինդ պահեսցի սէր. այսու օրինակաւ՝ հեշտեաւ ունիմք 'ի ձեռս բերել զոր կամիմք, եթէ յառանձնականս, և եթէ 'ի հասարակացն տէրութեան: Քանզի և որ կամինն՝ զի երկիւղալի լիցին այլոց, հարկ է նոցա երկնչել յերկուցելոցն յինքեանց:

Քանզի զինչ կարծեմք զԴիոնեսիոսն զայն զծերն, յոր տագնապ երկիւղի տանջէր. այն որ խիթացեալ յածելեաց վարսաւիրաց՝ շանթացեալ գործելեաւ զիւրսրն տաղէր զհերս: Զի՞նչ զԱղեքսանդրոս Փերեացի, որպիսի՞ համարիմք զկեանս նորա. որ՝ որպէս ընթեռ-

1 Ի մահուն Կեսարու, քսան և երկու հարուածս խոցից 'ի ծերակուտին ընկալեալ:

նումք զնմանէ, Թէպէտ և սիրել սիրէր յոյժ զկինն Թեթայեցի, բայց յորժամ յետ ընթրեաց զայր առ նա 'ի սենեակն, հրամայէր զի յառաջեսցէ քան զինքն խուժադուժ ոք սուսերամերկ, և այն՝ որպէս պատմի, Ճակատագրով Թրակացի կնտուածովք. առաքէր և յառաջոյ յուրոց Թիկնապահաց՝ զննել զգզլոցս կանացին, և հետախուզել զի մի՛ գուցի գաղեալ 'ի հանդերձս անդգործի մահու։ Ո՛վ Թշուառութեան չուառականին, որ հաւատարիմ ես համարէր զայր բարբարոս և զխարանաւոր՝ քան զիւր լծակից։ Նա ոչ 'ի դերև եղ կասկածն. զի 'ի նմին իսկ 'ի կնոջէն դաւեցաւ 'ի մահ, որ զայրն կարծէր բոզարած լինել։ Չիք և ոչ մի զօրութիւն իշխանութեան՝ որչափ և զօրաւոր իցէ, որ ահարկութ̃ կարող իցէ յերկարատև լինել։

Այս է Փաղարիս, որոյ անգթութիւնն աշնուականութիւն զգեցաւ քան զայլոցն. որ ոչ դաւով սատակեցաւ, որպէս Աղեքսանդրոսդ՝ զորմէ այժմ ասացի. և ոչ 'ի ձեռն սակաւաւորաց, որպէս այս մերն. այլ միահամուռ բազմութիւն Ակրագանդացւոց զրոհ ետ 'ի վերայ նորա։ Ոչ ապաքէն և Մակեդոնացիք Թողլին լքին զԴեմետրիոս, և առ հասարակ առ Պիւռոս անդր դարձան։ Ոչ և զԼակեդեմոնացիս որք հարստահարութ̃ տիրէին, յանկարծակի 'ի բաց լքին նիզակակիցք ամենայն, և անգործ հանդիսատեսք եղեն լեւկտրական աղետիցն։

Ը. Զարտաքինս մտադիւրագոյն յիշեմ յայդպիսի անցս՝ քան զառտնինս։ Բայց սակայն ցորչափ իշխանութիւն ժողովրդեանս Հռովմայ բարերարութեամբք կայր և ոչ անիրաւութեամբք, պատերազմ մղէր կամ յաղագս նիզակակցաց կամ յաղագս տէրութեան, ելք պատերազմաց կամ մեղմ էին և կամ հարկաւորք. Թագաւորաց, ժողովրդոց, ազգաց և ազանց նաւահանգիստ էր ծերակոյտն և տեղի ապաւինի։

Նա դատաւորք մեր և զօրագլուխք 'ի միոջէ յայսմանէ և եթ գովութիւնս մեծամեծս ջանային քաղել, 'ի պաշտպանելոյն զգաւառս և զնիզակակիցս արդարութ̃ և հաւատով։ Այս որոյ ոչ այնչափ տէրութիւն էր կոչել զայն, որչափ ճշգրտագոյնս՝ հովանաւորութիւն տիեզերաց։ Բայց յառաջագոյն տակաւ Թուլանայաք 'ի սո-

վորութենէ աստի և 'ի վարդապետութենէ. իսկ 'ի յաղթութէ Միղայի և այսր 'ի սպառ կորուսաք։ Վասն զի ոչ ինչ անիրաւ թուէր ընդդէմ նիզակակցաց, յորժամ 'ի վեր երևեցաւ անչափ անգթութիւն ընդդէմ քաղաքացւոց։ Քանզի յայնմ արդար պատճառէ՝ գտեալ եկն անիրաւ յաղթութիւն։ Վասն զի ձող կանգնեալ 'ի հրապարակի՝ 'ի վաճառ հանեալ զինչս արանցն լաւաց և փարթամաց և ստոյգ քաղաքացւոց, իշխեաց ասել. Վաճառեմ զաւարն իմ։ Ոհետ եկն այնք այլ ոք որ ձեռն էարկ ամբարշտութեամբ և ևս դժպատեհ յաղթութեամբ, ոչ միայն զիւրաքանչիւր ուրուք 'ի քաղաքացեաց զինչսն 'ի վաճառ հանել, այլ զհամօրէն նահանգս և գաւառս 'ի մի և 'ի նոյն աղէտս մատնել։

Եւ այնպէս յետ հարստահարելոյ և կորուսանելոյ զազգս օտարս, տեսաք զի յօրինակ տէրութեանն կորուսելոյ 'ի հանդէս ածաւ յաղթանակի Մասինիսա[2], և ձաղեցաւ քաղաքն այն յաղթանակաւ՝ առանց որոյ ոչ երբէք յաղթանակող եղեն զօրավարք մեր 'ի պատերազմունս որ յայնկոյս Ալպեայ։ Յոլովս այլս ունէի յիշատակել ապիրատութեան գործս ընդդէմ նիզակակցաց, եթէ աւելի անարժան ինչ քան զմի զայս տեսեալ էր արեգական։ Ոի թէ ոչ անպատիժ թողուաք զյոքունց չարագործութիւս, ոչ երբէք յայնչափ ժպիրհութիւն հասանէր այր մի, յորմէ առ սակաւս էանց ժառանգութիւն ստացուածոյն. այլ ժառանգութիւն ցանկութեանց անց առ բազումս ապիրատս։

Եւ ոչ երբէք պակասեսցի սերմն և պատճառ քաղաքական պատերազմաց, ցորչափ յիշեսցեն արք անօրէնք զձողն զայն արիւնաթաթաւ և յուսասցին. զոր յորժամ կշռեաց իբրև նիզակ Պոմպէոս Սիղղա՝ 'ի դիկտատորութեան մերձաւորին իւրոյ[3], նա ինքն յետ ամաց երեսնից և վեցից ոչ յետս եկաց յևս անօրինագոյն ձողոյ։ Եւ միւս այլ ոք՝ որ էր դպիր յայնմ դիկտատորութեան, յայսմիկ եղև գանձապետ քաղաքի։

1 Սիղղա ունէր իրաւունս գըրգաւելոյ 'ի պատերազմ, բայց առա անիրաւութեամբ վոխճան արար պատերազմին։

2 Մասինիսացիք զկողմն ունէին Պոմպէոսի, և կեսար նուաճեաց, և 'ի յաղթանակին իւրում մուծաւ և պատկեր քաղաքին Մասինիսա։

3 Ղ. Կոռնելիոսի Սիղղայի։

Զգուշ պարտ է 'ի միտ առնուլ՝ թէ ուր առաջին գնեն զգուշութեան վարձք, ոչ երբէք պակասեսցեն քաղաքական մարդք: Արդ պարիսպք քաղաքիս եւեթ կան մնան, եւ նոքին իսկ խիթալով ընդ յետին չարիւն վերահաս: Իսկ զհասարակաց տէրութիւն՝ զայն 'ի վաղուց հետէ 'ի սպառ կորուսաք: Այլ ահա յայսպիսի թշուառութիս հասաք, զի ('ի նպատակ անդր մեր դարձցուք) ընտրեմք ահարկու լինել մանաւանդ՝ քան զհաճոյանալն եւ լինել սիրելի: Այլ եթէ այս անցք կարասցեն անցանել ընդ հռովմէական ժողովուրդ՝ յանիրաւ տիրապետել նորա, զինչ պարտի կարծել զանձնէ այր իւրաքանչիւր: Այլ զի քաջայայտ է բանս՝ թէ մեծ է զօրութիւն բարեսէր կամաց, իսկ երկիւղն՝ անզօր, զհետ գայ ճառել մեզ՝ թէ իւ իւիք մարթիմք հեշտեաւ զոր կամիմքն զսէր՝ ստանալ ընդ պատուոյն եւ ընդ վստահութեան:

Այլ ոչ ամենեքեան միօրինակ այդմ կարօտիմք. վասն զի ըստ ընթացից կենաց իւրաքանչիւր անձին պէտք են չափել, 'ի բազմա՞ց արդեօք եթէ 'ի սակաւուց կարօտի սիրել: Արդ այս ինչ հաւաստի գրեսցի, եւ այն իբրեւ առաջին եւ կարի կարեւոր. ընտանութիւնս ունել հաւատարիմ բարեկամաց՝ զմեզ սիրողաց եւ զարմացողաց ընդ մերսն. քանզի այս մի ինչ է գլխովին՝ որ ոչ շատ խտրէ ընդ մեծամեծ եւ ընդ միջակ անձինս. որ եւ երկաքանչիւր գոգցես կողման է պիտանի: Պատուոյ եւ փառաց եւ մարդասիրութեան քաղաքակցաց թերեւս ոչ ամենեքին միապէս կարօտին. այլ սակայն եթէ գտցին ըստ բաղձի առ ումեք, օգնեն իւիք՝ եթէ յայլ ինչ պէտս, եւ եթէ 'ի ստանալ զբարեկամութիւնս:

Թ. Այլ յաղագս բարեկամութեան յայլում մատենի ասացեալ է, որ մակագրի Լելիոս: Այժմ ասասցուք զփառաց. թէպէտ եւ զայսց իրաց կան մեր գիրք երկու, բայց վերադարձցուք. զի մեծապէս օգնէ 'ի տնտեսութեան իրաց մեծամեծաց: Այլ արդ ծայրացեալ եւ կատարեալ փառքն սահմանի յերիս այսոսիկ. եթէ սիրէ բազմութիւնն, եթէ վստահի, եթէ զարմացմամբ իմն արժանիս պատուոյ վարկանի: Այլ զայսոսիկ (մեկն եւ համառօտ ասել,) որպէս հնար իցէ ստանալ 'ի միոյն առանձին, նովիմբք հնարիւք գոգջիր եւ 'ի բազմութենէ: Բայց է եւ այլ իմն հնարք վասն բազմութեանն, զի

'ի սիրտ բոլորից որպէս եթէ ընդմտանել մարթ ասցուք։

Այլ նախ յերից անտի զորս յառաջին ասացի, զբարեհաճութեան կցմունս տեսցուք. զոր առաւել բարերարութեամբք մարթ է ստանալ։ Իսկ երկրորդ նա և միայն բարերարութեան կամօք շարժի բարեհաճութիւն, մանաւանդ եթէ չիցեն յաւելուածք ընչից (առ բարերարել)։ Այլ ես քան զևս սէր բազմութեանն արծ-արծանի 'ի համբաւոյ անտի և 'ի կարծեաց առատաձեռնութեան, բարերարութեան, արդարութեան, հաւատոյ, և համօրէն այն առաքինութեանց՝ որք յանգին 'ի հեզութիւն և 'ի բարեբարոյութիւն։ Վասնզի և բուն իսկ համեստն և վայելչականն 'ի մէնջ անուանեալ, որովհետև ըստ ինքեան է մեզ հաճոյական, և զմիտս ամենեցուն շարժէ բնութ̄բ և գեղեցկութեամբ իւրով, և առաւելապէս փայլէ արդեօք 'ի ձեռն նախասացեալ առաքինութեանց. սմին իրի զայնոսիկ՝ յորս կարծեմք լինել զառաքինութիւնսդ զայդոսիկ, 'ի բնութենէ անտի ստիպիմք սիրել։ Այս պատճառք են ազդոյք 'ի սիրել. զի մարթին լինել և այլք ոմանք թեթևագոյնք։

Իսկ արժանահաւատ ոք երկոքումբք իրօք մարթ է լինել. եթէ համարեսցին զմեզ ստացեալս զխոհեմութ̄ի զոյգ ընդ արդարութեան։ Վասնզի և նոցա հաւատս ընծայեմք՝ զորս հանճարեղս քան զմեզ վարկանիմք և յառաջատեսս հանդերձելոց, և կարօղս ելս աղագս գտանել 'ի դժուարինս, և հնարս հնարել յանպատրաստից։ Զի զայս ամենեքին համարին օգտակար և ճշմարիտ խոհեմութիւն։ Իսկ արդարոց և արժանահաւատաբանից, այս ինքն լաւաց, հաւատք ընծայի, առանց չփելոյ զնոքօք զկարծիս խաբէութեան և անիրաւութեան։ Սմին իրի ամենայնիւ արժանի համարիմք յանձն առնել 'ի նոցա ձեռս զկեանս մեր, զինչս մեր և զզաւակս։

Արդ յերկուց աստի արդարութիւնն է առաւելագոյն 'ի ստանալ զհաւատս. զի նա առանց խոհեմութեան իսկ ունի զիշխանութիւն բաւական. իսկ խոհեմութիւն առանց արդարութեան ոչ ինչ զօրէ առ արժանահաւատն լինել։ Վասն զի որչափ ոք է առաւել խորագէտ և խորամանկ, նոյնչափ ևս ատելի և կասկածելի՝ 'ի պակասել կարծեաց լաւութեան։ Վասն որոյ ար-

դարութի՛ն ընդելուզեալ ընդ հանճարոյ՝ որչափ և կամք իցեն մեծազօր զօրանի առ արժանահաւատն լինել։ Արդարութիւն առանց խոհեմութեան առ բազում ինչ կարող է. խոհեմութիւն առանց արդարութեան առ ոչ ինչ է կարող։

Ժ. Այլ մի[illegible] ումեք զարմանալ՝ թէ զի՞ է զի ուր հաւաստի դատեալ է յամենայն իմաստասիրաց միջի, և յինէն ևս բազում անգամ յեղյեղեալ՝ եթէ որ զմի ունի առաքինութիւն՝ զամենայնն ունի յառաքինութեանց, զարդիս այնպէս տրոհեմ, որպէս թէ մարթ իցէ ումեք արդար լինել առանց լինելոյ և խոհեմ։ Այլ է նրբութիւնն այն՝ յորժամ բուն ճշմարտութի՛ն ընդ խարտոցաւ անկանի վիճաբանութեան, և այլ՝ յորժամ առ հասարակաց կարծիս ճահաւորի ճառն ողջոյն. առ-րին աղագաւ, որպէս ռամիկն նոյնպէս և մեք խօսիմք յայսմ վայրի՝ յասել անոգ, թէ ոմանք են արի, ոմանք բարի, և այլք խոհական։ Աստ զի ռամկական և սովորական բանիւք արժան է ճառել՝ ի խօսելն զռամկական կարծեաց. զայդ և Պանետիոս արար այդպէս. այլ մեք՝ ի նպատակ անդր դարձցուք։

Արդ յերից անտի պատկանելոց առ փառս՝ երրորդն այն էր, զի համդերձ զարմացմամբ մարդկանն՝ պատուոյ արժանի առ՝ ի նոցանէ գրեսցուք։ Արդ զարմանան նո-քա առ հասարակ ընդ ամենայն՝ զոր միանգամ մեծ և ՚ի վեր քան զիւրեանց կարծիս տեսանեն. իսկ ուրոյն ուրոյն յիւրաքանչիւրսն, եթէ նկատեսցեն զանակնկալ ինչ բարիս։ Նա այսպէս յայն անձինս ակնկառոյց լի-նին և մեծամեծ գովութեամբք ամբառնան, յորս կար-ծեն նշմարել զ՚ի վեր քան զկար իւրեանց և անհամե-մատ առաքինութիւնս. և արհամարհեն և անգոսնեն՝ յորս ոչ համարին լինել ոչ ինչ առաքինութիւն, ոչ ինչ հաստատութիւն և ոչ ինչ արիութիւն։ Ո՛չ ի ոչ զամենեսին փնոսա անգոսնեն զորոց չարաչար ունին կարծիս. վասն զի զորս միանգամ ապիրատս, հայհոյիչս և դաւաճանս վարկանին, և առ անիրաւել աջողակս, ոչ եթէ քամահեն զնոքօք, այլ առ չարս ունին։ Աստ որոյ ըստ յառաջագոյն ասացելոցս՝ նոքա են արհամարհելք, որք ըստ առածին՝ Ոչ անձանց և ոչ այլում. յորս ոչ եր-կասիրութիւն ինչ է, և ոչ ճարտարութի՛, և ոչ փոյթ։

Աքանչանան ընդ նոսա՝ զորս տեսանեն գերազանցեալս զայլովք առաքինութեամբ և ազատս եթէ յամենայն անվայելչականաց և եթէ 'ի թերութեանց անտի՝ որոց այլք չեն բաւական դիւրաւ զդէմ ունել ։ Քանզի և գրգանք՝ որպէս հրապուրիչ տխմարք՝ զառաւելագոյն մասն հոգւոյն 'ի բաց քեցեն յառաքինութենէ . և ցաւոցն ջահք յորժամ մերձ մատչին՝ յանչափս զարհուրեցուցանեն զյոլովս ։ Կեանք և մահ, մեծութիւն և աղքատութիւն սասանեցուցանեն զամենայն մարդ ։ Իսկ որք միանգամ զայսոսիկ ըստ երկաքանչիւր կողման վսեմ ոգւով մեծանձնութեան արհամարհեն, ուր առաջի կայցէ նոցա այլ ինչ գերապանծ և առաքինական, զամենայն մարդ յինքեանս ձգեն և յապշութիւն կրթեն . և այն զի՞ ոչ զարմասցի ընդ պայծառութիւն և ընդ գեղ առաքինութեան ։

ԺԱ. Նա ուրեմն և այս արհամարհութիւն անձին պատշաճաւ է զքանչացումն . Եւ առաւել արդարութիւնն (յորմէ եւեթ բարիք անուանակոչին մարդիկ), զքանչելի իմն երևի յաչս բազմութեան՝ և կարի յիրաւունս ։ Զի ոչ ոք կարող է լինել արդար, որ միանգամ երկնչի կամ 'ի մահուանէ, կամ 'ի ցաւոց, կամ յաքսորանաց, կամ 'ի չքաւորութենէ . կամ որ զհակառակս սոցին նախապատիւ առնէ քան զուղղութիւն ։ Եւս քան զեւս զարմանան ընդ նա որ դրամովք չշարժի . և զայրն յորում այս երևի՝ համարին զնա հրով փորձեալ[1] ։ Նա և զերկուս զայսոսիկ՝ կարևորքն առ փառս, արդարութիւն զկարողին 'ի գլուխ հանէ . եթէ զբարեսէր կամսն՝ 'ի կամելն օգնել բազմաց, և եթէ այնր աղագաւ՝ զվստահութիւն . որպէս զզքանչացումն՝ յարհամարհելն և յանտեսել զայն ինչ իբրս, յորս յոլովք բորբոքեալ անյագութեամբ բերին ։

Այլ ըստ իմում կարծեաց՝ ամենայն հանգամանք և բարեկարգութիւն վարուց պէտս ունի օգնականութեան մարդկան . նախ այն իսկ՝ զի իցեն ոմանք, ընդ որս յընտանի զրոյցս կայցես . որ է դժուարին՝ եթէ ոչ զկերպարանս առն բարւոյ յանձ[illegible]ցես ։ Նա և մենակեաց առն և յանդս բնակ[illegible]կարևոր է անուն առ-

1 Իմա՛ իբրև զոսկի ։

դարութեան, և այնչափ առաւել՝ որչափ զի եթէ չու֊նիցին զայն, ընդ անարդարս գրեսցին. և անպատապար 'ի ցանգոց՝ բազմապատիկ տուժեսցին:

Այլ դարձեալ և որոց վաճառեննն, գնեն, վարձեն, 'ի վարձու տան, և 'ի սակարկութիւնս թարթափին վա֊ճառաց, արդարութիւն է հարկաւոր առ 'ի զգործն կա֊տարել: Որչափ է սորայս զօրութիւն, զի և ոչ այնո֊քիկ որք՝ 'ի չարագործութեան և յեղեռն մնանին, կա֊րող լինին կեալ առանց իրիք նշխարի արդարութեան: Զի որ 'ի միջէ յաւազակակցացն գողանայ ինչ կամ յափշտակէ, այնպիսին և ոչ յաւազակութեան ունիցի տեղի: Այլ հինապետն՝ եթէ ոչ հաւասար զաւարն բաշ֊խեսցէ, կամ սպանանի յընկերացն, և կամ տարագրի: Տիոս ասի լինել և աւազակաց օրէնք՝ որոց հնազան֊դին և պահեն: Մինչ զի յաղագս հաւասարաբաշխու֊թեան աւարին՝ Բարդիւղիս լիւրիկեցի աւազակ, զոր֊մէ է տեսանել առ Թէոպոմպայ, մեծ հարստութիւն կալաւ. զևս մեծագոյն Վիրիատոս լուսիտանացի՝ ո֊րում և զօրավարք զօրաց մերոց անկն ածին. զոր Կ. Լե֊լիոս դատաւոր, մականուանեալն զգօն, խորտակեաց և նուաճեաց. և այնպէս սանձեաց զապարասանութիւն նորա, մինչև թողուլ այլոց զանաշխատ իմն ևեթ պատե֊րազմ: Արդ որովհետև այսչափ է զօրութի̃ արդարութե̃, մինչև և զաւազակաց անգամ զհարստութիւն յառա֊հովել և բարգաւաճել, որչափ համարեսցուք գոլ զնո֊րա զօրութիւն յօրէնս և 'ի դատաստանս 'ի բարեկարգ֊տէրութեան:

ԺԲ. Թուի իմն ինձ այսպէս, եթէ ոչ առ Մարս ևեթ՝ ըստ ասելոյ Հերոդոտոսի, այլ և առ մեր նախնիս՝ թա֊գաւորք կարգեցան երբեմն արք բարեբարոյք՝ 'ի պատ֊ճառս վայելելոյ յարդարութեան: Քանզի 'ի հարստա֊հարիլ ռամկաց ժողովրդեան յերեսաց փարթամաց՝ առ ոմն ապաւինէին առաքինութեամբ վեհագոյն, որոյ պահ֊պանեալ զանաւագս յերեսաց զրկանաց, և արդարու֊թեան թեկն ածեալ՝ 'ի կշիռ իրաւունս պահէր զմեծա֊մեծս ընդ փոքունց: Այլ մի և նոյն եղև պատճառ կար֊գելոյ զօրէնս և զթագաւորս:

Քանզի միշտ խնդրեցան հաւասար իրաւունք. ապա թէ ոչ՝ ոչ ևս իրաւունք լինէր: Արդ եթէ գտանէին

զայդ 'ի ձեռն միոյ առն արդարոյ և բարւոյ, նուազ շատանային. և իբրև այն ոչ յաջողէր, օրէնք հայթհայթեցան՝ զի ընդ ամենայնի հանապազ մի և նոյն բարբառով խօսեսցին: Արդ այս ինչ քաջայայտ է, զի սովորութիւն եղև զայնոսիկ ընտրել յիշխանութիւն, որոց զարդարութենէ մեծ էին կարծիք բազմութեան: Ապա եթէ խոհական ևս զնոսա կարծէին, այնուհետև մարդիկ 'ի մտի դնէին՝ թէ չիք ինչ որում ոչ հասցուք 'ի ձեռն այսպիսի տերանց: Արդ այսուհետև ամենայն իրօք պարտ և արժան է պաշտել և պահել զարդարութիւն. նախ՝ զնոյն վասն իւր ինքեան. ապա թէ ոչ՝ ոչ ևս արդարութիւն լինէր. և ապա յաղագս մեծանալոյ պատուով և փառօք: Այլ զոր օրինակ զդրամս սովորութիւն է ոչ միայն առնուլ, այլ և 'ի վարձու տալ, զի սատար լիցի հանապազորդեան ծախուց՝ ոչ միայն կարևորաց, այլ և ազատականաց. սոյնպէս 'ի դէպ է և զփառս առնուլ միանգամայն և յարգել:

Թէպէտ և Սոկրատէս գեղեցիկ ասէր, թէ այս ճանապարհ է դիւրամերձ առ փառս, և որպէս թէ 'ի կարճոյ. այսինքն ջանալ լինել այնպէս, որպիսի կամի ոք համարիլ յայլոց. բայց թէ ոք կեղծաւորութեամբ և սնոտի ցուցակութեամբ, և ոչ միայն ստայօդ բանիւք՝ այլ և պատիր դիմօք համարեսցի հաստատուն փառաց զամագիւտ լինել, չարաչար սխալէ: Ճշմարիտ փառքն արմատս արձակէ և աճէ. կեղծեալքն ամ՟՝ արագ արագ որպէս ծաղիկ թօթափին. և չէ մարթ կեղծ բանի տևողական լինել բնաւ: Սկայք են բազումք յոյժ յերկուց կողմանց ևս. այլ առ համառօտութեան շատ լիցի մեզ մի միայն տուն. քանզի Տիբերիոս Գրակքոս, Պուբղիոսի որդի, ցայն վայր գովեսցի, ցորչափ յիշատակ մնասցէ Հռովմայեցւոց. բայց որդիք նորա՝ և ոչ 'ի կենդանութե՟ իւրեանց գովելի էին յաչս լաւաց. իսկ յետ մահուան իրաւամբք 'ի համարի գրեսցին մահապարտաց:

ԺԳ. Ապա ուրեմն որ ցանկայ ճշմարիտ փառս առնուլ, յարդարութեան գործս պարապեսցի. իսկ թէ ո՛ այն իցեն, 'ի նախընթաց դիրս անդ ասացաք:

Այլ որպէս զի դիւրագոյն այնպիսիք երևեսցուք՝ որպիսի եմք, թէպէտ և յայտ է ամենայն ճիգն զի այնպիսիք լիցուք՝ որպիսի երևել կամիմք, սակայն ար-

ժամ է տալ նմանոս քանի մի ։ Այսմ զի եթէ ոք անդստին յառաջին տիոց ունի զպատճառս հռչակաւոր և անուանի գոլոյ, և այս կամ 'ի հօրէն ընկալեալ (որպէս քեզ՝ ո՛ իմ Կիկերոն կարծեմ հանդիպեալ), և կամ ըստ դիպաց և ըստ բախտի իմիք, յայնպիսւոյն ձգին աչք ամենեցուն, և յայնպիսումն լինի հետաքննել՝ թէ զինչ առնէ և զիարդ կեայ. մինչ զի և ոչ մի բան նորա կամ գործ մարթի մնալ 'ի մթան ։

Իսկ որք 'ի յառաջին տիս առ նուաստութեան և անշքութեան անծանօթք իցեն առաջի մարդկան, այսպիսիքս զոյգ ընդ զարգանալ տիօք՝ պարտին 'ի մեծամեծս անդր ակն դնել, և ուղիղ ջանիւք 'ի նոյնս նկրտիլ. զոր այնչափ առաւել անվրդով մտօք 'ի դէպ է նոցա առնել, որչափ զի ոչ միայն չնախանձի ոք ընդ այն տիս, այլ և նպաստէ ։

Արդ առաջին առիթ փառաց երիտասարդի այն է, եթէ մարթ իցէ նմա արիանալ 'ի պատերազմական գործս, յորում յոլովք հանդիսացան առ նախնեօք մերովք. վասն զի գրեթէ անդադար պատերազմ կայր 'ի վերայ ։ Իսկ քոյին հասակդ այնպիսում հանդիպեցաւ պատերազմի, որոյ մի կողմն ապիրատութեամբ ականաւոր, և միւսն բարեբախտութեամբ աննշան ։ Սակայն և յայդմ մարտի, յորում զքեզ Պոմպէոս գլուխ կացոյց միոյ 'ի թեւոց, գովութեան հասանէիր մեծի 'ի մեծէ առնէ անտի և 'ի զօրաց՝ յաշտանակել յերիվար, 'ի ձօձել զնիզակ, և 'ի նետաձիգ լինել, և 'ի տանել ամենայն զինուորական աշխատութեան. բայց և այն քո գովեստ անկաւ 'ի գետին զոյգ ընդ տէրութեան հասարակաց ։ Այլ առաջիկայս իմ ճառ ոչ վասն քո ինչ, այլ վասն բոլորից է. վասն որոյ և 'ի մնացուածս բանից եկեսցուք ։

Եւ արդ զոր օրինակ յայլ իրս մեծ ևս են բազմօք գործք հոգւոյ քան մարմնոյ, սոյնպէս և իրքս այս զորս կատարեմք ուշիմութեամբ և բանիւ, յարգի են քան զեղեալսն զօրութեամբ ։ Այսր աղագաւ առաջին գովասանութիւն ծագէ 'ի պարկեշտութենէ, 'ի բարեպաշտութենէ առ ծնօղս, և 'ի բարեսիրութենէ առ իւրսն ։ Եւ կարի դիւրաւ և 'ի լաւ անդր տան զյոյս պատանիք՝ որք կրթին յոտս բարեհամբաւ և զգօն արանց՝

զբարին հասարակաց խորհելեաց. և եթէ համապա-զօրդեն առ նոսա, կարծիս տան ժողովրդեան՝ նման նո-ցա լինել՝ զորս ընտրեցին անձանց՝ զհետ երթալ նոցա:

Օ պատանեկութենէ Պօղիտոսի Հռուտիղեայ՝ կար-ծիս և անարատութեան և իրաւանց դիտութեան ըն-ծայեցոյց տունն Պ. Սուկիոսի: Քանզի Պ. Կրասոս՝ մինչդեռ տակաւին պատանեակ փոքր էր, ոչ այլուստ մուրողութեամբ, այլ անձամբ անձին կալաւ զգուշութի մեծ յոյժ՝ ՚ի ձեռն ազնուական և փառացի դատախա-զութեան[1]. և յայնմ հասակի՝ յորում որք կրթինն՝ սո-վոր են գովեստ ընդունել, որպէս զԴեմոսթենեայ լսեմք, ՚ի նոյն եցոյց Կրասոս՝ թէ ինքն յատեան հրապարակի զայն ինչ առնէ ըստ արժանւոյն, զոր ինչ մարթ էր յայնժամ ՚ի տան խոկալ գովութեամբ:

ԺԴ. Այլ քանզի կրկին է եղանակ բանի, յորոց ՚ի միումն է զրոյց, և ՚ի միւսումն վիճումն, չիք տարակոյս թէ վիճաբանութիւնն է առաւելագոյն ՚ի փառաւորու-թիւն. քանզի այդ իսկ է զոր ճարտարախօսութիւն կոչեմք: Այլ անպատմելի է՝ թէ որչափ զօրաւոր է ՚ի յանկուցանել զսիրտս մարդկան վայելչաբանութիւն և քաղցրաբանութիւն ճառից կամ խօսից: Կան թուղթք Փիլիպպոսի առ Աղեքսանդր, և Անտիպատրոսի առ Կաս-սանդրոս, և Անտիգոնոսի առ Փիլիպպոս, երից հարց գերագունից՝ զի այսպէս լուաք, առ որդիսն. յորս պա-տուիրեն՝ զի ամոք բանիւք ձգեսցեն զսիրտ ամբոխին ՚ի բարեսէր կամս, և զզօրականսն ողոքական յորջորջ-մամբ յանկուսցեն:

Իսկ որ ՚ի բազմութեան լինի ատենախօսութիւն վի-ճաբանական, բազում այն է զի զամենայն բազմու-թիւնն առ հասարակ զարթուցանէ: Վասն զի մեծա-պէս զարմանս յինքն բերէ ճոռոմ և իմաստուն ճարտա-րախօսն. զոր լսելիքն վարկանին նա և բազմահանճար և բազմիմաստ քան զայլս լինել: Այլ եթէ կայցէ յա-տենաբանութեան անդ և ծանրութիւն կից ընդ պար-կեշտութեան, չիք ինչ քան զայդ զարմացուցիչ. և այն-չափ առաւել՝ եթէ այդ ամենայն գտցի յերիտասարդ անձին:

Այլ քանզի բազում ազգք են խնդրոց որք ճարտա-

1 Ի փաստաբանութեան:

րախօսութեան պէտս ունին, և յոլովք յերիտասարդաց 'ի մերում տէրութեան եթէ առաջի դատաւորաց, և եթէ առաջի ծերակուտին ատենաբանելով զօրութեան հասին, մեծ ևս զարմանք գործին 'ի դատս. որոց պատճառն է կրկին. վասն զի բաղկանայ յամբաստանութէ և 'ի ջատագովութենէ. յորս թէպէտ և առաւել զօվելի է ջատագովութիւն, բայց և ամբաստանութիւնն բազում անգամ ընտիր գտաւ. ասացի խուն մի յառաջ վասն Կրասոսի, զնոյն արար և պատանին Մ. Անտոնիոս: Դարձեալ և ճարտարախօսութիւն Պ. Սուլպիկիոսի յամբաստանութեան անդ պայծառացաւ, յորժամ 'ի դատ կոչեաց զԿ. Նորբանոս զայր խռովարար և զանպիտան քաղաքացի:

Այլ զայս չէ արժան ստէպ առնել, նա ոչ երբէք, բայց միայն կամ 'ի պատճառս հասարակաց տէրութեան, զոր օրինակ նոքա՝ զորս կանխաւն ասացի. կամ որպէս Երկոքեան Լուկուղոսք. կամ 'ի պաշտպանութեան սակս, որպէս մեք վասն Սիկելացւոց, և Յուլիոս վասն Սարդինացւոց: Յամբաստանել անդ զՄ. Ակուիլիոս յայտնի ցուցաւ և ճարտարութիւն Լ. Փուսիոսի: Ապա ուրեմն միանգամ լիցի, կամ ստուգիւ ոչ բազում անգամ: Ապա եթէ իցէ ոք որում ստէպ զայս առնել հարկ 'ի վերայ կայցէ, զայդ նուէր մատուսցէ տէրութեան, զորոյ զթշնամեաց քննախնդիր լինել՝ ոչ է ստգտանելի. միայն թէ չափով լինիցի: Վասն զի խստասիրտ մարդոյ է, մանաւանդ թէ անմարդի առն, գլխապարտութիւն 'ի վերայ ածել բազմաց: Այդ ոչ միայն անձին վտանգ բերէ, այլ և կեղտ անուան համբաւոյն. յանձն առնուլ կոչիլ ամբաստանօղ. որ պատահեաց Մ. Բրուտոսի որդւոյ, յազնիւ զարմէ, որ քաղաքական իրաւանց ներհուն գտաւ առաւել:

Այլ զայս ևս կանոն հարկի պաշտամանս պարտ է խնամով պահել, զի մի զոք երբէք յանմեղաց լիցի քեզ գըլխապարտ առնել. զի զայդ առնել անմարթ է բնաւին առանց անօրէնութեան: Վասն զի զի՞նչ այդպէս անմարդի գործ, որպէս զճարտարախօսութիւնն որ 'ի բնութենէ պարգևեալ 'ի փրկութիւն և 'ի պահպանութիւն մարդկան, 'ի սատակումն և 'ի կորուստ ապականութե լաւացն յեղաշրջել: Սակայն թէպէտ և յայսմանէ պարտ

է խորշել, բայց ոչ և զայն խղճել, ջատագովել երբեմն զայր փնասապարտ. միայն թէ չիցէ ժամանաժուտ և անօրէն : Զայդ կամի բազմութիւնն, ներէ սովորութիւն, և տանի մարդասիրութիւն : Դատաւորի է՝ միշտ 'ի դատս զհետ երթալ ճշմարտութեան. պաշտպանի՝ երբէք երբէք ջատագովել զճշմարտատեսիլն, թէպէտ և ոչ այնչափ ճշմարիտ իցէ. և զայս գրել ոչ համարձակէի՝ մանաւանդ 'ի գրել աստ խնդալ զիմաստասիրութենէ, եթէ չէր հաճոյական և Պանետիոսի ուշիմագունի 'ի Ստոյիկեանս : Եթէ փառք և եթէ շնորհ առաւել ծնանի 'ի ջատագովութեանց. և այնչափ աւելի՝ եթէ դէպ լիցի 'ի թիկունս հասանել այնմ որ երևի պարաւանդեալ և հարստահարեալ նպաստիւք հզօրի ուրուք. որպէս մեքս արարաք բազում անգամ, եթէ յայլում նուագի, և եթէ յերիտասարդութեան ընդդէմ նպաստից տիրապետութեան Լ. Սիղղայի՝ 'ի պաշտպանութիւն Ս. Ռոսկիոսի ամերինու. և գիտես՝ զի կայ ճառն այն :

ԺԵ. Այլ յետ առաջի առնելոյ զպատշաճս երիտասարդական հասակի՝ բաւական առ 'ի զփառս ստանալ, այսուհետև 'ի դէպ է ասել մեզ յաղագս բարերարութեան և առատաձեռնութեան. որոյ կրկին է եղանակ : Վասն զի կամ գործով լինի մարդասիրել առ կարօտեալս, և կամ դրամով : Երկրորդս այս դիւրագոյն է, մանաւանդ մեծատան. այլ առաջինն շքեղ և պանծագոյն, և առն քաջի և երևելւոյ արժանաւոր : Զի թէպէտ և յերկոսեանսն է ազատական կամք առնելոյ շնորհս, սակայն մին յարկեղէ ելանէ, և միւսն յառաքինութենէ. և առատաբաշխութիւն որ լինի յընչից, զաղբիւրն գրլխովին մարդասիրութեան ցամաքեցուցանէ, և այսպէս մարդասիրութեամբ բառնի մարդասիրութիւն. զոր որչափ 'ի բազումս անդր ծախեալ իցէ քո, նոյնչափ և վերջացեալ զտանիս ծախել 'ի յոքունս :

Բայց որ միանգամ գործով, այս է՝ առաքինութեամբ և ճարտարմտութեամբ բարերարք և ազատաբարոյք լինին, նախ որչափ յօլովագունից եղեն ձեռնտու՝ այնչափ ևս բազմագոյն ձեռնտուս ունիցին 'ի մարդասիրել. և դարձեալ՝ սովորութեամբ բարեգործելոյ ևս քան զևս պատրաստագոյնք գտանիցին, և որպէս թէ քաջավարժք 'ի բարեացապարտ լինել առ բազումս : Գեղեցիկ առ

բաստան լինի 'ի Նամակի միում զԱղեքսանդրէ զորդւոյ իւրմէ Փիլիպպոս՝ վասն յինքն յանկուցանելոյ զսիրտ Մակեդոնացւոց առատաբաշխութեամբ. " Ո՞ր այն պատճառ՝ ասէ, ասա ինձ, յայդ ձգեաց զքեզ յակնկալութիւն, մտերիմս քեզ կարծել զոլ՝ զորս կաշառաբեկ արարեր դրամովք։ Միթէ զայդ առնես դու, զի մակեդոնացիք ակն ունիցին լինել քեզ ոչ թագաւոր իւրեանց, այլ սպասաւոր և մատակարար ,,։ Բարւոք ասէ սպասաւոր և մատակարար. զի անարգանք են այդ առն թագաւորի. եւս բարւոք՝ զի զառատ բաշխոյս կաշառաբեկութիւն ասաց լինել։ Վասն զի վատթարագոյն եւս լինի առողն, և միշտ 'ի նոյն ակնկալուին պատրաստագոյն։

Զայս նա որդւոյն. այլ մեք կանոն համարեսցուք բոլորից։ Եւ այսպէս ոչ ինչ է երկբայելի՝ թէ մարդասիրութիւնն որ 'ի գործոց և 'ի հայթհայթանաց, համեստագոյն եւս է և արձակածաւալ, և կարող օգտել բազմագունից։

Սակայն երբեմն արժան է և առատաբաշխ լինել, և զայս ազգ մարդասիրութեան ոչ մերժել 'ի սպառ. և ըստէպ օրէն է և 'ի դէպ՝ մարդոց կարօտելոց յիւրական ընչից մատակարարել, այլ արթնութեամբ և չափաւորութեամբ. քանզի բազումք վատնեցին զինչս հայրենի՝ անխորհրդաբար առատաբաշխելով։ Զի զի՞նչ անմտագոյն քան զայդ, ջանալ զի զոր մտադիւր առնեսդ՝ ոչ ընդ երկար կարողասցիս առնել։ Թող զի զհետ գան առատ բաշխոյից և յափշտակութիւնք. զի յորժամ տալով սկսանիցին չքաւորել, յօտարին ինչս հարկին ձեռն արկանել։ Եւ այսպէս ուր առ շահելոյ զսիրտ այլոց բարերար կամէին լինել, ոչ այնչափ սէրս նոցա հանդիպին որոց ետուն, որչափ ատելութեան նոցա յորոց կողոպտեցին։

Վասն որոյ՝ ոչ այնպէս փակել պարտ է զդուռն իւրոյին ընչից, որ անկարող լիցի մարդասիրութիւնն բանալ զայն. և ոչ այնպէս բաց թողուլ՝ զի դիւրամուտ լինիցի ամենեցուն։ Պարտ է կալ 'ի չափու, և այն ըստ համեմատութեան գոյից։ Միեւնայն իրօք պէտք են մեզ յուշ ածել զբանն ստէպ 'ի կիր արկեալ 'ի մերազնեայց և յառակս լեալ՝ թէ Առատաձեռնութիւնն անյատակ է։ Քանզի և զի՞նչ չափ լինիցի, ուր որք

սովորեցանն՝ և որք ոչ նմին կարօտին։

ԺԶ. Տիրապէս երկու ազգք են առատաբաշխից. կէսք շռայլք, և կէսք առատաձեռն։ Շռայլք՝ որք 'ի խրախունս, 'ի բաժանմունս սպանողից և 'ի բաշխոյս ըմբշամարտկաց, և 'ի համդերձանս խաղուց և որսոց վատնեն զդրամն յայնպիսիս, զորոց զսուղ կամ զոչ ինչ յիշատակ բնաւին ունին թողուլ։

Իսկ առատաձեռն նոքա՝ որք ընչիւք իւրեանց կամ զգերեալս յասպատակաւորաց փրկանաւորեն, կամ ըզպարտիս յանձն առնուն զբարեկամաց, կամ նպաստամատոյց լինին 'ի տալ զօրիորդս 'ի հարսնութիւն, կամ ձեռնտու լինին եթէ 'ի շահել և եթէ յաճեցուցանել զինչս։ Սամն որոյ զարմանամ թէ յինչ միտս Թէոփրաստոս 'ի գիրսն՝ զոր գրեաց յաղագս ճոխութեանց, 'ի բազում պանծալիսն եդ զայս ինչ անտեղի. յաճախել գովութիւնս յաղագս մեծագործութեան և համդերձանաց ժողովրդականն հրից. և զայնպիսի ծախուց կարողութիւն՝ զարդիւնս համարել ճոխութեանց։ Իսկ ինձ պտուղն այն առատաձեռնութեան, զորոյ սակաւ օրինակս եդի, յոյժ առաւել մեծ և ստուգագոյն երևի։ Որովհետև Արիստոտէլ առաւել զգօնութբ՟ և ճըշմարտութեամբ ստգտանէ զմեզ՝ զի ոչ զարմանամք ընդ այս վատնումն դրամոց՝ որ լինին առ յանկուցանել ըզռամիկն. բայց թէ պաշարեալքն 'ի թշնամեացն՝ ստիպեսցին մնասի միոյ գնել զվեցերորդ մասն դորակի ջրոյ, այդ մեզ նախ անհաւատալի թուի, և ամենեքին զարմանան. այլ միայն 'ի գնելն միտ, ներել ներեն հարկի. իսկ յայսպիսի անհնարին տուգանս և յանչափ ծախս ոչ շատ զարմանամք, մանաւանդ յորժամ ոչ գուցէ 'ի թիկունս հասանել կարեաց և ոչ առաւելուլ պչուք պատուոյ և զուարճութիւնն այն բազմութեան զկնի վլին առ սուղ մի և դուզնաքեայ ժամանակ լիցէ, և այն սինլքոր մարդկան. այն զի՝ զոյգ ընդ յափրութեան և յիշատակն շիջանի բերկրութեան։

Նա բարւոք 'ի վերայ ածէ՝ թէ այսոքիկ տղայոց և կանանց և ծառայից և ծառայանմանն ազատաց են հաճոյականք. զոր այր մտացի և ողջմտութեամբ կշռադատող ոչ իւիք առնուցու յանձն։

Չեմ ինչ անտեղեակ զի 'ի մերում քաղաքի արմա-

տացեալ է սովորութիւն՝ի վաղ ժամանակաց, պահանջել 'ի լաւ արանց զհանդէս գործակալութեան շինուածոց ։ Նոյնպէս և Պ. Կրասոս մականուանեալն Ճոխ՝ որ և էր արդեամբք, արար զմեծաշուք հանդէս գործակալութեան. և սուղ ինչ յետոյ Պ. Կրասոս ընդ Կ. Մուկիոսի առն չափաւորի քան զամենայն, մեծագործ հանդէս արար գործակալութեան. յետ այնորիկ Կ. Կղօդիոս որդի Ապպիոսի. և այլք յոլովք զկնի, Պ. Լուկուղոսք, Հորտենսիոս և Սիղանոս. սոցա ամենեցուն յաղթեաց Պ. Պ. Լենտուղոս առ հիւպատոսութեամբ իմով. զսորին կնի չոքաւ Սկաւրոս. իսկ մերոյն Պոմպէի հանդէսք բաշխոյից յերկրորդ հիւպատոսին գեր՝ի վերոյ մեծագործութեամբ քան զամենայն. այլ յայսմ ամենայնի տեսանես որ ինչ ինձ հաճոյ իցէ ։

ԺԷ. Սակայն զգոյշ լինել արժան է և 'ի տալոյ կարծիս ագահութեան ։ Մամերկոս այր մեծատուն յոյժ՝ վասն հրաժարելոյ 'ի գործակալութենէ շինուածոց մերժեցաւ յաշտիճանէ հիւպատոսութեան ։ Վասն որոյ թէ պահանջեսցի 'ի ժողովրդենէ լաւ որեարն՝ եթէ ոչ ցանկանալով, բայց հաւանելով պարտին առնել. միայն թէ ըստ իւրեանց կարի, որպէս և մեք զկնովին արարաք. դարձեալ եթէ 'ի մեծամեծաց ինչ և յօգտակարաց իցէ շահել 'ի հանդիսական առատաբաշխութենէ, որպէս Որեստեայ արդի կոչունք յանցս ճանապարհաց[1] անուամբ տասանորդի՝ 'ի մեծ պատիւ համարեցան ։ Նա ոչ 'ի ստգիւտ եղև Մարկոսի անգամ Սեյոսի, յորժամ յաւուրս սովոյն՝ դանկի միոյ տայր ժողովրդեան զքոռն[2]. վասն զի 'ի մեծ և 'ի հնացեալ մախանաց զանձն ազատեցոյց, ոչ դժպատեհ տուգանօք և ոչ կարի մեծ, զի գործակալ շինուածոց էր ։ Նոյնպանծալի շուք եղև յարդիս մերում Միղոնի, զի գնոց գնեալ զմենամարտիկս 'ի պատճառս տէրութեան, զի 'ի մեր փրկանս էր նորայն, նկուն արար զամենայն հայթհայթանս և

1 Առ 'ի յաջողել 'ի բազմանսն էր սովորութիւն ուխտել Աստուծոյ զտասանորդս կնզբերոցն կամ ղաւարին. և սա առ 'ի շահել ըղմիտս ժողովրդեան յընտրութիւն իւր յատենակալութիւն, եւ խընջոյս կոչնոց ժողովրդեան հասով մայ՝ յամենայն ճանապարհս քաղաքին սեղան պատրաստեալ, իւրև տասանորդելով զիւր ստացուածսն ։

2 Ցորենոյ ։

զմոլեգնութիւնս Պ. Կղօդիոսի։ Ապա ուրեմն այս պատճառք են ձրից բաշխման. հարկաւորն լինել կամ օգտակար։

Եւ յայսպիսիս մի միայն գեղեցիկ կանոն է չափաւորութիւնն։ Ապաքէն Պ. Փիլիպպոս, Կուինտոսի որդի, այր հանճարեղ և ականաւոր՝ սովոր էր պարծիլ, թէ ես առանց բնաւին պարգևաբաշխութեան ստացայ զամենայն պատիւ մեծութեան։ Զնոյն ասէր Կ. Կուռիոս։ Եւ մեզ իսկ գլխովին 'ի դէպ է իւիք օրինակաւ պարծիլ յայսմ մասին։ Վասն զի առ համեմատութիւն մեծութեան բարձի և պատուոյ զոր ստացաք հաճութեամբ բոլորից, 'ի տարւոջ անդ մերում կարի յոյժ նուազ ծախք եղեն գործակալութեան. որ ոչն յաջողեցաւ և ոչ միում ումեք՝ յորոց արդ անուանեցի։

Դարձեալ են գովելի ծախք 'ի պէտս պարսպաց, նաւուց, նաւահանգստից, ջրանցից, և ամենայն որ միանգամ 'ի պէտս լինին հասարակաց։ Զի թէպէտ և ներկայն որ իբրև 'ի ձեռս շնորհի՝ ախորժական ևս է, սակայն այդոքիկ ևս հաճոյական առ յապայս։ Զթատրոնս, զսրահակս, զնորանոր մեհեանս՝ մեղմով ստգտանեմ 'ի շնորհս Պոմպէի. բայց գիտնաւորք չհաւանին, որպէս և նա ինքն Պանետիոս, զոր զհետ չոգայ բազմօք 'ի մատենի աստ, այլ ոչ եթէ թարգմանելով. և Փաղերեւս Դեմետրիոս ստգտանէ զՊերիկղէս իշխան Յունաստանի՝ զի զայնչափ դրամս վատնեաց 'ի հոյակապ նախադրունս անդր։ Այլ զայսմ խնդրոյ ողջոյն բանք եղեն քաջ զննութեամբ 'ի գիրսն, զոր գրեցի յաղագս հասարակաց տէրութեան։ Եւ արդ իսկութիւն այդպիսի բաշխմանց պարգևաց՝ ըստ ազգին է պակասաւոր. 'ի դէպ ժամու՝ կարևոր. բայց և յայնժամ պարտ է կշռել ընդ գոյիցն, և չափաւորութեամբ տնտեսել։

ԺԸ. Իսկ 'ի միւս ազգի պարգևաբաշխութեան որ յառաջ գայ յազատականութենէ, ոչ միօրինակ ունիմք վարիլ 'ի տարօրինակ դէպս։ Այլ պատճառ է նորա՝ որ կայ 'ի նեղութեան տառապանաց, և այլ նորա՝ որ զևս լաւագոյնս խնդրէ՝ և ոչ մի ձախորդութիւն ունելով։ Մտադիւրագոյն պարտի լինել մարդասիրութիւն առ տառապեալս՝ միայն եթէ չիցեն արժանի տառապանաց։

Իսկ առ այնոսիկ որք նպաստս խնդրեն, ոչ զի մի՛ տառապանս կրեսցեն, այլ զի 'ի բարձրագոյն աստիճան ելցեն, չէ պարտ մեզ 'ի սպառ կծկիլ. այլ փոյթ և մտադրութիւն ցուցանել յընտրութիւն ընտրելոց անձանց. քանզի գեղեցիկ ասաց Եննիոս. Զգործ երախտեաց յանդէպս՝ 'ի գործս գրեմ ես չար:

Բայց պարգևեալն առն բարւոյ և երախտագիտի՝ է շահեկան եթէ յանձին նորա, և եթէ յայլս: Զի ուր չկայցէ շռայլութիւն՝ գեղեցիկ է առատաձեռնութիւն. և այնչափ առաւել խնամով գովեն զայն յոլովք, զի բարութիւն առն մեծի է տեղի ապաւինի ամենեցուն առհասարակ: Արդ պարտ է ջանալ զի առ նոսա առաւել բարերարեսցուք՝ որոց յիշատակ յորդիս և 'ի թոռունս անցանէ, զի մի՛ լիցի նոցա ապերախտ գտանիլ: Վասն զի ամենեքին ատեան զանյուշն երախտեաց. և 'ի կարճել անդ առատաձեռին զձեռն իւր՝ զրկանս նաև անձանց լեալ համարին. և զնա որ առնէ՝ թշնամի ասեն լինել անաւագաց առ հասարակ:

Եւ այս մարդասիրութիւն օգուտ ևս է տէրութեան հասարակաց. ազատել 'ի ծառայութենէ զգերեալս, հարստացուցանել զանաւագս, որ էր հանդիսացեալ սովորութիւն 'ի մեզ յաստիճանաւորս, որպէս ճոխագոյն տեսանեմք գրեալ 'ի Կրասոսին ատենախօսութեն: Եւ ահա զայս սովորութիւն մարդասիրութեան բազմօք նախապատիւ առնեմ քան զտուրս պարգևաց առատս: Այն է մտացի արանց և մեծաց. իսկ այս մարդելուզաց ամբոխին՝ իբրու գգուանօք զրգռողաց զխառնիճաղանջին թեթևամտութիւն:

Իսկ վայելուչ թուի՝ որպէս 'ի տալն զուարթ լինել, նոյնպէս և 'ի պահանջելն ոչ դառն. և յամենայն սակարկութիւնս, 'ի վաճառել, 'ի գնել, 'ի վարձել, 'ի տալ 'ի վարձու, 'ի դրացութիւնս և 'ի սահմանակցութիւնս, արդարակորով և բարեմոյն բարուք. բազմօք բազմաց տեղի տալ յիւրոց իրաւանց, և 'ի կագելոյ խորշիլ ըստ կարի, իցէ թէ և առաւել քան զկար. զի ոչ միայն ազատաբարոյութիւն է երբէք փոքր մի յետնիլ յիւրոց իրաւանց, այլ և երբեմն շահեկան գլխովին: Արժան է արթուն կալ և 'ի վերայ ընչից տան իւրոյ, զոր թողուլ վատնել անգգամութիւն է. այլ այնպէս զի հեռի

իցէ կատարած կծծութեան և ազահութեան ։ Սակայն զի կարող լինել վարել զառատաձեռնութիւն առանց կողոպտելոյ յանձնէ զհայրենեացն ստացուածս, այդ իսկ է մեծն 'ի շահս դիպուածոյ ։

Անզգուշութեանց 'ի գովեստ առեալ է 'ի Թեմիստոկլեայ Նաւ և Հիւրասիրութիւն ։ Սակայն զի որպէս խնձ Թաւի, յայժ է վայելչական՝ զի զբանս պատուական ուրերոց բաց դանցին պատուական հիւրեց, որ և այն զգաց է հասարակաց տէրութեան, զի մեծագինն ստացականք ոչ մնասցեն կարօտ այսմ առցի ավատակատութեան 'ի քաղաքի առա մերում ։ Նա մեծապէս եւս օգտակար այնոցիկ, որք յայժ կամին համեստ օրինօք առանալ կարողութիւն 'ի ձեռն հիւրից երեւել առաջի ազգաց ստարաց Ճոխ և պատուական ։ Պոէ Թեմիստոկլեաս՝ Թէ Կիմոն և յԱթէնս անդամ առաջնորդական եղեւ իւրոց գիւղակցաց Լակիադացւոց. քանզի այնպէս կարգեաց առէ և պատուիրեաց զառաապետաց, զի ամենայն ինչ շնորհեսցի առն լակիադացւոյ որ 'ի գիւղ իւր լուծանիցի ։

ԺԹ. Նոյն գործք որ ոչ առատաձեռնութեանց՝ այլ բարեգործութեանց մնձարին, այդպէսիկ 'ի դէպ գան և բովանդակ տէրութեան հասարակաց, և իւրաքանչիւր ումեք 'ի քաղաքացւոց ։ Վասնզի աղքատաց լինել յիրաւունս, խորհրդով նպաստամատոյց լինել, և այս ազգ գիտութեամբ օգտել յոլովագունից, մեծապէս սատար լինի առ առաւելուլ իշխանութեան և շնորհաց ։ Մինչեւ զի որպէս բազմապատիկ գործք առաջնոց պանծալիք, նոյնպէս և հմտութիւն և լուծումն քաղաքական իրաւանց անտխեղծ սահմանելոյ՝ միշտ 'ի ծայրագոյն եղեւ պատուի ։ Զոր յառաջ քան զայժմու խառնակութիւն ժամանակաց՝ նախնեաց զդաւեալ ունէին իշխանաւորք. իսկ այժմ որպէս պատիւք և ամենայն աստիճանք չքեալ, սոյնպէս և փայլումն գիտութեանս շիջաւ. և այն այնչափ առաւել դժպատեհ, զի յայնպիսում ժամանակի այդ պատահեաց՝ յորժամ 'ի միջի կայր այրն[1] որ քան զամենայն զառաջինսն, որոց պատուով էր հաւասար, գիտութեամբս քաջայաղթ էր համոզեալ ։ Նայա ու-

1 Վասն որոյ ասիցէ զայս չէ հաւաստի, զի յոլովք էին յայնժամ ականաւորք. Թերևս Սերվիլիոս Սուլպիկիոս իցէ. բայց մարթ է կարծել և զՍկեւոլա, կամ զԿ. Կատուղոս, կամ զՄ. Անտոնիոս ։

րեմն գործն այդ է հաճոյական բազմաց, և քաջայարմար յերախտապարտ կացուցանել զմարդիկ:

Վսեմն պատուեստի է մերձաւոր մակացութիւն հռետորութեան՝ առաւել յարգի, հաճոյական և չքնաղ: Զի զինչ այլ գերապանծ քան զճարտարախօսութի՛ն, 'ի զարմանացուցանել ունկնդրաց, 'ի յոյս կարօտելոց, և 'ի շնորհս արդարացելոց: Սորին վասն և սմին տուաւ 'ի մերոց նախնեաց պատիւ իշխանութեան պատմուճանազգեաց շքով: Որդ պերճախօս առն աշխատասիրի, որ և գիտիցէ ըստ հայրենի սովորութեան զդատս բազմաց արդարացուցանել՝ առանց պահանջմանաց և ձրի, յայտնի է լինել նորա բարերար և պաշտպան:

Հարկ էր ինձ ողբալ աստանօր և զճարտարախօսութեանն զդատարանսն, չասացից՝ զկորուստն, եթէ ոչ խիթայի, մի՛ արդեօք թուեցայց անձամբ զանձն գանգատել իւիք: Այլ սակայն տեսանեմք թէ որպիսի հռետորաց եհաս վախճան, յորքան սակաւս իցէ յոյս, յորքան սակաւագոյնս մակացութիւն, յորքան բազումս զօրացաւ յանդուգն համարձակութիւն: Բայց քանզի ոչ ամենեցուն է և ոչ իսկ բազմաց, կամ իրաւագէտ լինել և կամ պերճախօս, սակայն օրէն է գործով օգտել բազմաց, շնորհս խնդրել վասն նոցա, ընծայեցուցանել դատաւորաց և ատենակալաց առաջի. տքնել վասն իրաց ընկերին, աղաչել և զնոսին իսկ՝ որք կամ խորհրդատու են և կամ ջատագով: Եւ ահա որք զայսպիսիկ առնեն՝ շնորհ յոյժ գտանեն, և ծովացեալ ծաւալի համբաւ նոցա:

Չէ ինչ հարկ յայսմ վայրի ազդ առնել նոցա, քանզի մեկին և յայտնի կայ առաջի, զգոյշ լինել անձանց զի մի՛ 'ի կամելն օգնել ումանց՝ զայլս դառնացուցանիցեն: Վասն զի բազում անգամ կամ այնոցիկ ստնանեն, որոց չէր պարտ, կամ այնոցիկ՝ որոց չէր հարկ: Եթէ յանգէտս, անզգուշութիւն է. եթէ գիտութք, յանդգնութիւն: Արժան է և ջերմեռանդութեամբ թողութիւն խնդրել՝ զորս ակամայ դառնացուցեր, ըստ կարի ցուցանելով՝ թէ ուստի հարկեցար զայդ առնել, և թէ չէր 'ի քո ձեռս այլազգ առնել. բայց զփոխարէնն այլոց գործոց և պաշտպանմանց պարտ է հատուցանել՝ որչափ ինչ խանգարումն եղև:

Ի. Այլ որովհետեւ 'ի տալ ձեան մարդկան՝ ամօթութիւն է կամ 'ի լաւութիւն նոցա հայել և կամ 'ի մեծութիւն, ապաքէն հեշտ է ասել, և այսպէս իսկ խօսին առ հասարակ, թէ մեք 'ի բարեբարեն հայիմք 'ի լաւութիւն մարդկան, և ոչ 'ի մեծութիւնն։ Արդարև զրոյց համեստ. այլ յայսր ամենայնի վերայ՝ ո՞ այն որ է՝ որ 'ի ձեռն տալ այլում՝ ոչ նախապատիւ արասցէ քան զդատ առն աղքատի և լաւագունի՝ զշնորհ մեծատան և հզօրագունի. վասն զի յաւէտ երևի լինել աջողագոյն և արագագոյն հատուցումն պարգևաց, 'ի նա անդր զոգցես առաւել հակամիտ են կամք մեր։ Այլ սպարտ է յուշ ածել խնամով զխոկն իրացս։ Իբր զի անգամն այն եթէ իցէ այր բարի, թէպէտ և չկարիցէ շնորհս հատուցանել, բայց անշուշտ կարօղ է շնորհ ունել։ Ի դէպ իսկ ասաց որ ասացն. Որոյ են դրամք, ոչ տայ, և որ կամի տալ, ոչ ունի. այլ զշնորհ՝ որ հատոյցն ունի, և որ ունի հատուցանէ։

Բայց ոյք զանձինս առ Ճոխս ունին և պատուականս և երանելիս, այնպիսիքն չկամին իսկ ընդ երախտեօք անկանել. մանաւանդ թէ երախտաւորս զանձինս զրեն՝ երբ ինքեանք լինին յօժարամիտ առնուլ որչափ և մեծ իցէ ինչ. և յաւելուն 'ի կասկածանս բերիլ՝ թէ գուցէ պահանջիցեն ինչ կամ ակն ունիցին փոխարինի յինքեանց. իսկ զկոչիլն յայլմէ պաշտպանութիւն գտեալ և հովանաւորեալ՝ մահ համարին անձանց։

Բայց անաւագն այն որովհետև զոր ինչ և ընդունիցի՝ այցելութիւն վարկանի անձին և ոչ մեծութեան արժանիք, ջանայ շնորհապարտ զանձն ցուցանել՝ ոչ միայն երախտաւորի իւրում՝ այլ և այնոցիկ յորոց ակն ունի ինքն. զի է բազմաց կարօտ։ Եւ ոչ իսկ բանիւք մեծացուցանէ զիւր պարգև՝ եթէ առնէ ինչ փոխարէնս, այլ փոքրկացուցանէ ևս։ Տես ինձ և զայն, զի թէ ըզՃոխն և զմեծատունն արդարացուսցես, 'ի միում անդ կամ թերևս 'ի զաւակս նորա զտեղի առնու շնորհդ. ապա եթէ զաղքատն, միայն թէ իցէ այր ընտիր և համեստ, ամենայն խոնարհք, ոչ չարքն (որոց բազմութ̃ի է յոյժ 'ի ժողովրդեան), ապաւէն պատրաստեալ ինքեանց զքեզ համարիցին։ Այսր աղագաւ լաւ ևս զանձեալ համարիմ զերախտիս առ լաւս՝ քան առ Ճոխս։

Ջանալ պէտք են յամենայնի զի մարթասցուք հաճել զամենայն ազգ մարդկան. բայց թէ ընդ խնդրով անկանիցին իրքդ, Թեմիստոկղեայ արդարև արժան է լինել նմանող. ցոր իբրև հարցին՝ թէ Որդեօք տան բարւոյ և աղքատի՞ ընտրէ տալ զդուստր իւր 'ի կնութիւն, եթէ մեծատան որ չար բարուք իցէ. ասէ, Լաւ է ինձ մարդ զուրկ յընչից՝ քան ինչք զուրկ 'ի մարդոյ։ Սակայն ապականեալ և խեղաթիւր բարք 'ի զարմացումն հարեալ են մեծութեանց. որոց առատութի զի՞նչ օգտէ միոյ միոյ 'ի մէնջ։ Թերևս օգտիցէ ստացողին. սակայն և ոչ այն միշտ. այլ գրեա թէ օգտիցէ. յիրաւի լինի նա ընչեղ. բայց լինիցի՞ և համնձարեղ։ Ապա եթէ իցէ և այր բարի, մի խափան լինիցին ինչքն առ 'ի նուաղել զօգնութիւն մեր 'ի նմանէ. միայն թէ և ոչ ձեռն տայցեն յառաւելութիւն. և եղիցի ամենայն պատասխան՝ ոչ ըստ հարստութեան տան այլ ըստ որպիսութեան։ Վերջին կանոն բարերարութեց և օգնականութեան ձեռին այն լինիցի՝ զի մի ինչ ընդդէմ հաւասարութեան վրձնեսցես 'ի դատս, և մի ինչ յանիրաւի. վասն զի հիմն ամենայն գովութեան և բարեհամբաւութեան արդարութիւնն է, առանց որոյ ոչ ինչ մարթի գովելի լինել։

ԻԱ. Այլ քանզի ասացաւ զայնմ ազգէ երախտեաց որ յանձն իւրաքանչիւր անկանիցեն, ժամ է այսուհետև ճառել զայլոցն որ հային առ բոլորեսին, և որ առ հասարակաց տէրութիւն։ Եւ 'ի սոցունց յայսցանէ կէս մի այնպիսիք են՝ որ առ համօրէն քաղաքացիս պատկանին, և կէս մի՝ որ առաւել հաճոյականք են, առ մի մի 'ի նոցանէ պատշաճին։ Որդ պարտ է ամենայնիւ փոյթ 'ի մտի ունել՝ եթէ հնար ինչ իցէ, բոլորից լինել օգտամատոյց, նա ևս ումանց. այլ այնպէս զի գործն այն կամ յօգուտ իցէ, և կամ գոնէ ոչ 'ի վնաս հասարակաց տէրութեան։ Կ. Գրակքոսի ցորենաբաշխութիւն էր յանչափս առատաձեռն, որով սպառէր զգանձն։ Չափաւոր էր Մ. Հոկտաւիոսին, դիւրատար տէրութեան, և [illegible] ժողովրդեան. և [illegible] փրկարար էր քաղաքացեաց և տէրութեան։

Եւ նախ պարտի աշ[illegible] լինել նա որ զտնտեսութիւն յանձին ունի հա[illegible]կաց տէրութեան, զի իւ-

ռաքանչիւր ոք զիւրն կալցի և ոչ լիցի նուազումն ընչից առն առն 'ի պէտս հասարակաց: Վասնզի մնասակար գտաւ Փիլիպպոս 'ի հազարապետութեան իւրում, յորժամ զանդաստանական օրէնս սահմանեաց. զի թէպէտ և ինքն դիւրաւ յանձն էառ զխափանումն նորին, և յայնժամ կարի չափաւոր զանձն եցոյց, այլ յատենաբանել անդ բազում ինչ ըստ օրինի խաժամուժին բարբառեցաւ, և չար ևս զայս բան. Չիք առէ 'ի քաղաքիս երկու հազար արանց՝ որ զինչս ունիցին: Մահառիթ բարբառ, և առ հաւասարութեան ընչից ասացեալ. և զինչ ախտ ժանտութեան մնասակարագոյն քան զայս: Զի վասն այդր իսկ տէրութիւնք հասարակաց և քաղաքք կանգնեցան առաւելապէս՝ որպէս զի այր իւրաքանչիւր զիւրն կալցի: Զի թէպէտ և առաջնորդութիւն բնութեան ժողով լինէր մարդկանն, բայց սակայն յուսով պահպանութեան ընչից իւրեանց խնդրեցին զամրութիւնս քաղաքաց:

Այլ ևս ջանալ պարտ է, զի մի, որպէս ստէպ լինէր առ նախնեօք մերովք առ նուազութե զանձուն և յաճախութեան պատերազմաց, հարկ լիցի հարկապահանջութիւն. այլ զի մի այդ լինիցի, բազմօք յառաջ պարտ է լինել նախատես: Ապա եթէ հարկ ինչ այսպիսի տրոց 'ի վերայ հասանիցէ իմիք տէրութեան, զի թէպէտ և առաւել զմերն խորհիմ, այլ ոչ զմերմէն խօսիմ՝ այլ զհամօրէն տէրութեանց, պարտ է գուն գործել զի ամենեքին 'ի միտ առնուցուն եթէ կեալ կամիցին՝ թէ հարկ է հնազանդիլ հարկաւորութեան:

Այլ դարձեալ տնօրէնք պետութեան պարտին ուշ ունել զի առատութիւն իցէ իրաց կարևորաց. իսկ թէ որպիսին ունի և սովոր է լինել պատրաստութիւն՝ չէ հարկ ասել, զի ըստ պէտս է. միայն հարևանցի զայս ասել 'ի դէպ վարկայ:

Որ գլուխ է յամենայն տնտեսութեան գործակալութեանց և պաշտամանց տէրութեան այն՝ զի 'ի բաց լիցի ազահութեանն դոյզն ինչ կասկած: Իցէ՛ թէ, ասէր սամնիացին Կ. Պոնտիոս, յայն ժամանակս զիս պահէր բախտն և յայնժամ ծնեալ էի՝ յորժամ Հռովմայեցիք սկսանէին երբէք կաշառս առնուլ. ոչ այնուհետև յերկար թողացուցանէի նոցա տիրել: Այլ և ոչ

դարուց բազմաց մնալ ունէր նա. զի ահա այժմ չարիքս այս զօրացան յայսմ տէրութեան: Վասն այն լաւ ևս եղև ըստ իս, զի Պոնտիոս յայնմ ժամանակի գտաւ, եթէ այնչափ զօրաւոր էր զօրութեամբ: Չև են ամք հարիւր և տասն յորմէ հետէ 'ի Ղ. Պիսոնէ օրէնք եդան կրկին պահանջման դրամոց. ուր ցայնվայր չէր լեալ երբէք: Այլ յետ այնորիկ այնչափ առաւելան օրէնք մի քան զմի խստագոյնք, այնչափ բազմացան յանցաւորք և յաճախեցին մահապարտք, այնչափ դրգռութիւն եղև իտալական մարտից առ երկիւղի դատաստանաց, և այնչափ կեղեքումն և գերփումն ընկերաց առ 'ի չգոյէ օրինաց և դատաստանաց, մինչ զի տկարութեամբ այլոց՝ և ոչ մերով զօրութեամբ եմք հզօրացեալք:

ԻԲ. Գովէ Պանետիոս զԱփրիկանոս առ ժուժկալութեանն. և զիա՞րդ գովեսցէ ոչ. այլ ևս մեծամեծք են 'ի նմա գործք: Վասն զի ժուժկալութեանն գովութի ոչ մարդոյն միայն է, այլ և ժամանակին: Ամենայն զանձուն մակեդոնացւոց, որ էր հարուստ յոյժ, տիրացաւ Պօղոս. այնչափ ինչ կուտեաց 'ի գանձարանս դրամոց, մինչ զի միոյ սպարապետի աւարաւն դադար եղև հարկաց: Բայց ինքն 'ի տուն իւր ոչ ինչ ած, բաց 'ի յաւերժական յիշատակէ անուան: Նմանող հօրն գտաւ Ափրիկանոս՝ ոչ ինչ աւելի հարստացեալ յետ քանդելոյ զԿարքեդոն: Եւ զի՞նչ ևս յաւելից. մինթէ գործակից նորա 'ի համարատուութեան, Ղ. Մումմիոս, աւելի՞ ինչ փարթամացաւ 'ի հիմն 'ի վեր տապալել զբազմահարուստն քաղաք[1]: Նա հաճեցաւ զԻտալիա զարդարել՝ քան զտուն իւր. թէպէտ և 'ի զարդարել Իտալիոյ, և տունն գլխովին թուի ինձ առաւել գեղազարդեալ:

Արդ դարձուցեալ զբանս ուստի խոտորեցաւ, չիք մոլութիւն վատթարագոյն քան զագահութիւն. մանաւանդ յիշխանս ղեկավարս տէրութեան հասարակաց: Վասն զի 'ի զօշաքաղութեան պէտս ունել զտէրութի ոչ միայն դժպատեհ է, այլ և ապիրատութիւն և ոճիր: Մինչ զի ուր Ապողոն պիւթիական պատգամ տայր՝ թէ ոչ այլով իւիք կործանել ունի Սպարտիա, բայց ագահու-

[1] Զկորնթոս զմայրաքաղաքն Աքայիոյ:

թէ, Թուի ինձ թէ ոչ վասն Լակեդեմոնացւոց միայն զայդ գուշակեալ իցէ, այլ և յաղագս ամենայն ազգաց փարթամաց: Նաև ոչ այլով իւիք դիւրագոյն մարթին յինքեանս յանկուցանել զսիրտ ժողովրդեան վերակացուք տէրութեան հասարակաց, որպէս սակաւապետութեամբ և ժուժկալութեամբ:

Նաև ողք բարեմարդիկ կամին լինել առ ժողովուրդն, և վասն այնորիկ կամ յանդաստանական իւրս ձեռնարկեն 'ի հանել զտեարս 'ի կալուածոց, կամ լաւ համարին զի շնորհեսցին պարտապանաց փոխք դրամոց, այնպիսիքն զհիմունս խախտեն տէրութեան հասարակաց. և նախ զմիաբանութիւնն, որում անհնար է կալ՝ ուր յոմանց կորզին և ոմանց շնորհին դրամք. և երկրորդ՝ զհաւասարութիւն՝ որ 'ի սպառ կործանի, եթէ չիցէ օրէն իւրաքանչիւր զիւրն ունել: Քանզի որպէս 'ի վեր անդր ասացի, այդ է սեպհական իսկութեան քաղաքի փոքու կամ մեծի, լինել ազատ, և ոչ երկեղաւկք պահպանութեան իրաց իւրաքանչիւր անձին:

Թող զի 'ի վնասել անդ հասարակաց տէրութեան՝ և ոչ այնմ շնորհի զոր կարծեն՝ հասանեն: Վասն զի յորմէ կապտեցան ինչքն՝ թշնամենայ, և որում տուան՝ կեղծաւորի գլխովլին՝ թէ իւր կամեցեալ իցէ առնուլ. Եւ առաւել 'ի փոխ առեալ դրամս պատրուակէ զիւր ուրախութիւն, զի մի երևեսցի թէ չունէր կամս վճարելոյ. իսկ որ զրկեցաւն, և յիշէ և յանձին երևեցուցանէ զցաւ իւր: Նաև եթէ բազումք իցեն որոց չարաչար տուաւ, քան այնոքիկ՝ յորոց յանիրաւի գրաւեցաւ, և ոչ պակասիկ բազմազօր ես լինին նոքին. զի ոչ 'ի թուոյն պարտ է չափել, այլ թէ որպիսիք ոմանք իցեն: Նաև զինչ այն արդարութիւն իցէ, զի զանդաստան յամաց բազմաց՝ գուցէ և 'ի դարուց հետէ ժառանգեալ, կալցի նա որում ոչն էր, և նա որում էրն՝ կորուսցէ:

ԻԳ. Յաղագս այսպիսի անիրաւութեան մերժեցին Լակեդեմոնացիք զԼիւսանդրոս պարետ. և որ ոչն էր յառաջագոյն լեալ երբէք առ նոսա՝ զԱգիս արքայ խողխողեցին. և յայնմ ժամանակէ հետէ այնչափ երկպառակութիւնք յաճախեցին հետ զհետէ, մինչև յարեան բռնաւորք և սպառսպուռ կորուսին զմեծամեծս, և կործան անկաւ պանծալին այն հասարակաց տէրութիւն:

Եւ ոչ նա միայն անկաւ, այլ և զմնացուածն Յունաստանի աւերեաց ժանտութեանցն շաղախմամբ, որ 'ի Լակեդեմոնացւոց սկիզբն առեալ՝ ընդ ամենայն կողմն ձարակեցան։ Եւ զի ասեմ զնոսա. ո՞չ և զմեր Գրակքոս զՏիբերեայ Գրակքոսի զառն մեծի զորդիս, զԱփրիկանոսի Թոռունս, կագք և կռիւք անդոց կորուսին։

Բայց իրաւամբք գովի Արատոս սիկիոնացի, որ 'ի ժամանակին յորում զքաղաք նորա բռնաւորք ունէին զամս յիսուն, երԹեալ յարգիացւոց քաղաքէ 'ի Սիկիոն, զանխուլ մտիւք տիրեաց քաղաքին։ Եւ յորժամ նկուն արար յանպատրաստից զՆիկոկղէս բռնակալ, զարձոյց անդրէն զվեցհարիւր արս յաքսորանաց՝ որք ձոխքն էին քաղաքին. և գալստեամբ իւրով ազատեաց զտէրութիւն հասարակաց։ Այլ իբրև ետես զմեծ կնձիռն խնդրոց ընչից և ստացուածոց, քանզի զնոսա զորս ինքն դարձոյց 'ի տեղիս իւրեանց, զորոց զինչս այլք էին ժառանգեալ, մնալ 'ի չքաւորութեան կարի դժպատեհ համարէր, և զյիսնամեայ ժամանակաւ ստացուածս խախտել ոչ կարի իրաւացի դատէր, վասն զի յայնչափ ժամանակս երկարութեան բազում ժառանգութիւնք, վաճառք և օժիտք 'ի ձեռս անկեալ էին առն առն առանց անիրաւութեան, 'ի դէպ վարկաւ՝ ոչ 'ի սոցանէ կապտել, և ոչ զնոսա որք բնիկ տեարքն էին՝ զուրկ Թողուլ։

Արդ 'ի մտի հաստատեալ եԹէ դրամոց պէտք են առ 'ի կարկատել զիրսն, ասէ. Կամիմ ես յԱղեքսանդրիա ելանել, և 'ի դարձին իմում իրքդ ասցեն զկատարումն։ Ապա յարուցեալ փութապէս գայ առ ասպնջական իւր Պտղոմէոս, այն որ երկրորդ Թագաւոր էր յետ շինութե քաղաքին Աղեքսանդրացւոց. և իբրև յայտ արար նմա եԹէ զհայրենիսն խորհի ազատել և զպատճառն զեկոյց, դիւրաւ ընկալաւ զայս շնորհ այնն մեծ 'ի հարուստ Թագաւորէ անտի, զի ձեռնտու լիցի նմա առատ դրամովք։ Եւ իբրև առեալ եբեր 'ի Սիկիոն, 'ի խորհուրդ կոչեաց հնգետասան իշխանս. ընդ որս հետազօտեաց զպատճառս նոցա՝ որք զօտարինն ունէին, և նոցա որք զիւրեանցն էին կորուսեալ։ Եւ սակարկեալ զգնոց կալուածոցն, կիսոց հաւանեցոյց զի յանձն առցեն առնուլ զդրամ՝ հրաժեշտ տուեալ 'ի կալուա-

ծոց. և այլոց՝ զի հաճեսցին ընդ վճարումն ինքեանց այսչափ դրամոց որչափ տեղիք իւրեանց արժէին, քան զգրաւումն անողորմ զիւրեանցն: Նա և այսպէս յանկ ելեալ իրացն՝ զօդիւ միաբանութեան կապեալք անտրտունջ մեկնեցան ամենեքին:

Բա՛բէ մեծի առնս, որում արժան էր 'ի մերումս տէրութեան ծնանել: Այսպէս անկ է վարիլ ընդ քաղաքակիցս, և ոչ՝ որպէս երկիցս տեսաք ցարդ՝ տիգաբուն հարստել 'ի հրապարակի, և զինչս քաղաքացւոց ներքոյ արկանել մունետիկաց ձայնի: Բայց նա այր հելլենացի 'ի դէպ վարկաւ, (որպէս անկ իսկ է առն իմաստնոյ և պանծալւոյ,) զամենեսեան հաճել. և այդ իսկ է կատարեալ հանճար և իմաստութիւն բարի քաղաքացւոյ՝ չեղծանել զշինուածն քաղաքակցաց, և զամենեսին 'ի մի և 'ի նոյն արդարութեան ածել: Մարդիկ անօրժէնք զի բնակեսցեն անվարձ յօտարինն: Իսկ զիա՞րդ. ես գնեցի, շինեցի, պահեցի, ծախեցի. դու ընդդէմ իմոցս կամաց յիմոս վայելիցես: Ի՞ւ զանազանիցի յոմանց զիւրն յափշտակել, և ոմանց զօտարինն տալ:

Նա նոր իսկ տախտակք օրինադրութեանց՝ զինչ ակնարկիցեն, բայց զի դու զետին գնեսցես իմովս դրամով, ստասցիս դու զնոյն, ես ոչ ստացայց զիմ դրամս:

ԻԴ. Վասն որոյ պարտ է արթուն կալ՝ զի մի լիցի դրամ օտար վնասակար տէրութեան հասարակաց, յորմէ բազում օրինակաւ լինի զգուշանալ. և ոչ լինիցի փարթամաց կորուսանել զիւրեանցն, և պարտապանաց շահել զօտարինս: Զի ոչ ինչ այլ քաջ պարսպեալ պահէ զհասարակաց տէրութիւն իբրև զհաւատարմութիւնն. իսկ այսմ անհնար է կալ երբէք՝ եթէ ոչ հարկ համարեսցի հատուցումն փոխոյն առեցելոյ: Ոչ երբէք այնպէս սաստիկ յուզեցաւ այս խնդիր, որպէս յիմումս հիւպատոսութեան, զի մի լինիցի հատուցումն. զինուք գոգցես և ճակատուք ճգնեցան մարդիկ յամենայն ազգէ և 'ի վիճակէ. որոց այնպէս զդէմ կալայ, զի չարիքս այս մեծ բարձցի 'ի տէրութենէ հասարակաց: Ոչ երբէք այնչափ բազմացեալ էր դրամ օտար, և ոչ լաւ և դիւրին վճարումն երբէք եղեալ է: Վասն զի ընդ կալ-

1 Զոր հրատարակեցին վասն ազատ առնելոյ 'ի պարտուց:

ձեւ յուսոյն խորելոյ, զհետ եկն հարկն վճարելոյ։ Բայց
այժմուս այս յաղթող[1], որ յայնժամ յաղթեալ, զոր
խորհեցայն էր կատարեաց. այլ ոչ եթէ արդ պէտք ինչ
էին նմա։ Ընչափ բերէր 'ի մեղսասիրութիւն, զի
սոյն այս եւեթ մեղանչելն հեշտալի էր նմա, թէեւ ան-
պատճառ։

Արդ վերակացուք տէրութեան հասարակաց հեռի
լիցին յազգէ այտի առատաբաշխութեան, կիսոց տալ
յայլոց կորզել. եւ յառաջ քան զամենայն փոյթ կալցին
զի արդարութեամբ իրաւանց եւ դատաստանաց իւրա-
քանչիւր ոք զիւրն կալցի։ Եւ անաւագք դաւաճանեսցին
առ նուաստութեան, եւ ոչ փարթամաց ստնանիցեն մա-
խանք՝ ունել զիւրեանցն կամ անդրէն զլուամբ ածել։
Եւ դարձեալ որով օրինակաւ եւ ձեռնհաս իցեն՝ եթէ
'ի պատերազմի եւ եթէ 'ի տան, բարգաւաճ առնիցեն
զհասարակաց տէրութիւն իշխանութեամբ, ագարակօք
եւ հասիւք։ Այս գործ է արանց մեծամեծաց, այս էր
յաճախեալ առ առաջնովք մերովք. եւ որ միանգամ
այս ազգ պատշաճից զհետ երթան, թող զօգուտն հա-
սարակաց զմեծ, շնորհս եւ փառս ստասցին եւ ինքեանք
մեծապէս։

Ի կանոնս օգտակարութեանց Անտիպատրոս տիւրա-
ցի ստոյիկեան, որ այն ինչ մեռաւ յԱթէնս, զերկուս
համարի 'ի բաց թողեալ Պանետիոսի զհոգ առողջու-
թեան եւ դրամոց. այլ որպէս ինձ թուի, խորհրդով
զանց արար զնոքօք կատարեալ իմաստասէրն, իբրեւ ըղ-
դիւրագոյնիւք։ Օգտակարք են արդարեւ, բայց առող-
ջութիւնն դարմանի ծանօթութեամբ իւրական մար-
մնոյ, եւ զգուշութեամբ, որ այն իրք ընտելեալ իցեն
օգտել կամ վնասել, եւ ժուժկալութբ 'ի կերակուրս
եւ 'ի սպասս որ 'ի պէտս դարմանոյ մարմնոյն. եւ անձնա-
պահ լինելով 'ի հեշտալեաց, եւ 'ի վերայ ամենայնի ար-
հեստիւ այնոցիկ՝ որոց գիտութեան անկ են այդոքիկ։

Իսկ զառանձնական ինչս պարտ է շահել այնպէս՝
յորում չիցէ կծծութիւն. եւ պահպանել խնամով եւ
խնայութեամբ, որովք լինի եւ աճումն։ Ըստ կարգի ճա-
ռեաց զկրացս Քսենոփոն սոկրատեան 'ի գիրսն անդ,

1 Յուլիոս Կեսար։

որ մանկագրի տնտեսական, զոր մեք յայնմ գոգցես հասակի՝ յորում դուդ այժմ գտանիս՝ 'ի յունէ 'ի լատինն յեղաք ։

ԻԵ. Այլ օգտակարացն համեմատութիւն, քանզի այս է մասն չորրորդ՝ զորով զանց արար Պանետիոս, բազում անգամ գայ 'ի պէտս ։ Վասն զի սովորութիւն է համեմատել զմարմնոյ դիւրութիւնս ընդ արտաքինս, և զարտաքինս ընդ մարմնոյն . և դարձեալ զմարմնոյս ընդ մարմնոյն, և զարտաքինս ընդ արտաքնոցն ։ Ընդ արտաքնոցն մարմնոյքն բաղդատին օրինակ զայս . Ո՞ղջ լինել կամիս եթէ ճոխ ։ Ընդ մարմնոյն արտաքինքն այսպէս . Ճո՞խ լինել ընտրես եթէ ուժեղ ։ Մարմնոյքն ընդ միմեանս այսպէս . Քաջողջութիւնն նախապատիւ է քան զհեշտութիւնս՝ և զօրութիւնն քան զարագըն-թացութիւն ։ Եւ արտաքինքն ընդ իրեարս՝ զոր օրինակ . Լաւ են փառք քան զմեծութիւնս, և քաղաքական հարք քան զգեղջկականս ։

Յայս ազգ բաղդատութեան հայի բանն այն Կատովնի առաջնոյ . որ իբրև հարցաւ՝ թէ Ո՞ր լաւ իցէ յատտնին ինչս, ետ պատասխանի . Հարուստ խաշնադարման լինել ։ Եւ զի՞նչ զկնի նորա երկրորդ . ասէ . Բարեկեցիկ խաշնադարման լինել ։ Եւ զի՞նչ երրորդ . Աղքատիկ խաշնադարման լինել ։ Իսկ զի՞նչ չորրորդ . Արօրադիր լինել ։ Եւ յորժամ հարցօղն ասաց, Զի՞նչ ապա վաշխառուն լինել, յայնժամ Կատոնն . Զի՞նչ ապա ասէ, մարդասպան լինել ։ Աստի յայսմանէ և յայլ ևս բազմաց պարտ է իմաստասիրել՝ թէ օրէն է բաղդատութիւն առնել 'ի մէջ երկուց օգտակարաց, և թէ իրաւամբք յաւելաւ 'ի մէնջ 'ի խնդիրս՝ այս չորրորդ ազգ պատշաճից ։

Այլ յաղագս բովանդակ այդր խնդրոյ, վասն շահելոյ և 'ի շահու զդրամն դնելոյ, որպէս և 'ի կիր արկանելոյ լաւ ևս ճառեն ոմանք 'ի լաւ արերոյ՝ որ նստին 'ի միջավայրս Յանոսի[1] քան եթէ 'ի փիլիսոփայից ոք 'ի դպրատան ուրեք ։ Բայց սակայն գիտելոյ արժանի են, քանզի պատշաճին առ օգտակարութիւն, զորմէ յայս գիրս ճառեցաւ ։ Անցցուք 'ի մնացորդս բանից ։

1 Ի միջավայր հրապարակին էր պարտատեարք և վաշխառուք ։
տաճար Յանոսի, ուր ժողովէին

## ՄԱՐԿՈՍԻ ՏՈՒԼԼԻՈՍԻ
## ԿԻԿԵՐՈՆԻ
# ՅԱՂԱԳՍ ՊԱՇՏՕՆԻՑ
## ԱՌ ՄԱՐԿՈՍ ՈՐԴԻ ԻՒՐ



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

Ա. ՊՈՊԼԻՈՍ Սկիպիոն, Մարկոս որդեակ, այն որ նախ ընկալաւ զԱփրիկեցին անուն, սովոր էր ասել ըստ գրելոյ Կատոնի զօդ ժամանակակցի. Ոչ երբէք այնպէս եղէ անպարապ, որպէս յորժամ պարապեալ գտայ 'ի հանդարտութեան. և ոչ այնպէս հեռի 'ի միայնութենէ, որպէս յորժամ միայնացեալ նստէի: Արդարև մեծավայելուչ բարբառ, և մեծի առն և իմաստնոյ արժանաւոր. որ է յայտարար՝ թէ նա սովոր էր և 'ի հանդարտութեան խորհել զգործոց գործելեաց, և յառանձնութեանն անձամբ անձին լինել խօսակից. մինչև չտալ դուլ և դադար անձին, և չկարօտել երբէք լինել խօսակից ընդ այլում: Նա այսպէս երկուք այնոքիկ, որք ձանձրոյթ ծնանին այլոց, զարթուցիչք էին նորա. պարապորդութիւն և առանձնութիւն: Կցէ՛ թէ և մեզ օրէն լինէր զնոյն երկրորդել ստուգութեամբ. բայց թէ վերջանամք նմանող լինել հասանել յայդ գերապանծ ուշիմութիւն, այլ յօժարութեամբ մերձագոյնս մատչիմք: Քանզի և 'ի հասարակաց տէրութենէ և յատենական զբաղանաց, անօրէն զինուք և

բռնութեամբ արգելեալք՝ հանդարտութեան պարապեմք. և 'ի պատճառս այդպիսի թողեալ զքաղաք և 'ի գիւղս յածեալ՝ բազում այն է զի միայնացեալ գտանիմք ։

Բայց ոչ հանդարտութիւն մեր այս ընդ Ափրիկեցւոյն հանդարտութեան, և ոչ միայնութիւնս ընդ նորայումն 'ի բաղդատութիւն ածիցի երբէք ։ Քանզի նա 'ի հանգիստ բերեալ, 'ի մեծապատիւ գործակալութեանց տէրութեան հասարակաց՝ պարապ առնոյր առ ժամանակ մի, և յամբոխէ մարդկան և 'ի խուռն խուժելոյն իբրև 'ի նաւահանգիստ զանձն պատսպարէր 'ի միայնութիւն առ ժամն ։ Իսկ մերս հանդարտութիւն առ 'ի չգոյէ գործոց՝ և ոչ 'ի փութոյ հանգստեան պատրաստեցաւ ։ Վասն զի յետ ծերակուտին չիջանելոյ և ատենի դատաստանաց ընաբարձ լինելոյ, զինչ վայելչական մեզ մարթասցուք առնել կամ 'ի դրան, կամ 'ի հրապարակ ատենի ։

Ահա այսպէս՝ որ երբեմն մեծաշուք և նազելի յաչս քաղաքակցաց կեանս կէաք, արդ փախուցեալք 'ի տեսութենէ չարագործաց՝ որովք լի են վայրք ամենայն, թաքուցաք զանձինս ըստ կարի, և բազում այն է զի միայնիկ նստիմք ։ Բայց քանզի այսպէս ընկալաք յարանց գիտնաւորաց՝ թէ ոչ միայն 'ի չարեաց զփոքրագոյնս ընտրել պարտ է, այլ և 'ի չարէ անտի քաղել՝ եթէ կայցէ մասն բարւոյ, սորին աղագաւ և 'ի հանդարտութեան վայելեմ, թէպէտ և ոչ յայնմ՝ որ պարտն էր առն որ երբեմն հանդարտութիւն ծնաւ քաղաքին. և ոչ թողացուցանեմ անգործ զմիայնութիւնս զայս՝ յոր բերեալ եմ 'ի հարկէ և ոչ կամօք ։

Միայն թէ Ափրիկեցին և ըստ իմոց խոկ կարծեաց առաւել գովելի գտանէր. զի չիք նորա յիշատակ ինչ ուշիմութեան գրաւոր, և ոչ գործ ինչ պտուղ հանդարտութեան, և ոչ արգասիք միայնութեան. յորմէ պարտ է 'ի միտ առնուլ՝ թէ նա զննութեամբ իւրացն զօրս մտածութեամբ գտանէր, ոչ պարապորդ և ոչ միայնիկ գտաւ երբէք ։ Իսկ մեք՝ որ ոչ այնպիսի ունիմք զօրութիւն զի լռիկ մտածութեամբ զերծ լիցուք 'ի միայնութենէ, զամենայն փոյթ և զջան դարձուցաք յերկասիրութիւն գրութեանս. մինչ զի յոլովագոյնս

'ի սուղ ժամանակի գրեցաք՝ յետ բարձման տէրութեան հասարակաց, քան 'ի բազում ամս 'ի կալ մնալ նորա։

Բ. Այլ զոր օրինակ բովանդակ իմաստասիրութիւն, Կիկերոնդ իմ, է արդիւնարար և պտղաբեր, և ոչ մի կողմն նորա է խոպան և ամայի, սոյն օրինակ չէք և ոչ մի մասն 'ի նմա այնչափ բերրի և արգաւանդ, որպէս անդանօր յորում յաղագս պատշաճից. յորոց առեալ լինին կանոնք զգօն և հաստատ կենաց։ Սորին վասն թէպէտ և վստահ եմ՝ թէ դու համապատգործ լսես և ընդունիս զայսոսիկ 'ի Կրատիպպոսէդ մերմէ՝ յիմաստասիրապետէ, բայց յօգուտ լինել համարիմ, զի այսպիսի ձայնք յամենայն կողմանց հնչեսցեն շուրջանակի յականջս քո. և եթէ հնար ինչ է՝ ոչ ինչ այլ լուիցեն քո լսելիք։ Զոր որպէս ամենեցուն արժան է առնել՝ որ մի անգամ մտանել խորհին 'ի հաստատութեան վարս, նոյնպէս և չունիմ ասել՝ եթէ ումեք աւելի արժան իցէ քան քեզ։ Վասնզի յանձին բերես ակնկալութիւն ոչ սակաւ նմանող լինելոյ մերում ջանատարութեան և մեծ պատուոյ և բարձի, և մեծի արդարև անուան։ Ընդունեալ ունիս և ես զբեռն ծանր եթէ զԱթէն քաղաքի և եթէ զԿրատիպպոսի. և զի առ սոսա ընթացար իբրև 'ի թանգարան վաճառաց ազնիւ արհեստից, թափուր յետս դառնալ յոյժ է անտեղի, որ անպատիւ առնէ զպարդ անուան և քաղաքիդ և վարդապետիդ։ Վասն որոյ որչափ և կարող ես ժրաջան լինել 'ի սրտէ և ջգնել աշխատութեամբ, (եթէ իցէ աշխատութիւն ուսումն. և ոչ հեշտութիւն,) արա զի ժամանեսցես 'ի կատարելութիւն. և զի ամենայն 'ի մեր կողմանէ 'ի քո սակս տնտեսեցաւ, մի թողուցուս երևել դու քեզէն պակասեալ։ Այլ այսօքիկ այսքան. զի բազում ինչ բազում անգամ գրեցի քեզ 'ի յորդոր։ Այժմ 'ի մնացուածոյ մասն նախակարգեալ բաժանմանս եկեսցուք։

Արդ Պանետիոս, որ առանց ընդ բանս ինչ ածելոյ անվրէպ ճառեաց զպատշաճից, որում և մեք առաւելապէս՝ յաւելուածով իմն ուղղագրութեան զհետ չոգաք, առաջի արարեալ զերիս տեսակս յորս բնաւորեալ են մարդիկ խորհել և խելամուտ լինել յաղագս պատշաճից, առաջին յերկուանալ անդ թէ արդեօք

համեստ իցէ այն զորմէ է բանն, եթէ անարգ. երկրորդ՝ օգտակա՞ր իցէ եթէ անօգուտ. երրորդ՝ համեստ երևեալն եթէ հակառակ ելանիցէ օգտակար թուեցելոյն, որո՞վ օրինակաւ պարտ իցէ որոշումն առնել նոցա. զերկուսին զառաջինն տեսակս յերիս գիրս բացատրեաց. իսկ զերրորդէն ասէ գրել զկնի. բայց ոչ կատարեաց՝ զոր խոստացաւն: Ընդ որ այնչափ առաւել զարմանամ, որչափ զի գրէ աշակերտ նորա Պոսիդոնիոս՝ թէ երեսուն ամ եկեաց Պանետիոս յետ 'ի լոյս հանելոյ զայն գիրս: Եւ զարմանամ, զի զայս տեղի, ինքն Պոսիդոնիոս կարճ 'ի կարճոյ նշանակէ 'ի յիշատակարանս ուրեք. մանաւանդ զի գրէ թէ չիք մասն այլ 'ի բովանդակ փիլիսոփայութեան այսչափ հարկաւոր:

Եւ չեմ հաւան ընդ նոսա որք ժխտեն եթէ Պանետիոս զանց արարեալ իցէ զայնու մասամբն, այլ համարին խորհրդով 'ի բաց թողեալ, զի և ոչ իսկ բնաւ մարթ էր գրել. քանզի ոչ երբէք կարէ ասեն օգտակարն հակառակ ելանել համեստի: Յորոց յետինն մարթի անկանել ընդ երկբայութեամբ՝ թէ արժա՞ն իցէ արդեօք յառաջ բերել զայդ տեսակ՝ որ երրորդ է 'ի բաժանման Պանետիոսի, եթէ 'ի սպառ զանց առնել. իսկ առաջինն է աներկբայելի՝ թէ Պանետիոս յանձին կալաւ գրել, բայց եթող: Զի որ յեռամասնեայ բաժանմանէ անտի զերկուս կատարեաց մասունս, հարկաւ կայր մնայր նմա երրորդն: Թող զի 'ի կատարած երրորդի գրոցն խոստանայ ասել այնուհետև զերրորդ մասնէ անտի:

Ակայէ այսմ ձոխագոյն և Պոսիդոնիոս, որ յաւելու գրել 'ի նամակի ուրեք թէ Պ. Ռուտիլիոս Ռուփոս՝ որ աշակերտեալն էր առ ոտս Պանետիոսի, սովոր էր ասել. Զի որ օրինակ ոչ ոք գտաւ 'ի պատկերահանից որ զառ 'ի Ապեղեսէ սկսեալ և թողեալ զմասն զայն Ափրոդիտեայ կովացւոյ՝ աւարտեսցէ, վասն զի գեղեցկութիւն բերանոյն անյոյս առնէր զնոսա 'ի նմանեցուցանել զմնացեալ մարմինն, ըստ նմին օրինակի զոր միանգամ Պանետիոս զանց արար և ոչ կատարեաց, ոչ ոք յառաջ տարաւ, առ գերազանցութեան կատարելոցն 'ի նմանէ:

Գ. Յայս սակս անմարթ է երկբայել 'ի վերայ մտաց Պանետիոսի. այլ թէ իրաւամբք արդեօք մերժեաց զեր-

րորդ զայս մասն 'ի խնդիր պատշաճից եթէ ոչ, զայդմանէ թերևս մարթի վէճ լինել։ Վասն զի եթէ համեստն միայն իցէ բարի, որպէս հաճոյ թուի ստոյիկեանց. և եթէ այնպէս ծայրագոյն բարի իցէ համեստն, մինչ զի՝ որպէս կարծեն մերքն ձեմականք՝ այլ ամենայն ինչ 'ի միւս կողմն եղեալ և ոչ մէտ մի համարեալ է, ոչ մնայ տարակոյս՝ թէ ոչ երբէք մարթին հակառակել իրերաց օգտակարն և համեստն։ Եւ ըստ այսմ ըսեմք՝ թէ սովոր էր Սոկրատէս զարշել 'ի նոցունց՝ որք զառաջինն երկփեղկեցին կարծեօք զայսոսիկ 'ի բնէ զօդեալս։ Որում այնպէս ձայնակից են Ստոյիկեանք, մինչև դնել՝ թէ որ ինչ է համեստ նոյն և օգտակար, և չիք ինչ օգտակար որ չիցէ համեստ։

Օ ի թէ այնպիսի ոք լինէր Պանետիոս, որ զառաքինութիւնն յայն սակս ասէր պատուական՝ վասն զի է օգտաւէտ, որպէս այնոքիկ որ զցանկալիս չափեն կամ 'ի հեշտութենէ կամ յանցաւութենէ, 'ի դէպ էր նմա ասել՝ թէ օգտակարութիւնն հակառակ երբեմն ելանէ համեստութեան։ Այլ քանզի սա զայն միայն բարի վարկանի՝ որ համեստն իցէ. և որք ամին ընդդէմ ելանեն կերպարանօք ինչ օգտակարութեան, ոչ յաւելուածով նոցա համարի լաւագոյն կենաց հանդիպեալ, ոչ պակասելովն՝ վատթարագունի, ապա և չէր նմա պարտ զայնպիսի մտածութիւն 'ի ներքս մուծանել, յորում 'ի բաղդատութիւն ածցի գրեալն օգտակար ընդ համեստի։

Քանզի վերաձայնեալն 'ի Ստոյիկեանց Ծայրագոյն բարի ըստ պատշաճի կեալ բնութեան, ինձ թուի՝ զայս ընծայեցուցանել միտս. միաձայնիլ ընդ առաքինութեան միշտ. իսկ զայլ ինչ իրս՝ որ ըստ բնութեան իցեն, այնպէս ընտրել առնուլ՝ զի ոչ հակառակ ելցեն առաքինութեան։ Եւ զի այս այսպէս է՝ ասեն ոմանք, ապա ոչ ուղիղ 'ի վերայ ածի բաղդատութիւնդ այդ, և ոչ օրէնս ինչ է զայս ազգ կանոնս աւանդել։ Եւ համեստն այն տիրապէս և ստուգապէս անուանեալ, յիմաստունս է և եթ, և ոչ երբէք մարթ է զատանել զայն յառաքինութենէ. իսկ յորս իմաստութիւն չէ կատարեալ, չէ և. չէ 'ի նոսա և կատարեալ համեստութիւն. միայն պատկեր իմն կարէ լինել համեստութեան։

Եւ այսպէս զայս ամենայն պատշաճ գործս զորոց 'ի

մատենի աստ ճառեմք, Ստոյիկեանք Միջասահմանա ձայնեն, զի են հասարակք և յայտնիք. որոց և քաջուշիմութեամբ և ուսմամբ հասու լինին բազումք։ Իսկ պատշաճն այն զոր և նոքա Ուղղութիւն կոչեն, կատարեալ է և լցեալ. և որպէս նոքա ասեն, ամենայնն թուովք բոլորեալ է. և ոչ ունեք երբէք անկ՝ բայց միայն իմաստնոյ։

Այլ յորժամ գործի ինչ յորում երևեցին միջասահման պատշաճութիւնք, այդ առաւելութեամբ առ աչս երևի կատարեալ. քանզի ումիկն զրեթէ չիմանայ՝ որով պակասի առ կատարեալն. և որչափ ինչ իմանայ, այնու ոչ ինչ պակաս լինել կարծէ։ Այդ և 'ի քերթուածս և 'ի նկարս հանդիպի, և յայլ ինչ բազում. զի տգէտք զմայլին և գովեն զոչն գովելիս, թուի ինձ վասն այն, զի գտանի յայնոսիկ ինչ մի լաւ, որ զօշոտէ զաչս տխմարաց, որք անկարողք են դատել զպակասութեանց յիրս իւրաքանչիւր. այլ յորժամ ուսանին 'ի գիտնոց; դիւրաւ 'ի բաց կան 'ի կարծեաց անտի։

Դ. Այս ահա զպատշաճսդ, զորոց խօսիմք 'ի գիրս յայսոսիկ, իբրու երկրորդական իմն համեստ ասեն լինել՝ ոչ իմաստնոց ևեթ սեպհական, այլ համօրէն ազգի մարդկան յանկաւոր. մինչ զի ամենեքին յորս իցէ բնաւորութիւն առաքինութեան, շարժին տքիմքք։ Այս ոչ իսկ՝ յորժամ երկու Դեկոսք, կամ երկու Սկեպիոնք, որք քաջք յիշատակին, կամ յորժամ Փաբրիկիոս և Արիստիդէս արդարք անուանին, և օրինակ 'ի մէջ բերի կամ արիութեան 'ի նոցանէ, կամ արդարութեան 'ի սոցանէ՝ իբրև յիմաստնոց։ Օի ոչ ոք 'ի դոցանէ է իմաստուն այնպէս, որպէս կամք են մեզ իմանալ զիմաստունն։ Այլ ոչ նոքին գլխովին որք կարծեալ և անուանեալ իմաստունքն էին, Մ. Կատոն, և Կ. Լելիոս, իմաստունք գտան. ոչ և նոքին իսկ եօթանք[1]. այլ 'ի յաճախութենէ անտի միջասահման պատշաճիցն, յանձին բերէին զպատկեր իմն և զկերպարանս իմաստնոց։

Վասն այնորիկ ոչ զայն ինչ որ ճշմարտապէս համեստն իցէ, օրէն է 'ի բաղդատութիւն ածել ընդ դի-

[1] Եօթն իմաստասէրք Յունաստանի։

[ան]միաբանութեան օգտակարին. և ոչ զայն զոր ընդհանա-
[ր]ապէս համեստ կոչեմք, այն իսկ է զոր յարգեն որք
[...]գամ կամին այր բարի երևել, արժան է 'ի բաղ-
դատութիւն բերել երբեք ընդ շահաւէտութեան: Նո-
[յնպ]էս մեզ պարտ է հոգալ և պահել զհամեստն զայն
[զոր]ում հասու լինիմք, նոյնպէս և իմաստնոց զայն՝ որ
տիրապէս ասի և է ստուգապէս համեստ: Զի չէ մարթ-
այլ ազգ կալ 'ի նմին՝ եթէ լեալ իցէ յառաջադիմութիւն
ինչ յառաքինութեան: Արդ այսոքիկ յաղագս նոցա՝
որք պահպանութեամբ պատշաճից արք բարիք ճանաչին:

Իսկ որ միանգամ զամենայն ինչ շահատացութեամբ
և անձնդիւրութեամբ չափեն, այլ ոչ կամին ծանրա-
կշիռ դնել զօգուտն քան զհամեստութիւն, այնպիսիքն
սովոր են 'ի մտածութեան 'ի բաղդատութիւն դնել զհա-
մեստն ընդ օգտակարին. բայց արք բարիք ոչ ընտու-
րեցան զայդ առնել: Վասն որոյ ինձ այսպէս թուի, թէ
Պանետիոս յասել անդ՝ եթէ սովոր են մարդիկ երկուա-
նալ յայդմ բաղդատութեան, զայն միտս էր որպէս թէ
ասել. սովոր են միայն, բայց ոչ եթէ պարտին առնել:
Վասն զի ոչ միայն առաւել համարել զօգտակարն քան
զհամեստն՝ անտեղի է յոյժ, այլ և բաղդատելն զկնովին
զայսոսիկ և երկմտել յայնս: Զիա՞րդ ապա երբեմն
տարակոյս 'ի մէջ բերել սովորեալ էր, որ և արժանի
թուէր զննութեան: Ինձ այսպէս թուի, որպէս 'ի
լինել երկմտութեան երբեմն, եթէ որպիսի՞ ինչ իցէ
այն՝ զորմէ կամիցիմքն խորհել:

Վասն զի յաճախ ժամանակաւ դէպ լինի՝ զի որ յա-
ռաջին դժպատեհ բազմաց թուէր, չլինի դժպատեհ:
Դիցուք մերձ զօրինակն որով յայտնագոյնս ծանիցի:
Զինչ այլ ապիրատութիւն մարթի լինել մեծագոյն՝
որպէս սպանանել զոք 'ի մարդկանէ, ևս առաւել ընտա-
նի զոք: Արդ միթէ ապիրա՞տ գտաւ, եթէ ոք սպանող
եղև բռնաւորի, թէպէտ և ընտանւոյ: Ոչ այդպէս թուի
ժողովրդեանն Հռովմայ, որ օրինակաւ երևելի երևե-
լի գործոց քաջութեան կարի իսկ վայելչական զիրսդ
գրէ: Յաղթեաց ուրեմն համեստութեան օգտակարու-
թիւնն. մանաւանդ թէ համեստութիւնն հետևորդ
գտաւ օգտակարութեան:

Արդ առ 'ի կարող լինելոյ անմոլար դատաստան առ-

նել, ուր ուրեք հակառակել երևեսցի անուանեալն 'ի մէնջ օգտակար ընդ այնմ զոր համեստ դատիմք, պարտ է սահմանել կանոն ինչ՝ որում եթէ զհետ գնասցուք 'ի բաղդատութեան իրացս, ոչ խոտորեսցուք երբէք 'ի պատշաճից ։

Այս եղիցի կանոնդ այդ առաւել միաբան ընդ բանի և ընդ վարդապետութե Ստոյիկեանց. որում յայն սակս հետևող լինիմք 'ի մասնենի աստ, զի թէպէտ և ըստ հին ակադեմեանց և ըստ մերոցս ճեմականաց՝ որ երբեմն նոյն էին ընդ ակադեմեանս, համեստըն նախապատիւ համարեալ լինին քան զերևեալսն օգտակարս, բայց յստակագոյն ևս ճառեն զիրացդ նոքա՝ որոց առաջի որ համեստն է՝ նոյն և օգտակար համարեալ է, և որ չիցէ համեստ՝ այն և ոչ օգտակար, քան զնոսա ըստ որոց է՛ համեստ ինչ անօգուտ, կամ օգտակար ինչ անհամեստ ։ Այլ մեզ մերս ճեմարան համարձակութի տայ մեծ՝ զի որ ինչ առաւել հաւանելի ընդ առաջ ելանէ, օրէն իցէ մեզ անձնիշխանաբար ջատագովել ։ Այլ 'ի կանոն անդր եկից ։

Ե. Արդ յափշտակել ինչ յումեքէ, և առն եղբօր իւրոյ վնասու զիւր օգուտն յաճախել, առաւել հակառակ է բնութեան քան զմահ, քան զաղքատութիւն, կամ զցաւ և կամ այլ որ ինչ միանգամ արկածք մարմնոյ կամ արտաքին իրաց. վասն զի անդէն բառնայ զկենակցութիւն մարդկային և զընկերութիւն ։ Զի եթէ յայն միտս իցեմք հաստատեալ եթէ առ իւրոյ օգտի այր իւրաքանչիւր կողոպտեսցէ կամ յապականութիւն դիցէ զայլ ոք, հարկաւ քակտի այն որ առաւել է ըստ բնութեան, այս է ընկերութիւն մարդկային ազգի ։

Զոր օրինակ եթէ իւրաքանչիւր ոք յանդամոց յայն խորհուրդ մտաբերէր, կարծեալ կարել զօրանալ եթէ զմօտակայ անդամոյն զառողջութիւն յինքն փոխանցեսցէ, հարկ լինէր ողջոյն իսկ մարմնոյ տկարանալ և կորնչել. սոյնպէս եթէ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ յինքն յափշտակեսցէ զայլոց դիւրութիւնս՝ կորզեալ զոր ինչ և կարէ 'ի միոյ միոյ առ իւրոյ շահաւորութեան, հարկ է հիմն 'ի վեր տապալել ընկերութեան և միաբանութեան մարդկան ։ Քանզի այն զի իւրաքանչիւր ոք առաւել յօժարեսցի անձին՝ քան այլում շահել զպէտս

կենցաղոյս, այդ նեղեալ է, և ոչ հակառակ բնութեան. բայց ոչ տանի բնութիւնն զայդ, զի այլոցն աւարօք յաճախեսցուք մեզ զգոյս, զիշխանութիւնս և զհարստութիւնս:

Եւ այս ոչ եթէ 'ի բնութենէ ևեթ, այս է յիրաւանց ազգաց, այլ և յօրէնս ժողովրդոց՝ որ 'ի տէրութիւն քաղաքի քաղաքի բովանդակեալ այսպէս կարգեալ է, ոչ լինել օրէն առ անձին դիւրութեան վնասել այլում: Քանզի յայս ակնարկեն օրէնք, և զսոյն կամին. անվնաս մնալ միաբանութեան քաղաքակցաց. զորոյ զքակտիչսն մահուամբ և աքսորանօք, կապանօք և տուգանօք սանձահարեսցեն: Եւս առաւել զդոյն պահանջէ նոյն ինքն սահման բնութեան, որ է օրէնք աստուածային և մարդկային. և որ միանգամ հնազանդ լինել այնմ կամիցի, որպէս և հնազանդելին իսկ՝ որ ըստ բնութեան կամին կեալ, ոչ երբէք յօժարեսցի ցանկալ օտարին իմիք, և զառ 'ի յայլոց յափշտակեալն՝ իւրացուցանել:

Այն զի յաւէտ ըստ բնութեան է մեծանձնութիւն և վսեմութիւն. որպէս և բարեբարոյութիւն, արդարութիւն, առատաձեռնութիւն՝ քան եթէ փափկութիւն, կեանք և ճոխութիւն. զորս արհամարհել և յոչինչ համարել առ համեմատութեամբ հասարակաց օգտի՝ գործ է մեծանձն և վսեմ ոգւոյ: Իսկ յափշտակել զայլոցն 'ի պէտս անձնդիւրութեան՝ առաւել ընդդէմ է բնութեան քան զմահ, քան զցաւ, և զորս 'ի նոցին սակի են:

Դարձեալ առաւել ըստ բնութեան է, յաղագս համօրէն ազգաց պահպանութեան կամ ձեռնտուութեան՝ եթէ մարթ իցէ՝ յանձն առնուլ մեծամեծ աշխատութիւնս և վիշտս, նմանող լինելով այնմ՝ զոր մարդկանն կարծիք առ յիշատակէ երախտեաց 'ի հոյլս դասեցոյց երկնաւորաց, քան եթէ կեալ յառանձնութեան՝ ոչ անվիշտ միայն, այլ և 'ի մեծամեծ [illegible] փափկութեան, յորդեալ ամենայն լիութեամբ առատութեան. մինչև գերազանց լինել և գեղով և ուժով: Որոյն աղագաւ ամենայն մտացի և գերահանճար կարի յոյժ նախապատիւ առնէ զայն կեանս քան զայս: Ուստի յայտ է՝ թէ մարդ հնա[illegible] բնութեան՝ մարդոյ վնասել ոչ ունի:

Եւ դարձեալ, որ այլում ստնանէ առ 'ի դիւրել անձին, կամ ոչ համարի գործել ինչ ընդդէմ բնութեան, և կամ առաւել չար համարի զմահ, զաղքատութիւն, զցաւ, որպէս և զկորուստ զաւակաց, մերձաւորաց և բարեկամաց, քան զանիրաւելն առ ոք։ Եթէ չհամարի ընդդէմ բնութեան ինչ լինել զայլոց ստնանելն, զի՞ է քեզ վիճել բնաւ ընդ նմա, որ 'ի սպառ բառնայ զմարդ 'ի մարդոյ. ապա եթէ գիտէ զի չար է այդ, բայց առաւել չարագոյն այլքն, այսինքն մահ, աղքատութիւն և ցաւ, մոլորի յայդմ. զի կարծէ զպակասութիւն ինչ մարմնոյ կամ ընչից՝ ծանրագոյն քան զհոգւոյ պակասութիւնս։

Զ. Արդ մի նպատակ պարտի լինել ամենեցուն. նոյն համարել զօգուտ անձին իւրաքանչիւր և զբոլորեցուն. զոր 'ի յափշտակել յինքն առն իւրաքանչիւր՝ քակտի ամենայն մարդկային միաբանութիւն։ Ո՞ւր թողից զայն, զի եթէ այս պատուէր է բնութեան, զի մարդ մարդոյ՝ ո՛ ոք և իցէ, վասն այսր իսկ պատճառի զի մարդ է՝ ըղբարին կամիցի, ապա ըստ նոյն բնութեն օրինի՝ օգուտն ամենեցուն հարկ է զի լինիցի հասարակաց։ Եւ եթէ այդ այդպէս է, ընդ մի և նոյն օրինօք բնութեն փակեալ կամք ամենեքեան. և եթէ այս ևս այսպէս է, ապա և յօրինաց բնութեան արգելեալ է մեզ վնասել այլում։ Արդ ճշմարիտ է առաջինն, ապա և վերջինն։

Անտեղի է ասելն ոմանց, եթէ 'ի ծնողէ իւրմէ կամ յեղբօրէ չէ արժան ումեք զերփել ինչ առ իւրոյ դիւրութեան. բայց այլ ինչ այն իցէ մնացելոց քաղաքակցաց։ Այսպիսիք ոչ ինչ իրաւունս և ոչ ինչ ընկերութիւն լինել համարին ընդ քաղաքակիցս յօգուտ հասարակաց։ Իսկ այդ կարծիք քայքայէ զամենայն ընկերութիւն քաղաքական։ Եւ որ ասենն, թէ պարտ է ակն ածել քաղաքակցաց, այլ օտարաց ոչ, այնպիսիքն քակտեն զհասարակաց ընկերութիւն մարդկային ազգի. զոր 'ի բաց տարեալ, արմատաքի քանդի բարերարութի, առատաձեռնութիւն, բարութիւն և արդարութիւն։ Իսկ որք զայդոսիկ բառնան, նա և ընդդէմ աստուածոց անմահից ամբարշտեալք համարեսցին, զի զառ 'ի նոցանէ սահմանեալ 'ի մարդիկ զընկերութիւնն տապալեն. ուր այդր ընկերութեան անխզելի կապ է, և առաւել

ընդդէմ է բնութեան՝ վնասել մարդոյ առ մարդ առ իւրոյ շահու, քան զկրել ամենայն վնասուց՝ եթէ արտաքնոց, եթէ մարմնոյ և եթէ անձին իսկ զլխովին ընդդէմ արդարութեան։ Քանզի այս մի միայն առաքինութիւն է տիրուհի և գլխոյ առաքինութեանց ամենայնի։

Ասիցէ ոք թերևս. իսկ արդ յորժամ նեղեսցի իմաստունն 'ի սովէ, ո՞չ բառնայցէ զկերակուր առն այլոյ որ առ ոչ ինչ պիտանացու։ Այլ ոչ բնաւ երբէք. զի չէ ինձ կեանք իմ առաւել պիտանի՝ քան զայն զգացումն հոգւոյս թէ մի՛ լիցի ինձ անիրաւել յոք առ դիւրելոյ անձին։ Իսկ արդ զի՞արդ. եթէ այր ոք բարի կարող իցէ մերկացուցանել 'ի զգեստուց զՓաղարիս զդժնդակ բռնաւորն և զանագորոյն, զի մի՛ ինքն պաղեսցի 'ի ցրտոյ, չիցէ՞ 'ի դէպ։

Դիւրին է յոյժ իրացդ ընտրութի՛։ Զի եթէ 'ի մարդոյ անտի որ ոչ ինչ է օգտակար՝ 'ի քո օգտի սակս կորզեսցես ինչ, գործ անմարդի գործես և հակառակ օրինաց բնութե՛։ Ապա եթէ այնպիսի ոք իցես դու, որ եթէ կենդանի մնայցես՝ կարող ես օգուտ շատ առնել հասարակաց տէրութե՛ և միաբանութե՛ մարդկան, 'ի կորզել անդ քո ինչ յայլմէ՝ ոչ ես ընդ ստգտանօք։ Ապա թէ այլազգ ինչ իցէ, առաւել պարտ է անցնիւր առն իւրոց վշտաց տանել՝ քան յայլոցն դիւրութենէ խորել։ Քանզի չէ առաւել հակառակ բնութեան հիւանդութիւն կամ չքաւորութիւն և կամ այլ ինչ յայսպիսեաց աստի՝ քան զկողոպտելն կամ զցանկանալ ընչից օտարին։

Այլ թողուլ լքանել զօգուտն հասարակաց՝ հակառակ է բնութեան, և է անիրաւ։ Արդ նոյն ինքն օրէնք բնութե՝ որ զօգուտ մարդկան պահեն և պահպանեն, անշուշտ սահմանեն զի յանպիտան և յանօգուտ առնէ փոխանցեսցին պէտք կենաց առ այր իմաստուն, բարի և քաջ. յորոյ 'ի մեռանելն մեծապէս սասանի օգտութի հասարակաց։ Միայն թէ զգուշասցի մի՛ գուցէ լաւզանձն վարկուցեալ և յանձնասիրութէ բերեալ, զայդ պատճառ 'ի ձեռս առնուցու յանիրաւել։ Այսու օրինակաւ միշտ պատշաճից լիցի գործօնեայ, զօգուտն խորհելով մարդկան, և զոր ստէպ երկրորդեմ՝ ընկերութե մարդոյն։

բռնութեամբ արգելեալք՝ հանդարտութեան պարապեմք․ և ՚ի պատճառս այդորիկ թողեալ զքաղաք և ՚ի գիւղս յածեալ՝ բազում այն է զի միայնացեալ գտանիմք ։

Այլ ոչ հանդարտութիւն մեր այս ընդ Աֆրիկեցւոյն հանդարտութեան, և ոչ միայնութիւնս ընդ նորայումն ՚ի բաղդատութիւն ածիցի երբէք ։ Քանզի նա ՚ի հանգիստ բերեալ, ՚ի մեծապատիւ գործակալութեանց տէրութեան հասարակաց՝ պարապ առնոյր առ ժամանակ մի, և յամբոխէ մարդկան և ՚ի խուռն խուժելոյն իբրև ՚ի նաւահանգիստ զանձն պատսպարէր ՚ի միայնութիւն առ ժամն ։ Իսկ մերս հանդարտութիւն առ ՚ի չգոյէ գործոց՝ և ոչ ՚ի փութոյ հանգստեան պատրաստեցաւ ։ Վասն զի յետ ծերակուտին չնջանելոյ և ատենի դատաստանաց բնաբարձ լինելոյ, զինչ վայելչական մեզ մարթասցուք առնել կամ ՚ի դրան, կամ ՚ի հրապարակ ատենի ։

Ահա այսպէս՝ որ երբեմն մեծաշուք և նազելի յաչս քաղաքակցաց կեանս կէաք, արդ փախուցեալք ՚ի տեսութենէ չարագործաց՝ որովք լի են վայրք ամենայն, թաքուցաք զանձինս ըստ կարի, և բազում այն է զի միայնիկ նստիմք ։ Այլ քանզի այսպէս ընկալաք յարանց գիտնաւորաց՝ թէ ոչ միայն ՚ի չարեաց զփոքրագոյնս ընտրել պարտ է, այլ և ՚ի չարէ անտի քաղել՝ եթէ կայցէ մասն բարւոյ, սորին աղագաւ և ՚ի հանդարտութեան վայելեմ, թէպէտ և ոչ յայնմ՝ որ պարտն էր առն որ երբեմն հանդարտութիւն ծնաւ քաղաքին․ և ոչ թողացուցանեմ անգործ զմիայնութիւնս զայս՝ յոր բերեալ եմ ՚ի հարկէ և ոչ կամօք ։

Միայն թէ Աֆրիկեցին և ըստ իմոց իսկ կարծեաց առաւել զովելի գտանէր․ զի չիք նորա յիշատակ ինչ ուշիմութեան գրաւոր, և ոչ գործ ինչ պտուղ հանդարտութեան, և ոչ արգասիք միայնութեան․ յորմէ պարտ է ՚ի միտ առնուլ՝ թէ նա զննութեամբ իրացն զորս մտածութեամբ գտանէր, ոչ պարապորդ և ոչ միայնիկ գտաւ երբէք ։ Իսկ մեք՝ որ ոչ այնպիսի ունիմք զօրութիւն զի լռիկ մտածութեամբ զերծ լիցուք ՚ի միայնութենէ, զամենայն փոյթ և զջան դարձուցաք յերկասիրութիւն գրութեանս․ մինչ զի յոլովագոյնս

'ի սուղ ժամանակի գրեցաք՝ յետ բարձման տէրութեան հասարակաց, քան 'ի բազում ամս 'ի կալ մնալ նորա ։

Բ. Այլ զոր օրինակ բովանդակ իմաստասիրութիւն, Կիկերոնդ իմ, է արդիւնարար և պտղաբեր, և ոչ մի կողմն նորա է խոպան և ամայի, սոյն օրինակ չէք և ոչ մի մասն 'ի նմա այնչափ բերրի և արգաւանդ, որպէս անդամնօր յորում յաղագս պատշաճից. յորոց առեալ լինին կանոնք զգօն և համեստ կենաց ։ Սորին վասն թէպէտ և վստահ եմ՝ թէ դու հանապազորդ լսես և ընդունիս զայսոսիկ 'ի Կրատիպպոսէդ մերմէ՝ յիմաստասիրապետէ, բայց յօգուտ լինել համարիմ, զի այսպիսի ձայնք յամենայն կողմանց հնչեսցեն շուրջանակի յականջս քո. և եթէ հնար ինչ է՝ ոչ ինչ այլ լուիցեն քո լսելիք ։ Օ որ որպէս ամենեցուն արժան է առնել՝ որ մի անգամ մտանել խորհին 'ի համեստութեան վարս, նոյնպէս և չռնիմ ասել՝ եթէ ումեք աւելի արժան իցէ քան քեզ ։ Վասնզի յանձին բերես ակնկալութիւն ոչ սակաւ նմանող լինելոյ մերում ճարտարութեան և մեծ պատուոյ և բարձի, և մեծի արդարև անուան ։ Ստանձնեալ ունիս և ևս զբեռն ծանր եթէ զԱթէնս քաղաքի և եթէ զԿրատիպպոսի. և զի առ սոսա ընթացար իբրև 'ի թանգարան վաճառաց ազնիւ արհեստից, թափուր յետս դառնալ յոյժ է անտեղի, որ անպատիւ առնէ զպարգ անուան և քաղաքիդ և վարդապետիդ ։ Վասն որոյ որչափ և կարող ես ժրաջան լինել 'ի սրտէ և ձգնել աշխատութեամբ, (եթէ իցէ աշխատութիւն ուսումն. և ոչ հեշտութիւն,) արա զի ժամանեսցես 'ի կատարելութիւն. և զի ամենայն 'ի մեր կողմանէ 'ի քո սակս տնտեսեցաւ, մի՛ թողուցուս երևել դու քեզէն պակասեալ ։ Այլ այսոքիկ այսքան. զի բազում ինչ բազում անգամ գրեցի քեզ 'ի յորդոր ։ Այժմ 'ի մնացուածոյ մասն նախակարգեալ բաժանմանս եկեսցուք ։

Արդ Պանետիոս, որ առանց ընդ բանս ինչ ածելոյ անվրէպ ճառեաց զպատշաճից, որում և մեք առաւելապէս՝ յաւելուածով ինն ուղղագրութեան զհետ չոգաք, առաջի արարեալ զերիս տեսակս յորս ընտրո-ղեալ են մարդիկ խորհել և խելամուտ լինել յաղագս պատշաճից, առաջին յերկուանալ անդ թէ արդեօք

համեստ լիցի այն զորմէ է բանն, եթէ անարգ. երկրորդ՝ օգտակա՞ր լիցի եթէ անօգուտ. երրորդ՝ համեստ երևեալն եթէ հակառակ ելանիցէ օգտակար թուեցելոյն, որո՞վ օրինակաւ պարտ լիցի որոշումն առնել նոցա. զերկոսին զառաջինն տեսակս յերիս գիրս բացայայտեաց. իսկ զերրորդէն ասէ գրել զկնի. բայց ոչ կատարեաց՝ զոր խոստացաւն։ Ընդ որ այնչափ առաւել զարմանամ, որչափ զի գրէ աշակերտ նորա Պոսիդոնիոս՝ թէ երեսուն ամ եկեաց Պանետիոս յետ 'ի լոյս հանելոյ զայն գիրս։ Եւ զարմանամ, զի զայս տեղի, ինքն Պոսիդոնիոս կարճ 'ի կարճոյ նշանակէ 'ի յիշատակարանս ուրեք. մանաւանդ զի գրեթէ չիք մասն այլ 'ի բովանդակ փիլիսոփայութեան այսչափ հարկաւոր։

Եւ չեմ հաւան ընդ նոսա որք ժխտեն եթէ Պանետիոս զանց արարեալ լիցի զայնու մասամբն, այլ համարին խորհրդով 'ի բաց թողեալ, զի և ոչ իսկ բնաւ մարթ էր գրել. քանզի ոչ երբէք կարէ ասեն օգտակարն հակառակ ելանել համեստի։ Յորոց յետինն մարթի անկանել ընդ երկբայութեամբ՝ թէ արժա՞ն լիցի արդեօք յառաջ բերել զայդ տեսակ՝ որ երրորդ է 'ի բաժանման Պանետիոսի, եթէ 'ի սպառ զանց առնել. իսկ առաջինն է աներկբայելի՝ թէ Պանետիոս յանձին կալաւ գրել, բայց եթող։ Զի որ յեռամասնեայ բաժանմանէ անտի զերկուս կատարեաց մասունս, հարկաւ կայր մնայր նմա երրորդն։ Թող զի 'ի կատարած երրորդի գրոցն խոստանայ ասել այնուհետև զերրորդ մասնէ անտի։

Սկայէ այսմ ճոխագոյն և Պոսիդոնիոս, որ յաւելու գրել 'ի նամակի ուրեք թէ Պ. Ռուտիլիոս Ռուփոս՝ որ աշակերտեալն էր առ ոտս Պանետիոսի, սովոր էր ասել. Զի որ օրինակ ոչ ոք գտաւ 'ի պատկերահանից որ զառ 'ի Ապելլեսէ սկսեալ և թողեալ զմասն զայն Աֆրոդիտեայ կովացւոյ՝ աւարտեացէ, վասն զի գեղեցկութիւն բերանոյն անյոյս առնէր զնոսա 'ի նմանեցուցանել զմնացեալ մարմինն, ըստ նմին օրինակի զոր միանգամ Պանետիոս զանց արար և ոչ կատարեաց, ոչ ոք յառաջ տարաւ, առ գերապանծութեան կատարելոցն 'ի նմանէ։

Գ. Յայս սակս անմարթ է երկբայել 'ի վերայ մտաց Պանետիոսի. այլ թէ իրաւամբք արդեօք մերձ եդ զեր

ըստ զայս մասն 'ի խնդիր պատշաճից եթէ ոչ, զայդմանէ թերեւս մարթի վէճ լինել։ Վասն զի եթէ համեստն միայն իցէ բարի, որպէս համոյ թուի ստոյիկեանց. եւ եթէ այնպէս ծայրագոյն բարի իցէ համեստն, մինչ զի՝ որպէս կարծեն մերքն ճեմականք՝ այլ ամենայն ինչ 'ի միւս կողմն եդեալ եւ ոչ մէտ մի համարեալ է, ոչ մնայ տարակոյս՝ թէ ոչ երբէք մարթին հակառակել իրերաց օգտակարն եւ համեստն։ Նա եւ ըստ այսմ լսեմք՝ թէ սովոր էր Սոկրատէս զարշել 'ի նոցանց՝ որք զառաջինն երկփեղկեցին կարծեօք զայսոսիկ 'ի բնէ զօդեալս։ Որում այնպէս ձայնակից են Ստոյիկեանք, մինչեւ դնել՝ թէ որ ինչ է համեստ նոյն եւ օգտակար, եւ չիք ինչ օգտակար որ չիցէ համեստ։

Եւ թէ այնպիսի ոք լինէր Պանետիոս, որ զառաքինութիւնն յայն սակս ասէր պատուական՝ վասն զի է օգտաւէտ, որպէս այնոքիկ որ զցանկալիս չափեն կամ 'ի հեշտութենէ կամ յանցաւութենէ, 'ի դէպ էր նմա ասել՝ թէ օգտակարութիւնն հակառակ երբեմն ելանէ համեստութեան։ Այլ քանզի սա զայն միայն բարի վարկանի՝ որ համեստն իցէ. եւ որք սմին ընդդէմ երեւանեն կերպարանօք իւիք օգտակարութեան, ոչ յաւելուածով նոցա համարի լաւագոյն կենաց հանդիպեալ, ոչ պակասելովն՝ վատթարագունի, ապա եւ չէր նմա պարտ զայնպիսի մտածութիւն 'ի ներքս մուծանել, յորում 'ի բաղդատութիւն ածցի զրեալն օգտակար ընդ համեստի։

Քանզի վերաձայնեալն 'ի Ստոյիկեանց ծայրագոյն բարի ըստ պատշաճի կեալ բնութեան, ինձ թուի՝ զայս ընծայեցուցանել միտս. միաձայնիլ ընդ առաքինութեան միշտ. իսկ զայլ ինչ իրս՝ որ ըստ բնութեան իցեն, այնպէս ընտրել առնուլ՝ զի ոչ հակառակ ելցեն առաքինութեան։ Նա եւ զի այս այսպէս է՝ ասեն ոմանք, ապա ոչ ուղիղ 'ի վերայ ածի բաղդատութիւնդ այդ, եւ ոչ օրէն ինչ է զայս ազգ կանոնս աւանդել։ Նա եւ համեստն այն տիրապէս եւ ստուգապէս անուանեալ, յիմաստունս է եւեթ, եւ ոչ երբէք մարթ է զատանել զայն յառաքինութենէ. իսկ յորս իմաստութիւն չէ կատարեալ, չէ եւ. չէ 'ի նոսա եւ կատարեալ համեստութիւն. միայն պատկեր իմն կարէ լինել համեստութեան։

Նա եւ այսպէս զայս ամենայն պատշաճ գործս զորոց 'ի

մատենի աստ Ճառեմք, Ստոյիկեանք Միջասահմանա ձայնեն, զի են հասարակք և յայտնիք. որոց և քաջուշիմութեամբ և ուսմամբ հասու լինին բազումք: Իսկ պատշաճն այն զոր և նոքա Ուղղութիւն կոչեն, կատարեալ է և լցեալ. և որպէս նոքա ասեն, ամենայնն թուովք բոլորեալ է. և ոչ ումեք երբէք անկ՝ բայց միայն իմաստնոյ:

Այլ յորժամ գործի ինչ յորում երևեսցին միջասահմանն պատշաճութիւնք, այդ առաւելութեամբ առաչս երևի կատարեալ. քանզի ռամիկն զբեթէ չիմանայ՝ որով պակասի առ կատարեալն. և որչափ ինչ իմանայ, այնու ոչ ինչ պակաս լինել կարծէ: Այդ և 'ի քերթուածս և 'ի նկարս հանդիպի, և յայլ ինչ բազում. զի տգէտք զմայլին և գովեն զոչն գովելիս, թուի ինձ վասն այն, զի գտանի յայնոսիկ ինչ մի լաւ, որ զօշոտէ զաչս տխմարաց, որք անկարողք են դատել զպակասութեանց յիրս իւրաքանչիւր. այլ յորժամ ուսանին 'ի գիտնոց; դիւրաւ 'ի բաց կան 'ի կարծեաց անտի:

Դ. Այս ահա զպատշաճսդ, զորոց խօսիմք 'ի գիրս յայսոսիկ, իբրու երկրորդական իմն համեստս ասեն լինել՝ ոչ իմաստնոց ևեթ սեփհական, այլ հանօրէն ազգի մարդկան յանկաւոր. մինչ զի ամենեքին յորս իցէ բնաւորութիւն առաքինութեան, շարժին սոքիմբք: Այսու իսկ՝ յորժամ երկու Դեկոսք, կամ երկու Սկեպիոնք, որք քաջք յիշատակին, կամ յորժամ Փաբրիկիոս և Արիստիդէս արդարք անուանին, և օրինակ 'ի մէջ բերի կամ արիութեան 'ի նոցանէ, կամ արդարութեան 'ի նոցանէ՝ իբրև յիմաստնոց: Զի ոչ ոք 'ի դոցանէ է իմաստուն այնպէս, որպէս կամք են մեզ իմանալ զիմաստունն: Այլ ոչ նոքին զլխովին որք կարծեալ և անուանեալ իմաստունքն էին, Մ. Կատոն, և Կ. Լելիոս, իմաստունք գտան. ոչ և նոքին իսկ եօթանք [1]. այլ 'ի յաճախութենէ անտի միջասահմանն պատշաճիցն, յանձին բերէին զպատկեր իմն և զկերպարանս իմաստնոց:

Վասն այնորիկ ոչ զայն ինչ որ Ճշմարտապէս համեստն իցէ, օրէն է 'ի բաղձատութիւն ածել ընդ դի-

1 Եօթն իմաստասէրք Յունաստանի:

մանաւորութեան օգտակարին . և ոչ զայն զոր ընդհանու-
րապէս համեստ կոչեմք , այն իսկ է զոր յարգեն որք
միանգամ կամին այր բարի երևել, արժան է 'ի բաղ-
դատութիւն բերել երբէք ընդ շահաւէտութեան : Նոյ-
նպէս մեզ պարտ է հոգալ և պահել զհամեստն զայն
որում հաստ լինիմք , նոյնպէս և իմաստնոց զայն՝ որ
տիրապէս ասի և է ստուգապէս համեստ : Զի չէ մարթ
այլ ազգ կալ 'ի նմին՝ եթէ լեալ իցէ յառաջադիմութիւն
ինչ յառաքինութեան : Արդ այսպիսի յաղագս նոցա՝
որք պահպանութիւն պատշաճից արք բարիք ճանաչին :

Իսկ որ միանգամ զամենայն ինչ շահաստացութեամբ
և անձնդիւրութեամբ չափեն , այլ ոչ կամին ծանրա-
կշիռ դնել զոսին քան զհամեստութիւն , այնպիսիքն
սովոր են 'ի մտածութեան 'ի բաղդատութիւն դնել զհա-
մեստն ընդ օգտակարին . բայց արք բարիք ոչ ընտա-
րեցան զայդ առնել : Վասն որոյ ինձ այսպէս թուի , թէ
Պանետիոս յասել անդ՝ եթէ սովոր են մարդիկ երկուա-
նալ յայդմ բաղդատութեան , յայն միտս էր որպէս թէ
ասել . սովոր են միայն , բայց ոչ եթէ պարտին առնել :
Վասն զի ոչ միայն առաւել համարել զօգտակարն քան
զհամեստն՝ անտեղի է յոյժ , այլ և բաղդատելն զնոսին
զայսոսիկ և երկմտել յայնս : Զ խնդր ապա երբեմն
տարակոյս 'ի մէջ բերել սովորեալ էր , որ և արժանի
թուէր զննութեան : Ինձ այսպէս թուի , որպէս 'ի
լինել երկմտութեան երբեմն , եթէ որպիսի ինչ իցէ
այն՝ զորմէ կամիցիմքն խորհել :

Վասն զի յաճախ ժամանակաւ դէպ լինի՝ զի որ յա-
ռաջին դժպատեհ բազմաց թուէր , չլինի դժպատեհ :
Դիցուք մեծ զօրինակն որով յայտնագոյն ծանիցի :
Զի՞նչ այլ ապիրատութիւն մարթի լինել մեծագոյն՝
որպէս սպանանել զոք 'ի մարդկանէ , ևս առաւել ընտա-
նի զոք : Արդ միթէ ապիրատ գտաւ , եթէ ոք սպանող
եղև բռնաւորի , թէպէտ և ընտանւոյ : Ոչ այդպէս թուի
ժողովրդեանն Հռովմայ , որ օրինակաւ երևելի երևե-
լի գործոց քաջութեան կարի իսկ վայելչական զիրադ-
զրէ : Յաղթեաց ուրեմն համեստութեան օգտակարու-
թիւնն . մանաւանդ թէ համեստութիւնն հետևորդ
գտաւ օգտակարութեան :

Արդ առ 'ի կարող լինելոյ անմոլար դատաստան առ-

նել, ուր ուրեք հակառակել երևեսցի անուանեալն 'ի մէնջ օգտակար ընդ այնմ զոր համեստ զատիմք, պարտ է սահմանել կանոն ինչ՝ որում եթէ զհետ գնասցուք 'ի բաղդատութեան իրացս, ոչ խոտորեսցուք երբէք 'ի պատշաճից ։

Սա եղիցի կանոնդ այդ առաւել միաբան ընդ բանի և ընդ վարդապետութե Ստոյիկեանց. որում յայն սակս հետևող լինիմք 'ի մատենի աստ, զի թէպէտ և ըստ հին ակադեմեանց և ըստ մերոցս Ճեմականաց՝ որ երբեմն նոյն էին ընդ ակադեմեանս, համեստըն նախապատիւ համարեալ լինին քան զերևեալն օգտակարս, բայց յստակագոյն ևս ճառէին զիրացդ նոքա՝ որոց առաջի որ համեստն է՝ նոյն և օգտակար համարեալ է, և որ չիցէ համեստ՝ այն և ոչ օգտակար, քան զնոսա ըստ որոց է համեստ ինչ անօգուտ, կամ օգտակար ինչ անհամեստ ։ Սակայն մեզ մերս Ճեմարան համարձակութիւն տայ մեծ՝ զի որ ինչ առաւել հաւանելի ընդ առաջ երևեսցի, օրէն իցէ մեզ անձնիշխանաբար ջատագովել ։ Սակայն 'ի կանոն անդր եկից ։

Ե. Արդ յափշտակել ինչ յումեքէ, և առն եղբօր իւրոյ վնասու զիւր օգուտն յաճախել, առաւել հակառակ է բնութեան քան զմահ, քան զաղքատութիւն, կամ զցաւ և կամ այլ որ ինչ միանգամ արկածք մարմնոյ կամ արտաքին իրաց. վասն զի անդէն բառնայ զկենակցութիւն մարդկային և զընկերութիւն ։ Զի եթէ յայն միտս լիցուք հաստատեալ եթէ առ իւրոյ օգտի այր իւրաքանչիւր կողոպտեսցէ կամ յապականութիւն դիցէ զայլ ոք, հարկաւ քակտի այն որ առաւել է ըստ բնութեան, այս է ընկերութիւն մարդկային ազգի ։

Զոր օրինակ եթէ իւրաքանչիւր ոք յանդամոց յայն խորհուրդ մտաբերէր, կարծեալ կարել զօրանալ եթէ զմօտակայ անդամոյն զառողջութիւն յինքն փոխանցեսցէ, հարկ լինէր ողջոյն իսկ մարմնոյ տկարանալ և կորնչել. սոյնպէս եթէ իւրաքանչիւր ոք 'ի մէնջ յինքն յափշտակեսցէ զայլոց դիւրութիւնս՝ կորզեալ զոր ինչ և կարէ 'ի միոյ միոյ առ իւրոյ շահաւորութեան, հարկ է հիմն 'ի վեր տապալել ընկերութեան և միաբանութեան մարդկան ։ Քանզի այն զի իւրաքանչիւր ոք առաւել յօժարեսցի անձին՝ քան այլում շահել զպէտս

կենցաղոյս, այդ ներեալ է, և ոչ հակառակ բնութեան. բայց ոչ տանի բնութիւնն զայդ, զի այլոցն աւարօք յաճախեսցուք մեզ զգոյս, զիշխանութիւնս և զհարըստութիւնս ։

Նաև այս ոչ եթէ 'ի բնութենէ և եթ, այս է յիրաւանց ազգաց, այլ և յօրէնս ժողովրդոց՝ որ 'ի տէրութիւնս քաղաքի քաղաքի բովանդակեալ այսպէս կարգեալ է, ոչ լինել օրէն առ անձին դիւրութեան վնասել այլում ։ Վասնզի յայս ակնարկեն օրէնք, և զսոյն կամին. անվնաս մնալ միաբանութեան քաղաքակցաց. զորս զքակտիչսն մահուամբ և աքսորանօք, կապանօք և տուգանօք սանձահարեսցեն ։ Նաև առաւել զդոյն պահանջէ նոյն ինքն սահման բնութեան, որ է օրէնք աստուածային և մարդկային. և որ միանգամ հնազանդ լինել այնմ կամիցի, որպէս և հնազանդին իսկ՝ որ ըստ բնութեան կամին կեալ, ոչ երբէք յօժարեսցի ցանկալ օտարին իմիք, և զառ 'ի յայլոց յափշտակեալն՝ իւրացուցանել ։

Այն զի յաւէտ ըստ բնութեան է մեծանձնութիւն և վսեմութիւն. որպէս և բարեբարոյութիւն, արդարութիւն, առատաձեռնութիւն՝ քան եթէ փափկութիւն, կեանք և ճոխութիւն. զորս արհամարհել և յոչինչ համարել առ համեմատութեամբ հասարակաց օգտի՝ գործ է մեծանձն և վսեմ ոգւոյ ։ Իսկ յափշտակել զայլոցն 'ի պէտս անձնդիւրութեան՝ առաւել ընդդէմ է բնութեան քան զմահ, քան զցաւ, և զորս 'ի նոցին սակի են ։

Դարձեալ առաւել ըստ բնութեան է, յաղագս համօրէն ազգաց պահպանութեան կամ ձեռնտուութեան՝ եթէ մարթ իցէ՝ յանձն առնուլ մեծամեծ աշխատութիւնս և վիշտս, նմանող լինելով այնմ՝ զոր մարդկանն կարծիք առ յիշատակէ երախտեաց 'ի հոյլս դասեցոյց երկնաւորաց, քան եթէ կեալ յառանձնութեան՝ ոչ անվիշտ միայն, այլ և 'ի մեծամեծ [illegible] փափկութեան, յորդեալ ամենայն լիութեամբ առատութեան. մինչև գերապանծ լինել և գեղով և ուժով ։ Որչափ առաւել ամենայն միոջէ և գերահանճար կարի յոյժ նախապատիւ առնէ զայն կեանս քան զայս ։ Ուստի յայտ է՝ թէ մարդ հնազանդ բնութեան՝ մարդոյ վնասել ոչ ունի ։

Այլ դարձեալ, որ այլում սահմանէ առ 'ի դիւրել անձին, կամ ոչ համարի գործել ինչ ընդդէմ բնութեան, և կամ առնել չար համարի զմահ, զաղքատութիւն, զցաւ, որպէս և զկորուստ զաւակաց, մերձաւորաց և բարեկամաց, քան զանիրաւելն առ ոք։ Եթէ չհամարի ընդդէմ բնութեան ինչ լինել զայլոց սահմանելն, զի՞ է քեզ վիճել բնաւ ընդ նմա, որ 'ի սպառ բառնայ զմարդ 'ի մարդոյ. ապա եթէ դիտէ զի չար է այդ, բայց առաւել չարագոյն այլքն, այսինքն մահ, աղքատութիւն և ցաւ, մոլորի յայդմ. զի կարծէ զպակասութիւն ինչ մարմնոյ կամ ընչից՝ ծանրագոյն քան զհոգւոյ պակասութիւնս։

Զ. Արդ մի նպատակ պարտի լինել ամենեցուն. նոյն համարել զօգուտ անձին իւրաքանչիւր և զբոլորեցուն. զոր 'ի յափշտակել յինքն առն իւրաքանչիւր՝ քակտի ամենայն մարդկային միաբանութիւն։ Ո՞ւր թողից զայն, զի եթէ այս պատուէր է բնութեան, զի մարդ մարդոյ՝ ո՛ ոք և իցէ, վասն այսր իսկ պատճառի զի մարդ է՝ ըղբարին կամիցի, ապա ըստ նոյն բնութեան օրինի՝ օգուտն ամենեցուն հարկ է զի լինիցի հասարակաց։ Այլ եթէ այդ այդպէս է, ընդ մի և նոյն օրինօք բնութեան փակեալ կամք ամենեքեան. և եթէ այս ևս այսպէս է, ապա և յօրինաց բնութեան արգելեալ է մեզ վնասել այլում։ Արդ ճշմարիտ է առաջինն, ապա և վերջինն։

Անտեղի է ասելն ոմանց, եթէ 'ի ծնողէ իւրմէ կամ յեղբօրէ չէ արժան ումեք զերծել ինչ առ իւրոյ դիւրութեան. բայց այլ ինչ այն իցէ մնացելոց քաղաքակցաց։ Այսպիսիք ոչ ինչ իրաւունս և ոչ ինչ ընկերութիւն լինել համարին ընդ քաղաքակիցս յօգուտ հասարակաց։ Իսկ այդ կարծիք քայքայէ զամենայն ընկերութիւն քաղաքական։ Այլ որ ասենն, թէ պարտ է ակն ածել քաղաքակցաց, այլ օտարաց ոչ, այնպիսիքն քակտեն զհասարակաց ընկերութիւն մարդկային ազգի. զոր 'ի բաց բարձեալ, արմատաքի քանդի բարերարութի, առատաձեռնութիւն, բարութիւն և արդարութիւն։ Իսկ որք զայդոսիկ բառնան, նա և ընդդէմ աստուածոց անմահից ամբարշտեալք համարեսցին, զի զառ 'ի նոցանէ սահմանեալ 'ի մարդիկ զընկերութիւնն տապալեն. ուր այդր ընկերութեան անխզելի կապ է, և առաւել

ընդդէմ է բնութեան՝ վնասել մարդոյ առ մարդ առ իւրոյ շահու, քան զկրելն ամենայն վնասուց՝ եթէ արտաքնոց, եթէ մարմնոյ և եթէ անձին իսկ գլխովին ընդդէմ արդարութեան։ Քանզի այս մի միայն առաքինութիւն է տիրուհի և դշխոյ առաքինութեանց ամենայնի։

Ասիցէ ոք թերևս. իսկ արդ յորժամ նեղեսցի իմաստունն 'ի սովէ, ո՞չ բառնայցէ զկերակուր առն այլոյ որ առ ոչ ինչ պիտանացու։ Այս ոչ բնաւ երբէք. զի չէ ինձ կեանք իմ առաւել պիտանի՝ քան զայն զգացումն հոգւոյս թէ մի՛ լիցի ինձ անիրաւել յոք առ դիւրելոյ անձին։ Իսկ արդ զիա՞րդ. եթէ այր ոք բարի կարող իցէ մերկացուցանել 'ի զգեստուց զՓաղարիս զդժնդակ բռնաւորն և զանագորոյն, զի մի՛ ինքն պաղեսցի 'ի ցրտոյ, չիցէ՞ 'ի դէպ։

Դիւրին է յոյժ իրացդ ընտրութիւն։ Զի եթէ 'ի մարդոյ անտի որ ոչ իւիք է օգտակար՝ 'ի քո օգտի սակս կորզեսցես ինչ, գործ անմարդի գործես և հակառակ օրինաց բնութեան։ Ապա եթէ այնպիսի ոք իցես դու, որ եթէ կենդանի մնայցես՝ կարող ես օգուտ շատ առնել հասարակաց տէրութեան և միաբանութեան մարդկան, 'ի կորզել անդ քո ինչ յայլմէ՝ ոչ ես ընդ ստգտանօք։ Ապա թէ այլազգ ինչ իցէ, առաւել պարտ է անձնիւր առն իւրոց վշտաց տանել՝ քան յայլոցն դիւրութենէ խորել։ Քանզի չէ առաւել հակառակ բնութեան հիւանդութիւն կամ չքաւորութիւն և կամ այլ ինչ յայսպիսեաց աստի՝ քան զկողոպտելն կամ զցանկանալ ընչից օտարին։

Այլ թողուլ լքանել զօգուտն հասարակաց՝ հակառակ է բնութեան, և է անիրաւ։ Արդ նոյն ինքն օրէնք բնութեան՝ որ զօգուտ մարդկան պահեն և պահպանեն, անշուշտ սահմանեն զի յանպիտանն և յանօգուտ առնէ փոխանցեսցին պէտք կենաց առ այր իմաստուն, բարի և քաջ. յորոյ 'ի մեռանելն մեծապէս ստնանի օգտութիւն հասարակաց։ Միայն թէ զգուշասցի մի՛ գուցէ լաւ զանձն վարկուցեալ և յանձնասիրութենէ բերեալ, զայդ պատճառ 'ի ձեռս առնուցու յանիրաւել։ Այսու օրինակաւ միշտ պատշաճից լիցի գործօնեայ, զօգուտն խորհելով մարդկան, և զոր ստէպ երկրորդեմ՝ ընկերութեան մարդոյն։

Իսկ վասն Փաղարիսի բանից, դիւրին է յոյժ լուծումն ։ Զի չկայ ինչ մեր ընկերութիւն ընդ բռնաւորի, այլ մանաւանդ ծայրագոյն անջրպետութիւն ։ Այլ չէ իսկ հակառակ բնութեան կողոպտել զնա, եթէ կարող լինիս, զոր խողխողելն է համեստ. և զայսպիսի ամենազան ժանտաժամս անօրէնս պարտ է կորզել 'ի մարդկանս միաբանութենէ ։

Քանզի զոր օրինակ անդամք ինչ 'ի բաց հատանին եթէ սկսեալ լիցին անարիւն և անհոգի գլխովին երևել և վնասել այլոց մասանց մարմնոյն, այնպէս և զայսպիսի մարդակերպարանս գազանութիւն և գազանամիտ դժընդակութիւնս արտաքսել պարտ է իբրու 'ի հասարակաց մարմնոյ մարդկութեան ։ Յայսմ ազգէ են և այն ամենայն խնդիրք' որ յաղագս պաշտօնից ըստ ժամուն քննելոյ ։

Է. Արդ որպէս կարծեմ, զայսպիսեաց աստի հանդերձեալ էր ըստ կարգի ճառել Պանետիոս, եթէ ոչ պատահարք ինչ կամ զբաղմունք նահանջէին զնա 'ի խորհրդոց իւրոց. բայց 'ի պէտս գիտելոյ նոցին իսկ իւրոց 'ի նախընթաց գիրս ինչ կանոնս աւանդեալ է առ 'ի կարող լինելոյ նկատել, զինչ ինչ խորշելի իցէ առ անպատեհութեանն, և զինչ այն որ ոչ խորշելի, զի չէ 'ի սպառ անպատեհ ։ Այլ զգործս յոր բուռն հարաք, և մերձ 'ի վախճանն հասաք, առ 'ի յանկ հանել, զոր օրինակ երկրաչափից է սովորութիւն' ոչ զամենայն ինչ ուսուցանել, այլ պահանջել զի շնորհեսցի ինքեանց ինչ ինչ, որով դիւրին ևս բացայայտեսցեն զոր կամին, ըստ նմին օրինակի և ես 'ի քէն պահանջեմ Կիկերոնդ իմ, զի լուիցես ինձ' եթէ կարես, թէ ոչ ինչ է ըստ ինքեան ցանկալի, բայց միայն համեստն ։ Ապա եթէ չտայ այդմ հրաման Կրատիպպոս, անշուշտ ընդունիցիս զայն' թէ որ ինչ է համեստ, նոյն և առաւել ցանկալի ըստ ինքեան ։ Ինձ շատ է որ և է 'ի դոցանէ. և քանզի և այս և այն առաւել հաւանելի տեսանի, վասն որոյ ոչ ինչ արտաքոյ սոցա հաւանելի ։

Այլ նախ յայսմ մասին արդարացեալ է Պանետիոս, զի ոչ ասաց' թէ օգտակարքն հակառակ ելանեն երբեմն համեստից, (որպէս և չէր իսկ նմա օրէն զայդ ասել,) այլ թէ երևեալքն օգտակար ։ Այլ ինքն բազում անգամ վկայէ' թէ չիք ինչ օգտակար' որ չիցէ և համեստ.

և ոչ ինչ համեստ՝ որ չիցէ և օգտակար։ Նա յաւելու ասել՝ թէ չիք այլ ախտ առաւել մահաբեր շաղախեալ 'ի վարս մարդկան, որպէս զնոցայն վարդապետութիւն որ զպատուիկ զատանեն յիրերաց։ Արդ ոչ որպէս զի նախապատիւ արասցուք երբէք զօգտակարս քան զհամեստս, այլ զի անմոլար ընտրութիւն արասցուք՝ եթէ ուրեք պատահեսցեն միմեանց, 'ի վերայ եած, թէ ըզկարծեցեալն, և ոչ եթէ զեղեալն դիմամարտութիւն։ Նա ահա զայս մասն խնդրոյս ունիմք ընուլ, ոչ ձեռնտուութեամբ ուրուք, այլ որպէս սովորութիւն է ասել 'ի ձեռն մերոյն Արեսի[1]. զի ոչ ինչ բացատրութիւն զայսմ մասնէ յետ Պանետիոսի ճառեալ կայ որ գէթ ինձ հաւանելի գտցի՝ 'ի մատեանսն յայնոսիկ հասեալս 'ի ձեռս իմ։

Ը. Արդ յորժամ յանդիման լինի քեզ երևոյթ ինչ օգտակարութեան, հարկաւ շարժիս 'ի նոյն։ Ապա եթէ լեալ ուշադիր՝ անպատեհութիւն ինչ տեսցես զուգորդեալ ընդ այնմ՝ որ զկերպարանս ունի օգտակարութեան, յայնժամ ոչ եթէ զօգտակարութիւնն թողուցուս, այլ 'ի միտ առնուցուս թէ ուր անպատեհութիւն է՝ անդ լինել օգտակարութեան անհնար է։ Զի եթէ չիք ինչ այնպէս ընդդէմ բնութեան իբրև զանպատեհութիւն (քանզի բնութիւնն սիրէ զուղղութիւն և զպատեհութիւն և զանդրդուելութիւն, և մերժէ ըզհակառակսն), և ոչ այնպէս ըստ բնութեան որպէս զօգտակարութիւնն, ապա յայտ է եթէ չմարթի լինել 'ի մի ինչ օգտակարութիւն և անպատեհութիւն միանգամայն։ Նա դարձեալ եթէ 'ի ծնէ և 'ի բնէ կարգեալ եմք առ համեստութիւն, և այն կամ մի միայն է բաղձալի, որպէս Զենոնի թուեցաւ, և կամ աներկբայ ծանրակշիռ է և յարգի քան զամենայն ինչ այլ, որպէս Արիստոտելի կամք եղեն ասել, հարկ է ապա զի որ համեստն է՝ լինիցի կամ մի միայն, և կամ ծայրագոյն բարի. իսկ որ ինչ միանգամ բարին է՝ այդ և օգտակար անշուշտ. ապա և որ ինչ համեստ, նոյն և օգտակար։

Վասն որոյ սխալումն է մարդկան ոչ բարեկրաց, զի ընդ ըմբռնել զինչ իբրև օգտակար, առեալ զայն իսկ և

1 Ինքնին աշխուժիւ մտաց։

իսկ զատանեն 'ի համեստէն ։ Աստուստ ծնանին սպանու-թիւնք, աստուստ դեղատուութիւնք, աստուստ սուտ վկայութիւնք. ատելի գողութիւնք, հուղկահարութիւնք, աւարհարութիւնք, յափշտակութիւնք ընկերաց և քա-ղաքակցաց. աստուստ իշխանութիւնք անչափ հարստու-թեանց անբերելիք. հուսկ ապա և ցանկութիւնք թա-գաւորելոյ յազատ քաղաքս, քան զոր չէ մարթ զմտաւ ածել վատթարագոյն ինչ և անարժան ։ Վասն զի շա-հաւէտութիւնս իմն յիրսդ տեսանեն մոլարք մտօք. իսկ զպատիժն՝ չասեմ օրինաց, զոր ստէպ եղծանեն, այլ զբուն իսկ զանպատեհութեանն՝ որ դառնագոյն ևս է՝ ոչ տեսանեն ։

Վասն այսորիկ բարձցին 'ի միջոյ այդ ազգ խորհե-լեացդ, (զի է գլխովին ապիրատ և ամպարիշտ,) որք խորհին, թէ արդեօք զհետ լինիցին այնմ՝ զոր համեստ գոլ տեսանեն, եթէ գիտութեամբ թարթափեսցին 'ի չարիս ։ Վասն զի 'ի դմին իսկ երկմտութեան կայ դա-րանեալ ժանտագործութիւն, թէպէտ և ոչ լինիցին այնմ ժամանն ։ Վասն որոյ ամենևին իսկ չէ արժան խորհել զայն ինչ՝ յորս խորհելն ինքնին անպատեհութիւն է ։ Այլ ևս յամենայն խորհրդոյ 'ի բաց հեռացուցանել պէտք են զյոյս և զկարծիս ծածկելոյ և թաքուցանե-լոյ. վասն զի եթէ առ փոքր մի զարգացեալ իցէ մեր յիմաստասիրութեան, պարտ է մեզ դնել 'ի մտի, զի թէ կարող ինչ էաք ծածկել զիրսդ յաչաց ամենայն աստուածոց և 'ի մարդկանէ, տակաւին չէր արժան առ-նել ինչ մեզ գործ ագահութեան, անիրաւութեան, անառակութեան և անժուժութեան ։

Թ. Աստի յառաջ բերէ Պղատոն զԳիւգէսն զայն, որ յորժամ չուեաց ընդ ցամաք 'ի պահու սաստիկ տարա-փոյ, էջ յայն խորափիտ, և զպղնձին զայն երիվար՝ ըստ առասպելաց՝ ետես, յորոյ 'ի կողմանց դրունք կային. և 'ի բանալ զայն՝ ետես զմարմին մարդոյ մեռելոյ անհե-թեթ մեծութեամբ, և մատանի ոսկի 'ի մատին. զոր հանեալ ագոյց յիւր մատն, և էր ինքն հովիւ արքունի, և այնպէս եկն 'ի ժողով հովուաց ։ Ընդ յորժամ զակ-նակապիճ մատանւոյն յափ կոյս շրջէր, ինքն աներևս լի-նէր յայլոց, և ինքն զամենայնն տեսանէր. և դարձեալ երևելի լինէր՝ յորժամ դարձուցանէր զմատանին 'ի տե-

դին։ Արդ զայսպիսի ձիրս մատանւոյն գործի իւր առեալ, 'ի պղծել զԹագուհին մտաբերեաց. և ընդ նորա ձեռն զԹագաւորն սպան զտէր իւր, և դաւեաց զկեանս՝ զորոց խնդրէր հակառակ յառնել անձին իւրում. և յայս ամենայն չարիս ոչ ոք կարաց զնա տեսանել։ Այսու օրինակաւ յեղակարծում ժամու 'ի շնորհս մատանւոյն Թագաւոր ցուցաւ երկրին Լիւդացւոց։ Արդ եթէ և զայս մատանի 'ի ձեռին ունիցի իմաստունն, իբրև եթէ չունէր՝ այնպէս պարտի զգուշանալ դարձեալ 'ի մեղանչելոյ. զի զհամեստոն խնդրէ այր լաւ, և ոչ զծածուկն։

Յայսմ վայրի իմաստասէրք ոմանք, Թէպէտ և ոչ չարք, այլ ոչ կորովամիտք, ստայօդ և մտացածին առասպել մեզ տողեալ ասեն՝ Պղատոն, որպէս այն Թէ պաշտպան կացեալ իցէ նորա Ճշմարտութեան իրացդ, կամ հնարաւորութեան լինելոյ։ Այս ինչ զօրութիւն է մատանւոյդ և օրինակիդ. յորժամ առաջի կայցէ քեզ առնել ինչ 'ի պատճառս մեծութե, իշխանութե, տէրութե և անժուժկալութեան՝ զոր ոչ ոք հանդերձեալ իցէ գիտել, և ոչ իսկ ոք 'ի կասկած անկանել, և այն մնալով միշտ անգիտելի յաստուածոց և 'ի մարդկանէ, առնիցես արդեօք զայդ։ Տան պատասխանի՝ Թէ Անհնար է այդմ լինել։ Այլ ես հարցանեմ, զոր անհնար ասեն՝ եթէ լինէր հնարաւոր՝ զի՞նչ առնել էր։ Արդարև չինականագոյնս բերին անդրէն 'ի պատասխանիս. անհնար է ասեն, և 'ի նմին պնդեալ կան. և ոչ տեսանեն զբանիցս զօրութիւն։ Զի յորժամ հարցանեմք, զի՞նչ ունէին առնել՝ եթէ ծածկել կարէին, ոչ զայն հարցանեմք՝ Թէ միթէ կարիցեն ծածկել. այլ որպէս 'ի նեղ արկանեմք տանջանաց. զի եթէ տայցեն պատասխանի՝ զի եթէ անպատիժ մնալ ունին իրքդ, առնել որ ինչ օգտակարն Թուիցի, ժանտագործս լինել խոստովան լինիցին զանձինս. ապա եթէ ուրասցին, ընկալցին եթէ անպատեհն ըստ ինքեան է խորշելի։ Այլ մեք 'ի նպատակ անդր դարձցուք։

Ժ. Ստէպ պատահեն յոլով դէպք ամբոխիչք մտաց ընդ կերպարանօք օգտակարութեան, ոչ եթէ 'ի խորհել անդ Թէ արդեօք արժա՞ն իցէ Թողուլ զհամեստութիւն առ մեծութեան օգտակարութեան. վասն զի այդ

անզգամութիւն է . այլ թէ հնար իցէ արդեօք զօգտակարն երևեալ գործել առանց անպատեհութեան ։ Յորժամ Բրուտոս արտաքս ընկենոյր յիշխանութենէ զիշխանակից իւր զԿողատինոս, մարթէր երևել անիրաւութեամբ ինչ գործել. զի նիզակակից էր Բրուտոսի 'ի վանել զթագաւորս, և սատարիչ խորհրդոցն ։ Այլ յորժամ զայս խորհուրդ 'ի մէջ առին իշխանք, թէ պարտ է ընաջինջ առնել զմերձենայս Սուպերբոսի, և զանուն Տարկուինեանց, և զյիշատակ թագաւորութե՟, և զի այն իսկ էր օգտակարն՝ խնամ տանել հայրենեաց, այնչափ համեստ էր այդ, զի և նմին իսկ Կողատինոսի պարտ էր կամակից լինել. և այնպէս օգտակարութիւնն զօրացաւ առ համեստութեամբն . քանզի և առանց այնր անմարթ էր լինել և օգտակարութեան ։

Բայց 'ի թագաւոր անդ՝ որ զքաղաքն շինեաց, ոչ այդպէս ։ Վասն զի տեսիլ օգտակարութեանն դրդեաց զոգի նորա . որում օգտակարագոյն երևեալ առանձինն՝ քան ընդ այլում թագաւորել, սպան զեղբայր իւր[1] ։ Եթող երկք սա և զգութ և զմարդասիրութիւն, որպէս զի մարթասցի հասանել այնմ՝ որ օգտակար երևէր, և ոչ էր . այլ զպարսպին պատճառս 'ի դէմ եած նմա, որ է կերպարան համեստութեան՝ ոչ հաւանելի և ոչ բաւական ։ Բրդ ասել անպատրուակ, յանցեաւ Կուիրինոսն կամ Հռոմուլոս ։

Բայց և ոչ զմերովս օգտիւ արժան է զանց առնել, և յայլոց ձեռս տալ՝ յորժամ մեք մեզէն կարօտեալ իցեմք . այլ առն իւրաքանչիւր արժան է իւրումն ծառայել օգտի՝ ցորչափ առանց զրկելոյ զայլս լինիցի ։ Իմաստութեամբ ասաց Կրիւսիպպոս, ըստ բազմացն իւրոց ասացուածոց . Որ յասպարիզին ընթանայ, պարտի ջանալ և նկրտել ամենայն ձգամբ լինել յաղթող . բայց ոչ իւիք պարտի տապաստ արկանել զնա ընդ որում մրցի, կամ ձեռամբքացի 'ի բաց մղել. այսպէս 'ի կենցաղումն 'ի խնդիր լինել պիտոյից անձին ոչ ինչ է անիրաւ, բայց զընկերին յափշտակել չեն իրաւունք ։

Այս առաւել խառնակումն լինի պատշաճից 'ի բարեկամութիւնս . որոց կամ չտալ՝ զոր կարես իրաւամբ,

[1] Նախահայրն Հռոմայեցւոց Հռոմուլոս զՀռեմոս զեղբայր իւր ։

կամ տալ զոչ արժանն՝ հակառակ է պատշաճից ։ Նոյն բովանդակ այսր ազգի իրաց՝ համառօտ և ոչ դժուարին է կանոն ։ Զի որ ինչ միանգամ օգտակար երևին, պատիւ, հարստութիւնք, փափկութիւնք և որ այլ այսպիսիք, զայդոսիկ չէ օրէն նախապատիւ առնել երբէք քան զբարեկամութիւն. բայց սակայն և ոչ ընդդէմ հասարակաց տէրութեան, և ոչ ընդդէմ երդման և հաւատարմութեան գործէ երբէք այր բարի 'ի շնորհս բարեկամի, և ոչ եթէ դատաւոր ևս նստցի բարեկամին իւրում. վասն զի մերկանայ զդէմս բարեկամին իւրոյ 'ի զգենուլ անդ զդատաւորի ։ Այնչափ շնորհս առնէ բարեկամութեան, զի ցանկայ ճշմարտիլ դատի բարեկամին. և որչափ ինչ թողացուցանեն օրէնք՝ յարմարէ զժամանակն ընդ վէճն ատենաբանեալ ։

Իսկ յորժամ երդմամբ հանդերձ վճիռ ունիցի տալ, յուշ առնէ թէ զԱստուած կոչեմ աւադիկ 'ի վկայ. այն է ըստ իմումս բանի՝ զմիտս իւր, քան զոր ոչ ինչ առաւել աստուածեղէն ետ մարդոյ Աստուած ինքնին ։ Վասն որոյ գեղեցիկ ընկալաք 'ի նախնեաց սովորութիւն՝ աղաչել զդատաւորն, միայն թէ զնոյն պինդ ունիցիմք, Զոր անտխեղծ հաւատով կարասցէ առնել ։ Այս աղերս յայն հայի, զոր փոքր մի յառաջ ասացի՝ թէ համեստ օրինօք կարող է դատաւորն զիջանել բարեկամի ։ Զի եթէ զամենայնն առնիցեն զոր միանգամ կամիցին բարեկամք, ոչ եթէ բարեկամութիւնք՝ այլ համախոհութիւնք համարեսցին ։

Բանս է զհասարակ բարեկամութեանց. ապա թէ ոչ՝ յարս իմաստունս և կատարեալս ոչ ինչ այնպիսի մարթի լինել ։ Պատմի, թէ Դամոն և Պիթիաս[1] պիւթագորացիք այնպէս սրտակից էին իրերաց, մինչ զի յորժամ Դիոնեսիոս բռնաւոր օր մահու սահմանեաց միում 'ի նոցանէ, և դատակնքեալն առ 'ի մահ խնդրեաց աւուրս սակաւս վասն հրաման տալոյ զիւրոցն, ընկեր նորա երաշխաւոր եղև յաղագս դարձի նորա. ապա թէ ոչ՝ ես փոխանակ նորա ասէ մեռայց ։ Եւ իբրև եկն եհաս նա յաւուր անդ ժամադրութեան, զարմացեալ բռնաւորին ընդ հաւատարմութիւն նոցա, խնդրեաց և զինքն երրորդ գրել 'ի բարեկամութեան ։

1 Այլ օրինակք Պիւթիաս, Պիւնթիաս և Փինտիաս ։

Արդ յորժամ կարծեալն օգտակար 'ի բարեկամութեան բաղդատի ընդ համեստին, թող 'ի գետին անկցի կերպարան օգտակարութեան, և զօրասցի համեստութիւնն: Իսկ յորժամ անհամեստքն իւրք 'ի բարեկամութեան թախանձեսցին, կրօն և հաւատարմութի նախապատիւ լիցին քան զբարեկամութիւն: Այսու օրինակաւ կասցէ խնդրեալն մեր ընտրութի պատշաճից:

ԺԱ. Այլ ընդ կերպարանաւ օգտակարութե ստէպ յոյժ լինի մեղանչել 'ի հասարակաց տէրութեան, որպէս եղև 'ի վրդովել անդ մերոցն զԿորնթոս: Յառագոյն ևս վարեցան Աթենացիք, որք մտաբերեցին ծայրաքաղ առնել զբոյթս Եգինացւոց՝ որոց զօրաւոր էին նաւատորմիղք: Օգտակար թուեցաւ բանս. զի մօտալուտ սպառնայր Եգինա 'ի վերայ Պիրէոսի վասն մերձաւորութեանն: Այլ սակայն չիք ինչ անագորոյն՝ որ իցէ օգտակար. վասն զի անգթութիւնն կարի թշնամի է մարդկան բնութե, որում պարտիմք լինել նմանող:

Չար է և զօտարականս արգելուլ 'ի վայելից քաղաքաց և անհետ առնել զնոսա, որպէս արար Պեննոս առ հարբք մերովք, և Պապիոս առ մեօք: Քանզի որում ոչն է քաղաքացի՝ 'ի համար մտանել քաղաքացւոյ յիրաւի չէ օրէն. և զայս օրէնս սահմանեցին իմաստունքն 'ի հիւպատոսս Կրասոս և Սկեւողա. բայց 'ի վայելից քաղաքին արգելուլ զօտարականս՝ ամենևին իսկ տմարդութիւն է: Պանծալի են այն գործք, յորս կերպարան հասարակաց օգտի արհամարհ դրի առաջի համեստութեան: Լի են այսպիսի օրինակք 'ի մերումս տէրութեան, որպէս յայլ նուագս բազում անգամ՝ նոյնպէս և առաւել ևս յերկրորդ պատերազմն պունիկեան. զի յետ յանձին կրելոյ զԿաննեայ աղէտն՝ մեծ ևս ոգի զգեցաւ քան զոր 'ի յաջողուածս երբէք. ոչ ինչ նշանակ երևեցոյց երկիւղի, և ոչ մի յիշատակութիւն հաշտութեան: Այսչափ է զօրութիւն համեստին, մինչև նսեմացուցանել զերևոյթ օգտակարութեան:

Աթենացիք յորժամ տեսին՝ թէ ոչ կարեն իւիք առաջի կալ յարձակմանն Պարսից· և ընտրեցին թողուլ զքաղաքն, և եդեալ զկանայս և զորդիս յամրին Տրեզենայ՝ մտանել 'ի նաւս և պաշտպանել զազատութիւն յունաստանի տորմղաւ նաւաց, այն ինչ Կիւրսիղոս ոմն

խրատ տայր նոցա կալ մնալ 'ի քաղաքի և 'ի ներքս ընդունել զՔսերքսէս, քարամբք քարկոծեցին զայրն. ուր և զօգտակարութեան երևէր զհետ երթալ, բայց ոչ էր և ոչ մի, զի ընդդէմ ելանէր համեստութեան:

Թեմիստոկղէս զկնի յաղթութեան պատերազմին եղելոյ ընդ Պարսից, ասաց հրապարակախօսութեամբ. Խորհուրդ մի ունիմ 'ի սրտի փրկարար հասարակաց տէրութեան, այլ գիտել զայն պէտք ոչ է ձեզ. և խնդրեաց 'ի ժողովրդենէն տալ ինքեան զայր մի' որում մանաւորեսցէ զխորհուրդն: Եւ տուաւ Արիստիդէս. առ որ ասէ. մարթ է 'ի ծածուկ հրձիգ առնել զնաւատորմիղ Լակեդեմոնացւոց' որ առ Գիւթեաւ. 'ի լինել այսմ այսպէս' հարկաւ բեկանի զօրութիւն Լակեդեմոնացւոց: Զայն լուեալ Արիստիդեայ' եկն 'ի ժողովն, ուր ամենեքին մնային նմա ակնկալութեամբ մեծաւ. և ասէ. Կարի քաջ օգտակար է խորհուրդն երկնեալ 'ի Թեմիստոկղեայ, բայց ոչ այնպէս համեստ: Յայնժամ Աթենացիք զայն ինչ որ ոչն էր համեստ' և ոչ օգտակար անգամ վարկան լինել, և գլխովին հերքեցին զկամն' զոր և չէր իսկ նոցա լուեալ, վկայութեամբ Արիստիդեայ: Լաւ ևս սոքա քան զմեզ' որք զհէնս ազատս կացուցանեմք, և զնիզակակիցս հարկատուս:

ԺԲ. Այլ այս կացցէ հաստատուն, թէ որ ինչ անպատեհ է' այդ երբէք չէ օգտակար. և ոչ իսկ յայնժամ, յորժամ զոր օգտակար կարծես' այն իցէ 'ի շահ: Զի նոյն իսկ օգտակար կարծելն զանպատեհս է վնասակար:

Այլ պատահեն, որպէս 'ի վեր անդր ասացի, բազում անգամ պատճառք, յորս յերևել օգտակարութեանն հակառակ կալ համեստութեան, յուշ ածել պէտք են, արդեօք ստուգապէս իցէ՞ հակառակ, եթէ մարթ իցէ միաբանել ընդ համեստութեան: Այսր ազգի են խնդիրքս. զոր օրինակ' եթէ այր ոք բարի յԱղեքսանդրիոյ 'ի Հռոդոս ցորեան բազում բարձեալ բերիցէ յաւուրս կարօտութեան և սովու Հռոդացւոց և 'ի յետին չքաւորութեան պարենի. միանգամայն և գիտակ լինիցի այրն' թէ բազում այլ վաճառականք արձակեցին զնաւս յԱղեքսանդրիոյ, և տեսցէ իսկ զցորենաբարձ նաւս յընթացս' դիմեալ գալ 'ի Հռոդոս, հա՞րկ

իցէ նմա ասել զայդ Հռոդացւոց, եթէ օրէն իցէ լռութեամբ զերկրին վաճառել մեծագնի։ Իմանամք զայր իմաստուն և բարի. և զնորա խորհրդոյ և զմտածութենէ է խնդիրս՝ որ ոչն ունի ծածկել զիրսդ 'ի Հռոդացւոց՝ եթէ անպատեհ համարեսցի զայդ. այլ յերկբայս լինիցի՝ թէ անպատե՞հ իցէ արդեօք։

Յայսպիսի խնդիրս այլ են կարծիք Դիոգինեայ բաբելոնացւոյ՝ մեծանուն և զգօն ստոյիկեան իմաստասիրի, և այլ Անտիպատրոսի աշակերտի նորա կորովամիտ առն։ Ըստ Անտիպատրոսի՝ պարտ է զամ' ինչ յերևան ածել, զի ոչ ինչ յորոց գիտէ վաճառողն՝ անգիտասցի գնողն։ Իսկ ըստ Դիոգինեայ՝ վաճառողն պարտական է, ըստ սահմանելոյ քաղաքական օրինաց՝ ասել զթերութիւնսըն. զայլն ամենայն կարող է անենգ գործել. և առ 'ի վաճառել՝ կամել ըստ կարի վաճառել մեծագնի։ Ակաղձեալ բերի, ածի 'ի հրապարակ, և վաճառեմ զիմն ոչ աւելեօք քան զայլսն. գուցէ և դիւրագնի առ առատութեանն. ո՞ւմ ումեք անիրաւութիւն լինիցի յայդմ։

Յայլուստ այլ պատճառ ստար լինի Անտիպատրոսի։ Ո՜ ինչ խօսիս. դու որ պարտական ես զօգուտն խորհել մարդկան, և արբանեկել մարդկային ընկերութեան. 'ի նմին օրէնս ես ծնեալ և զնոյն ունիս սկզբունս բնութեան՝ որոց պարտական գտանիս հնազանդել և զհետ երթալ, զի օգուտն քո լինիցի հասարակաց փոխանակաւ, և հասարակացն օգուտ լինիցի քո. ծածկե՞լ կամիս 'ի մարդկանէ զդիւրութիւնն և զբազմաշահութիւն որ մերձ առ դուրսն հասեալ կայ։ Պատասխանեսցէ արդեօք Դիոգինէս օրինակ զայս. Այլ է ծածկել, և ա՛յլ է լռել. արդ ես ոչ ծածկեմ 'ի քէն՝ եթէ չասեմ քեզ զի՞նչ բնութիւն իցէ աստուածոց, զի՞նչ կատարած իցէ լաւաց. զորս գիտելն առաւել օգուտ էր քեզ քան զօգուտն ցորենոյ. այլ ոչ եթէ որ ինչ օգտակար է քեզ գիտել, հարկ է ինձ ասել զայդ։ Հա՛րկ իսկ է՝ ասիցէ նա, եթէ յիշեսցես զի մարդիկ յընկերութիւն զօդեալ են 'ի բնէ։ Այո գիտեմ, ասէ և սա. այլ միթէ այնպիսի՞ ինչ իցէ ընկերութիւնդ այդ, զի ոչ ինչ գուցէ առանձին իւրաքանչիւր սեպհական։ Իսկ եթէ այդ այդպէս է, ապա և ոչ վաճառել ինչ օրէն է, այլ պարգևել։

ԺԳ. Տեսանես 'ի բովանդակ վիճաբանութեան աստ, զի ոչ զայն ասէ՝ եթէ թէպէտ և անպատեհ իցէ այդ, այլ զի օգտակար է՝ արարից. այլ թէ այնպիսի է օգտակարութիւնն՝ յորում ոչ է անպատեհութիւն։ Իսկ 'ի միւս կողմանէն, թէ զիարդ զայդ չէ պարտ առնել՝ վասն զի անպատեհ է։

Եթէ այր բարի վաճառեսցէ զապարանս իւր՝ վասն պակասութեանց իւրոց զոր ինքն գիտիցէ և այլք անգիտանայցեն. ժանտիւ շաղախեալ իցէ և առողջարար կարծեսցի. յամենայն սենեակս օձք երևեսցին՝ զորմէ չիցէ ոք ծանօթ. փուտ իցեն ատաղձքն և վազափուլ, այլ զայս ոչ ոք գիտիցէ՝ բայց միայն տէրն։ Արդ հարցանեմ, եթէ զայդ չասիցէ գնողաց վաճառողն, և զապարանսն վաճառեսցէ մեծագնի քան զակնկալութիւն իւր, արդեօք անիրաւէ՞ր և անզգամութիւն գործէր։ Եւ կարի իսկ քաջ, ասէ Անտիպատրոս. զի զի՞նչ այլ է մոլորելոյն ոչ ցուցանել զճանապարհ, (որ հանդիսապէս նզովիւք վճռեցաւ յԱթէնս,) եթէ չիցէ այս թողուլ զի գնողն կործանեսցի, և մոլորութեամբ չարաչար դաւաճանեսցի։ Նա առաւել ևս է քան զոչն ցուցանել զճանապարհ. զի է գիտութեամբ մոլորեցուցանել զընկերն։ Դիոգինէս ընդ հակառակն. Միթէ բռնադատեա՞ց զքեզ գնել, որ և ոչ յորդորեաց անգամ։ Նա տարագիր արար ընդ որ ոչն հաճէր. դու գնեցեր ընդ որ հաճեցար։ Ոչ թէ ոյք հրատարակագրեն՝ դաստակերտ լաւ և բարեշէն, ոչ համարին խաբել, թէպէտ և չիցէ այն ոչ լաւ և ոչ վայելչաշէն, քանի՞ ևս անմեղ իցեն որ զտունն ոչ գովեցին։ Ոչ եթէ գնողն ազատ է 'ի քննել, արդ ի՞բր լինիցի նե՛նգ վաճառողին։ Եւ եթէ ոչ ամենայն խօսք պահանջեն զկատարումն, և ուր չիցեն խօսք՝ համարիցի՞ս եթէ պահանջիցի կատարումն։ Եւ զի՞նչ անմտագոյն քան զայն՝ զի վաճառողն 'ի մէջ բերցէ պակասութիւնս զվաճառուցն. զի՞նչ քան զայդ անհեթեթ, զի 'ի տեառն հրամանէ քարոզ կարդայցէ մունետիկն այսպէս. տուն վաճառեմ լի ժանտիւ։

Ահա այսու օրինակաւ յերկբայելի դիպուածս ինչ՝ մի կողմն պաշտպան կանգնի համեստութեան, և միւս կողմն այնպէս խօսի զօգտակարութենէ, որպէս թէ ոչ միայն համեստ իցէ առնել զերևեալն զայն օգտակար,

իցէ նմա ասել զայդ Հռոմայեցւոց, եթէ օրէնն իցէ լռութեամբ զիւրն վաճառել մեծագնի։ Իմանամք զայր իմաստուն և բարի. և զնորա խորհրդոյ և զմտածութենէ է խնդիրս՝ որ ոչն ունի ծածկել զիւրսդ ՚ի Հռոմայեցւոց՝ եթէ անպատեհ համարեսցի զայդ. այլ յերկբայս լինիցի՝ թէ անպատե՞հ իցէ արդեօք։

Յայսպիսի խնդիրս այլ են կարծիք Դիոգինեայ բաբելոնացւոյ՝ մեծանուն և զգօն ստոյիկեան իմաստասիրի, և այլ Անտիպատրոսի աշակերտի նորա կորովամիտ առն։ Ըստ Անտիպատրոսի՝ պարտ է զամ ինչ յերևան ածել, զի ոչ ինչ յորոց գիտէ վաճառողն՝ անգիտասցի գնողն։ Իսկ ըստ Դիոգինեայ՝ վաճառողն պարտական է, ըստ սահմանելոյ քաղաքական օրինաց՝ ասել զթերութիւնսն. զայլն ամենայն կարող է անխենգ գործել. և առ ՚ի վաճառել՝ կամել ըստ կարի վաճառել մեծագնի։ Ակաղձեալ բերի, ածի ՚ի հրապարակ, և վաճառեմ զիմն ոչ առելեօք քան զայլսն. գուցէ և դիւրագնի առ առատութեանն. ո՞ւմ ումեք անիրաւութիւն լինիցի յայդմ։

Յայլուստ այլ պատճառ սաստար լինի Անտիպատրոսի։ Զի՞նչ խօսիս. դու որ պարտական ես զօգուտն խորհել մարդկան, և արբանեկել մարդկային ընկերութեան. ՚ի նմին օրէնս ես ծնեալ և զնոյն ունիս սկզբունս բնութեան՝ որոց պարտական գտանիս հնազանդել և զհետ երթալ, զի օգուտն քո լինիցի հասարակաց փոխանակաւ, և հասարակացն օգուտ լինիցի քո. ծածկե՞լ կամիս ՚ի մարդկանէ զդիւրութիւնն և զլաւզմաշահութիւն որ մերձ առ դուրսն հասեալ կայ։ Պատասխանեսցէ արդեօք Դիոգինէս օրինակ զայս. Այլ է ծածկել, և այլ է լռել. արդ ես ոչ ծածկեմ ՚ի քէն՝ եթէ չասեմ քեզ զինչ բնութիւն իցէ աստուածոց, զինչ կատարած իցէ լաւաց. զորս գիտելն առաւել օգուտ էր քեզ քան զօգուտն ցորենոյ. այլ ոչ եթէ որ ինչ օգտակար է քեզ գիտել, հարկ է ինձ ասել զայդ։ Հա՛րկ իսկ է՝ ասիցէ նա, եթէ յիշեսցես զի մարդիկ յընկերութիւն զօդեալ են ՚ի բնէ։ Այո գիտեմ, ասէ և սա. այլ միթէ այնպիսի՞ ինչ իցէ ընկերութիւնդ այդ, զի ոչ ինչ գուցէ առանձին իւրաքանչիւր սեպհական։ Իսկ եթէ այդ այդպէս է, ապա և ոչ վաճառել ինչ օրէն է, այլ պարգևել։

ԺԳ. Տեսանես 'ի բովանդակ վիճաբանութեան աստ, զի ոչ զայն ասէ՝ եթէ թէպէտ և անպատեհ իցէ այդ, այլ զի օգտակար է՝ արարից. այլ թէ այնպիսի է օգտակարութիւնն՝ յորում ոչ է անպատեհութիւն: Իսկ 'ի միւս կողմանէն, թէ զիրս զայդ չէ պարտ առնել՝ վասն զի անպատեհ է:

Եթէ այր բարի վաճառեսցէ զապարանս իւր՝ վասն պակասութեանց իրիք զոր ինքն գիտիցէ և այլք անգիտանայցեն. ժանտիւ շաղախեալ իցէ և առողջարար կարծեսցի. յամենայն սենեակս օձք երևեսցին՝ զորմէ չիցէ ոք ծանօթ. փուտ իցեն ատաղձքն և վաղափուլ, այլ զայս ոչ ոք գիտիցէ՝ բայց միայն տէրն: Արդ հարցանեմ, եթէ զայդ չասիցէ գնողաց վաճառողն, և զապարանսն վաճառեսցէ մեծագնի քան զակնկալութիւն իւր, արդեօք անիրաւէր և անզգամութիւն գործէր:

Այո կարի իսկ քաջ, ասէ Անտիպատրոս. զի զինչ այլ է մոլորելոյն ոչ ցուցանել զճանապարհ, (որ հանդիսապէս նզովիւք վճռեցաւ յԱթենս,) եթէ չիցէ այս թողուլ զի գնողն կործանեսցի, և մոլորութեամբ չարաչար դաւաճանեսցի: Առաւել ևս է քան զոչն ցուցանել զճանապարհ. զի է գիտութեամբ մոլորեցուցանել զընկերն: Դիոգինէս ընդ հակառակն. Միթէ բռնադատեա՞ց զքեզ գնել, որ և ոչ յորդորեաց անգամ: Նա տարագիր արար ընդ որ ոչն հաճէր. դու գնեցեր ընդ որ հաճեցար: Զի թէ ոք հրատարակագրեն՝ դաստակերտ լաւ և բարեշէն, ոչ համարին խաբել, թէպէտ և չիցէ այն ոչ լաւ և ոչ վայելչաշէն, քանի ևս անմեղ իցեն որ զտունն ոչ գովեցին: Զի եթէ գնողն ազատ է 'ի քննել, արդ ի՞բր լինիցի նենգ վաճառողին: Այլ եթէ ոչ ամենայն խօսք պահանջեն զկատարումն, և ուր չիցեն խօսք՝ համարիցիս եթէ պահանջիցի կատարումն: Այլ զինչ անմտագոյն քան զայն՝ զի վաճառողն 'ի մէջ բերցէ պակասութիւնս զվաճառուցն. զինչ քան զայդ անհեթեթ, զի 'ի տեառն հրամանէ քարոզ կարդայցէ մունետիկն այսպէս. տուն վաճառեմ լի ժանտիւ:

Ահա այսու օրինակաւ յերկբայելի դիպուածս ինչ՝ մի կողմն պաշտպան կանգնի համեստութեան, և միւս կողմն այնպէս խօսի զօգտակարութենէ, որպէս թէ ոչ միայն համեստ իցէ առնել զերևելին զայն օգտակար,

այլ և անպատեհ իցէ չառնել ։ Նոյն է այն երկպառակութիւն երևեալ յաճախ ընդ օգտակարս և ընդ համեստս, զորս պարտ է լուծանել. զի ոչ եթէ առ 'ի խնդդիր յարուցանել առաջարկեցաք, այլ առ 'ի պարզել ։

Արդ ոչ երևի թէ պարտ իցէ ծածկել զիրսն 'ի գնողաց ցորենավաճառին, նոյնպէս և տնավաճառին ։ Ոչ եթէ ծածկել իցէ զոր միանգամ լռեսդ, այլ յորժամ զոր դուդ գիտես և կամիցիս առ շահասիրութեանդ զի անգիտանայցեն զայդ նոքա որոց պէտք էին գիտել ։ Իսկ թէ այս ազգ ծածկութեան որպիսի ինչ իցէ, և որպիսւոյ առն, ո՞ ոչ տեսանէ ։ Յայտ է թէ ոչ է՝ ոչ անկեղծ, ոչ անխարդախ, ոչ հարազատ, ոչ արդար և ոչ բարի մարդոյ. այլ ընդ հակառակն՝ խուարարօրի, խորամանկի, խաբեբայի, չարանենգի, դաւաճանողի, սուտակապասի և աղուեսաբարոյի ։ Արդ ո՞չ ապաքէն հակառակ է օգտի՝ յանձն առնուլ զայս ամենայն և զայլ ևս անուանս ախտից ։

ԺԴ. Այլ եթէ ընդ մեղադրանօք են ոյք լռեցինն, զի՞նչ պարտ է կարծել զնոցանէ՝ ոյք բանս մնոտիս 'ի վերայ ածիցեն ։ Կ. Կանիոս ասպետ հռովմայեցի՝ փոքր 'ի շատէ գրագէտ և զուարթախօս, յանցանել իւրում 'ի Սիրակուսա ոչ 'ի սակս վաճառականութեան, որպէս ինքն սովոր էր ասել, այլ հանդարտութեան աղագաւ, զայս բան ունէր 'ի բերանի՝ թէ Պարտէզ փոքրիկ գնել կամիմ՝ ուր հրաւիրեցից զբարեկամս, և զուարճացայց յանձին առանց թախանձեցուցչաց ։ Իբրև տարածեցաւ այս համբաւ, Պիւթիոս ոմն արծաթագործ 'ի քաղաքի անդ Սիրակուսացւոց՝ ասաց ցԿանիոս. Վաճառել ոչ ունիմ զիմ պարտէզս. բայց թէ կամ իցէ քեզ, վարեսջիր զիմն որպէս զքոյդ. և միանգամայն յընթրիս հրաւիրեաց զայրն առ վաղիւն 'ի պարտէզ անդր ։ Նա իբրև խոստացաւ գալ, յայնժամ Պիւթիոս որ ըստ որում արծաթագործ՝ շնորհս ունէր առ ամենայն վիճակի մարդկան, կոչեալ առ ինքն զձկնորսս բազումս, խնդրեաց 'ի նոցանէ զի 'ի վաղիւ անդր եկեսցեն որսալ առաջի պարտիզաց իւրոց. և ասաց նոցա՝ զի՛նչ կամք էին նորա առնել նոցա ։ Կանիոս եկն յընթրիս 'ի ժամուն. և էր սեղան մեծահաց պատրաստեալ 'ի Պիւթիոսէ, և բազմութիւն նաւակաց ձկնորսաց յանդիման

ուշաց. և զոր ըմբռնէր այր իւրաքանչիւր՝ անդր բերէր, և արկեալ լինէին ձկունքն առ ոտս Պիւթիոսի ։

Յայնժամ Կանիոս. Աղաչեմ՝ ասէ, ո՛վ Պիւթի, զի՞նչ է այս. այսչափ բազմութիւն ձկանց, այսչափ բազմութիւն մակուկաց ։ Իսկ նա ասէ. զի՞նչ զարմանք իցեն. որչափ ինչ ձուկն 'ի Սիրակուսա կայ՝ են և աստէն. այս է ջրակոյտ, ոչ է մարթ պակասել ձկանց այտի ։ Վառեալ Կանիոսի ցանկութեամբ, թախանձէր զՊիւթիոս՝ վաճառել նմա ։ Նա զառաջինն ոչ տայր տեղի ։ Զի՞ ևս յերկարեցից. եհաս խնդրոյն. գնեաց այրն զակատեալ և ընչաւէտ այնքանոյ՝ որքանոյ Պիւթիոս կամեցաւ, և գնեաց հանդերձ զարդուք չինուածոյն. մուրհակս կնքէ, և բովանդակէ զգործն ։ Ի վաղիւ անդր հրաւիրէ Կանիոս զիւր ընտանիս, վաղ քաջ յարուցեալ գայ ինքնին, ուր տեսանէ և ոչ մի. հարցանէ ցդրացին մերձաւոր՝ եթէ աւուրք ինչ պարապո՞յ իցեն ձկնորսաց, զի տեսանեմ ասէ 'ի նոցանէ և ոչ զոք ։ Եւ նա ասէ. ոչ, որպէս ես գիտեմ. բայց աստ ոչ ոք սովոր է ձուկն որսալ. նմին իրի և յերիկէ զարմացեալ էի թէ զի՞ եղև ։

Խռովեցաւ Կանիոս. այլ զի՞նչ ունէր առնել ։ Վան զի չև էր Ակուիղիոսի գործակցին իմոյ [1] և ընտանւոյ 'ի լոյս ածեալ զձևս չար դաւաճանութեան. զորոց յորժամ հարցանէր ոք զնա՝ զի՞նչ չար դաւաճանութիւնն իցէ, զայս տայր պատասխանի. Յորժամ այն ինչ կեղծաւորի որ ինչ ոչ է ։ Սովին բանիւ առն գիտնաւորի յայտ յանդիմանի նշանակի իրացդ սահման ։ Արդ և Պիւթիոս և ամենեքին որ միանգամ այլ ինչ առնեն և այլ ինչ կեղծաւորեն, դաւաճանք են, ապիրատք և չարանենգք ։ Ապա և ոչ մի գործ նոցա մարթի օգտակար լինել՝ յայնչափ պակասութիւնս շաղեալ ։

ԺԵ. Եւ եթէ ճշմարիտ իցէ ակուիղեանս այս սահմանս, պարտ է բառնալ յամենայն ընթացից կենաց զկեղծիս և զկեղծաւորութիւն ։ Եւ այսպէս ոչ 'ի գնել զլաւագոյնն և ոչ 'ի վաճառել կեղծեսցէ կամ կեղծաւորեսցի երբէք այր բարի ։

Արդ դաւաճանութիւն չար և յօրինաց անտի ար-

[1] Այս ինքն Կիկերոնի 'ի պալատան ։

գեղեցաղ էր ընդ պատմուճովք. որպէս է տեսանել յերկո-տասան տախտակսն իմաստակալութեան որոց, և 'ի Լետորեան օրէնսն չափահասութեան պատանեկաց նաև առանց օրինաց 'ի դատաստանի, յորս յաւելուն ա-սել. Ողջմտութեամբ: Եւ յայլ դատաստանս նշանա-ւորք են յաւէտ այս բանք 'ի դատաստանի օժտից. Լաւ ևս. Առաւել արդար և հաւատարիմ. Ի մէջ բարեաց բարեօք վարիլ: Արդ զինչ. 'ի լաւ ևսն, և յառաւել արդարն՝ մարթ ինչ իցէ լինել մասին իմիք խաբէու-թեան. և կամ յասել անդ՝ Ի մէջ բարեաց բարեօք վարիլ, հնար իցէ նենգ ինչ կամ չարութիւն մածա-նել: Իսկ չար դաւաճանութիւնն ըստ բանին Սկաւ-ղեայ բովանդակի 'ի կեղծիս և 'ի կեղծաւորութեան: Այլ արդ պարտ է 'ի բաց բառնալ 'ի դաշնադրութեց զամենայն խաբէութիւն: Ոչ վաճառողն՝ միջնորդ ա-ւելացուցիչ զգք գնոյն առցէ, և ոչ գնողն ընդդէմ նորա նուազիչ: Եթէ պէտք ինչ իցեն ճարտարախօսել, եր-կաքանչիւրն խօսեսցի 'մի անգամ, և ոչ աւելի:

Ապաքէն Կուինտոս Սկեւողա՝ Պոպղիոսի որդին, կա-մեցեալ գնել արտ՝ խնդրեաց մի անգամ և եթ ասել զգինն. և իբրև արար այնպէս վաճառողն, ասէ. Ինձ այսպէս թուի՝ թէ առաւել արժիցէ, և յաւել տալ հարիւր հազար: Ոչ ոք ուրաստ լինի, թէ այս է գործ առն բարւոյ, բայց ժխտեն լինել իմաստնոյ. որպէս եթէ դիւրագին քան զոր կարողն էր վաճառէր: Եւ ահա յայդմ իսկ է վնասն, զի զատանեն զբարին յիմաստնոյ: Յորմէ և Էննիոս. Ոչ իմաստութեամբ գործէ իմաս-տունն՝ որ օգն է բաւական օգտել անձին իւրում: Եւ ես իսկ համաձայնակից լինէի Էննիոսի, եթէ և այդ օգտել ինչ էր: Տեսանեմ, զի Հեկատոն ոմն հռոդացի աշա-կերտ Պանետիոսի՝ 'ի գիրս զոր գրեաց յաղագս պատ-շաճից առ Կ. Տուբերոն՝ ասէ. Իմաստնոյն է՝ առանց առնելոյ ինչ յեղծումն վարուց, օրինաց և կարգաց, հոգալ զառտնին իւր: Զի ոչ անձանց միայն կամիցիմք զհարստանալն, այլ և զաւակաց, մերձաւորաց, բարե-կամաց, և ևս առաւել հասարակաց տէրութեան: Վասն զի գոյք և մեծութիւնք մոյ մոյ՝ ճոխութիւնք են քաղաքին: Սմա ոչ իւիք մարթի հաճոյ լինել նա-խաճառեալ յինէն գործն Սկեւողայ. քանզի միայն

զանարժանն ևեթ 'ի գործ գրէ լինել անդէպ ։ Այնպի-սի որք ոչ գովութեան է արժանաւոր, և ոչ շնորհաց ։

Այլ եթէ կեղծիք և կեղծաւորութիւն է նենգ. չար, ապա կարի սակաւ իրք են՝ յորս չմտանիցէ չարդ այդ դաւաճանութիւն. և եթէ այր բարի նա է՝ որ օգնէ ում և կարէ, և վնասէ և ոչ ումեք, արդարև ոչ դիւրա-գտցուք և զայր այդպիսի բարի ։ Արդ ոչ երբէք օգտա-կար է մեղանչել, վասն զի միշտ է անպատեհ. և զի միշտ համեստ է լինել այր բարի, միշտ է և օգտա-կար ։

ԺԶ. Բայց արդ յաղագս իրաւանց կալուածոց վճռ-ռեալ է առ մեզ քաղաքական իրաւամբք, զի 'ի վաճառել զայդոսիկ ասասցէ վաճառողն զպակասութիւնս զորս գի-տէ ։ Ուր ըստ երկոտասան տախտակաց շատ էր կա-տարել զայն՝ որ ինչ ել ընդ բերանն, և որ ժխտէր զայդ՝ կրկին տուգանաց ներքոյ անկանէր, յիրաւաբանից սահ-մանեցաւ և լռութեան պատիժ ։ Քանզի կանոնադրե-ցին, զի որ ինչ պակասութ[illegible] կայցէ 'ի կալուածն եթէ գիտէր վաճառողն՝ և ոչ ասաց յանուանէ, պարտական է վճարել ։ Ո՛ որ օրինակ, յորժամ յամրին[1] հաւահմայել համդերձեալ էին հաւադէտք, հրամայեցին Տիտոսի Կղաւդիոսի Կենտումաղոսի, որոյ էր տուն 'ի Կեղիոս լերին, փլուզանել զտունն որ խոչընդակն էր հաւահմայ-ութեանց, յայնժամ Կղաւդիոս հրաժարեալ 'ի կղզւոյն[2] վաճառեաց զայն. զոր և գնեաց Պ. Կալպուռնիոս Լա-նարիոս ։ Նմա ևս նոյն պատուէր հասանէր 'ի հա-ւահմայից. արդ Կալպուռնիոս իբրև քակեաց, ապա ի-բազեկ լինէր՝ թէ Կղաւդիոս յետ առնլոյ 'ի հաւա-հմայից զպատուէր քակելոյ՝ հրաժարեալ է 'ի տանէն ։ Ստիպել սկսաւ զնա առ դատաւորին, թէ զոր ետն՝ պարտ էր ողջմտութեամբ առնել ։ Մ. Ճռատու եղև Մ. Կատոնին՝ հայրն մերոյս Կատոնի. զի որպէս այլք 'ի հարցն իւրեանց, սոյնպէս և սա որ զայս լոյս ընծայեցոյց, յորդւոյն ունի անուանակոչիլ. արդ դատաւորս այս այսպէս վճռեաց, թէ որովհետև 'ի վաճառել անդ գի-տակ էր իրացն և ոչ զեկոյց, պարտական է վճարել

1 Ցակառն Կապիտոլինի 'ի Հռոմ ։

2 Այս ինքն 'ի կղզիացեալ տե-ղւոյն ողջոյն ։

գնողին զվնասն ։ Նա այնպէս յայտնի կացոյց թէ ողջամտութեան մասն է այն՝ զի գնողն դիտակ լիցի պակասութեան՝ զոր վաճառողն գիտէ ։

Բայց եթէ ուղիղ դատեցաւ, ապա ոչ ուղիղ լռեաց ցորենավաճառն, և ոչ վաճառողն ժամատաբեր տան ։ Բայց յայսպիսեաց աստի լռութեանց ոչ զամենայնն մարթ է բովանդակել ՚ի դատաստանագիրս. իսկ զորս մարթ եղև արձանագրել՝ ճշդիւ պահին ։ Մ. Մարիոս Գրատիդիանոս մերձաւորն մեր՝ վաճառեաց Կ. Սերգիոսի Օվրատայ զապարանս իւր, զոր ՚ի նմանէ իսկ էր գնեալ սուղ ինչ ամօք յառաջագոյն ։ Ապարանքն այն ծառայէր Սերգիոսի, այլ զայդ ՚ի սակարկութեան չէր ասացեալ Մարիոս ։ Ի դատաստան հանաւ վէճն. Օվրատայ պաշտպան կայր Կրասսոս, Գրատիդիանոսի Անտոնիոս ։ Կրասսոս զիրաւունս յառաջ բերէր, թէ զոր ինչ պակասութի՟ գիտելով չափ չասէ վաճառողն՝ զայդ պարտական է հատուցանել ։ Անտոնիոս զհաւասարութիւնն, եթէ այդ պակասութիւն ոչ ինչ թաքուն գոլով ՚ի Սերգիոսէ՝ որ զնոյն ապարանս երբեմն վաճառեաց, ասելոյ ինչ պէտք ոչ էր. և ոչ իսկ խաբեալ գտանի նա՝ որ զոր ինչ գնեացն, որպէս և զիարդ էր՝ պահեալ ունէր ։ Առ ի՞նչ այս ամենայն. զի իմասցիս՝ թէ նախնիք մեր ոչ հաճէին ընդ խորամանկս ։

ԺԲ. Բայց այլազգ օրէնք, այլազգ իմաստասէրք մերժեն զխորամանկութիւնս. օրէնք՝ յորժամ կարասցեն բերել ՚ի ձեռս. իմաստասէրք՝ ՚ի խորհելն բանիւ և հանճարով ։ Արդ բանն զայս պահանջէ, զի մի լինիցի ինչ նենգութեամբ, մի ինչ կեղծաւորութեամբ, մի ինչ խաբէութեամբ ։ Արդ իցէ՞ արդեօք նենգութիւն թակարդս ձգել, թէպէտ և դու չունիցիս շարժել կամ ցնցել. զի նոքին ինքնին բազում անգամ անկանին ՚ի նոյն առանց հետամուտ լինելոյ. սոյնպէս է եթէ և դու զտունն նշանակեսցես, զտախտակն վաճառման որպէս թակարդ արկանիցես, և զտունն առ պակասութեան ՚ի վաճառ հանիցես՝ զի ըմբռնեսցի ՚ի տխմարաց ոք ։

Այս թէպէտ և տեսանեմ [illegible]վատթարութեան սովորութեան ոչ ընդ անպատե[illegible]գրեալ, և ոչ յօրինաց կամ ՚ի քաղաքական իրաւանց սահմանեալ, սա-

կայն բնութեան օրինօք է սահմանեալ ։ Վասն զի ըն֊ կերութիւն կայ՝ (զոր թէպէտ և բազում անգամ ասա֊ ցի ; այլ ևս բազումս արժան է ասել,) ընդհանուր մարդկան ընդ միմեանս, և ներքին՝ 'ի մէջ համազ֊ գեաց, և մերձաւորագոյն 'ի մէջ քաղաքակցաց. սորին վասն նախնիք հաճեցան այլ իրաւունս ասել ազգաց, և այլ քաղաքաց ։ Քաղաքականն ոչ է միշտ նոյն ընդ ազգացն. այլ ազգացն և քաղաքական պարտի լինել ։ Այլ մեք զճշմարիտ իրաւանց և զհարազատ արդարու֊ թեան զհաստատուն և զկենդանի պատկեր և ոչ մի ունիմք. կամք 'ի ստուերին և 'ի նախագծին. իցէ՛ թէ և զսոցա զհետ երթայաք. զի յառաջ բերին յըն֊ տիր օրինակաց բնութեան և ճշմարտութեան ։

Ո՛ի քանի գեղեցիկ են այն բանք. "Երանի՛ եթէ վասն քո և 'ի քումմէ հաւատարմութէ չիցեմ խաբեալ և կամ փոխեալ,,։ Բանի ոսկեղէն և այս. "Ուր 'ի մէջ բարեաց բարւոք վարիլ պարտ է և առանց նենգա֊ նաց,,։ Այլ թէ ո՛յք բարիքն իցեն, և զինչ այն բա֊ րւոքն վարիլ, խնդիր է մեծ ։ Ապաքէն Կ. Սկեւողա քրմապետն մեծ ասէր՝ թէ գերագոյն զօրութիւն է յայն՝ ամենայն վճիռս յորս լինի յաւելուլ՝ Ողջմտութե. և զայս անուն ողջմտութեան համարէր սփռեալ տա֊ րած 'ի խնամակալութիւնս որբոց, յընկերութիւնս, 'ի գրաւականութիւնս, 'ի յանձնարարութիւնս, 'ի տուր և յառ, 'ի վարձմունս, յաւանդս, յորս բովանդակի ըն֊ կերութիւն կենցաղոյս. և 'ի նոսին ասէր մեծի դա֊ տաւորի է գործ որոշել, մանաւանդ ուր 'ի բազում իրս լինին դէմ ընդդէմ դատաստանք, եթէ զինչ ինչ ո՛ ոք ում ումեք պարտական իցէ հատուցանել ։

Սորին աղագաւ 'ի բաց դնել պարտ է զխորամանկու֊ թիւնս և զչարութիւնն զայն, որ կամի արդեօք՝ խոհե֊ մութիւն երևել, այլ հեռի է 'ի նմանէ և բացական յոյժ ։ Վասն զի խոհեմութիւնն ունի զտեղի յընտրու֊ թեան բարեաց և չարեաց. իսկ չարութիւն խորաման֊ կութեան, եթէ արդարև ամենայն որ անպատեհն է՝ չար է, զչարն նախապատիւ առնէ քան զբարին ։ Եւ ոչ միայն 'ի կալուածս՝ քաղաքական իրաւունքն 'ի բնու֊ թենէ առաջնորդեալ՝ վրէժխնդիր լինի չարութեան և նենգութեան, այլ և 'ի վաճառման արծաթագին ծա֊

ռայից 'ի բաց զատուցանի ամենայն նենգութիւն վա-
ճառողին : Զի որ պարտականն էր զխտել զառողջու-
թենէ նոցա, զփախստականութենէ և զգողութենէ,
բան հաստատութեան տայ առաջի գործակալացն չի-
նուածոց : Այլ կարգ է ժառանգաց : Յորմէ արժան
է իմաստասիրել, թէ որովհետև աղախնք իրաւանց
բնութիւնն է, ըստ բնութեան է այս՝ զի ոչ ոք առա-
րեսցէ ինչ յայլոց անգիտութենէ : Եւ չէ մարթ գտա-
նել մեծ եւս վնաս կենաց, որպէս կեղծիք գիտակցու-
թեան 'ի չարութէ, յորմէ ծնանին այդ ամենայն իրք
անթիւք. զի օրինակարքն դիմամարտ երևին համե-
տից : Զի՞ ոք այնչափ արթուն գտանիցի, որ յանպար-
տականութեան և յանգիտութեան ամենայնի կարող
լիցի անձնապահ լինել 'ի զրկանաց :

ԺԸ. Համարձակիմ ասել, թէ գթեմք և յօրինակս
անդ, յորս թերևս խառնիճաղանճն ոչ կարծէ մեղս
ինչ լինել. զի ոչ եթէ զսիկարեանց, զդեղատուաց,
զսուտ կտակագրաց, զգողոց և զհուղկահարաց յայսմ
վայրի ճառիցեմք. զորս ոչ եթէ բանիւք և վիճաբանու-
թեամբ փիլիսոփայից պարտ է յաղթահարել, այլ կա-
պանօք և բանտիւք. այլ մեր զննութի լիցի զգործոց նո-
ցա ոյք 'ի համար բարեաց գրին : Զի Մինուկիոսի Բաս-
լի՝ մեծատան առն զսուտ կտակ բերին ոմանք 'ի Յու-
նաստանէ 'ի Հռովմ. յորում առ դիւրագոյնս յաջողել՝
գրեցին ժառանգակիցս իւրեանց զՄ. Կրասոս և զԿ.
Հորտենսիոս, զարս զօրաւորս յոյժ 'ի ժամանակին. որք
թէպէտ 'ի կասկածի եղեն ընդ ստութիւն իրացն, այլ
զի ինքեանք ոչ ինչ զանձանց մեղս գիտէին, զպարգև
այլոցն չարագործութեանց ոչ յանձանց 'ի բաց մերժե-
ցին. իսկ արդ զինչ. եթէ շա՞տ իցէ այդ առ չերևե-
լոյ նոցա յանցաւոր. ինձ ոչ այդպէս թուի բնաւին,
թէպէտ և մին սիրելին իմ էր 'ի կենդանութեան, և
միւսն ոչ ատելի յետ մահուան : Այլ յորժամ Բասիլ
կամեցաւ ; զի Մ. Սատրիոս քեռորդի իւր լիցի յաջորդ
անուան իւրոյ, և զնա կացոյց ժառանգ բանիւս, Զսա
անուանեմ տէր պիկենեան և սաբինեան ագարակի,
բա՛բէ անարգանաց աւուրցն այնոցիկ. մինչ իրաւացի
էր, զի գլխաւորք 'ի քաղաքացւոց տիրեսցեն իրացդ, և
Սատրիոսի ոչ ինչ անկցի բաց յանուանէ : Զի եթէ

այն՝ որ ոչն պաշտպան կանգնի ընդդէմ զրկանաց, և ոչ 'ի բաց վարէ յիւրոցն յորժամ կարէ, անիրաւս գործէ, որպէս յառաջին գիրս ասացի, որպիսի ինչ համարեսցի նա՝ որ ոչ միայն ոչ մերժէ 'ի բաց զզրկանս, այլ և ձեռնտու լինի: Այլ ես և ոչ զճշմարիտ ժառանգութիւնս ասեմ համեստ՝ եթէ ստացեալ իցեն չարարուեստ համոզանօք մարդելուզութեանց, ոչ ճշմարտութեամբ՝ այլ կեղծեօք:

Այլ յայդպիսի անցս այլ թուի երբեմն օգտակարն, և այլ համեստն: Սուտ է. զի նոյն կանոն է օգտակարութեան և համեստութեան: Որ միանգամ ոչ 'ի միտ առնու զայս, յայնպիսւոյն ոչ հեռի գտանի ամենայն նենգութիւն և ամենայն չարագործութիւն: Ո՛ր 'ի խորհելն այսպէս ընդ սիրտն՝ թէ թէպէտ և այս ինչ համեստ է, այլ այն ինչ օգտէ, զ'ի ընէ զօդեալն յաւակնի քակտել մոլորութեամբ. որ է աղբիւր խարդախութեանց, չարագործութեանց և ապիրատութեանց ամենայնի:

ԺԹ. Ապա ուրեմն այր բարի թէ և զայնպիսի ունիցի զօրութիւն, մինչ զի 'ի դղնդել զմատունս կարող իցէ մուծանել զանուն իւր 'ի կտակ փարթամաց, ոչ պարտի 'ի կիր արկանել զայդ զօրութիւն. և այն թէպէտ և իրազէտ լինիցի՝ թէ ոչ ոք ունի առնուլ ինչ կասկած զիրացդ: Բայց թէ 'ի ձեռս տայիր զզօրութիւնդ զայդ Մ. Կրասոսի, զի բաբախմամբ մատանց կարօղ լինիցի գրել 'ի ժառանգ, մինչ դեռ ոչն էր ստուգութեամբ ժառանգ, հաւատա ինձ, 'ի հրապարակի կաքաւէր: Իսկ այր արդար, և զոր իմանամքս այր բարի, ոչ ինչ յայլմէ յինքն յանկուցանէ:

Որ միանգամ զարմանայ ընդ այդ, այնպիսին խոստովան լինի չգիտել թէ զինչ իցէ մարդ բարի: Այլ որ միանգամ կամիցի զանձին իւրոյ զկնճռեալ ճանաչումն քակել և լուծանել, այնուհետև անձամբ զանձն ուսուցանէ՝ թէ նա է մարդ բարի՝ որ օգնէ ում կարէ. և ոչ վնասէ ումեք, եթէ ոչ հարստահարեալ անիրաւութեամբ: Եւ զինչ. ո՞չ վնասէ դա, որ որպէս կախարդանօք իմն տայ 'ի բաց հանել զճշմարիտ ժառանգս, և ինքն փոխանակս մտանէ 'ի նոցա տեղին: Այլ ասիցէ ոք. ապա ուրեմն ոչ արասցէ ոք զոր

օգուտ պիտանի, զոր լաւն է անձին։ Մանաւանդ 'ի միտ առցէ՝ թէ ոչ ինչ է լաւ ինքեան, և ոչ ինչ օգտակար՝ որ ինչ անիրաւն է։ Որ ոք զայդ չուսանի, մարդ բարի լինել ոչ ունի։

Լսեալ է իմ 'ի հօրէ մերմէ 'ի մանկութեանս, թէ Փիմբրիաս այր հիւպատոսական՝ կարգեցաւ դատաւոր խնդրոյ Մ. Լուտատիոսի Պինթիայ, հռովմայեցւոյ ասպետի՝ համեստ առն, ուր սա խոստումն էր արարեալ դրամոց՝ եթէ ինքն չիցէ այր բարի։ Արդ ասաց առ նա Փիմբրիաս. ես ոչ երբէք դատաստան արարից 'ի վերայ բանիդ այդորիկ. զի մի կամ հանբաւագերծ արասցէ զայրն զովելի՝ եթէ ընդ հակառակն դատեսցի, և կամ երևեսցի վճռել՝ թէ գոյ ոք այր բարի, և զի այս յինքն բովանդակէ զանհամար լաւութիւնս և զգովութիւնս։ Արդ այսպիսում բարի առն, զոր և Փիմբրիաս առնոյր 'ի միտ՝ և ոչ եթէ Սոկրատ միայն էր խելամուտ, ոչ իւիք մարթի երևել իմիք օգտակար՝ որ չիցէ համեստ։ Վասն որոյ այր այդպիսի ոչ միայն առնել, այլ և ոչ ընդ միտ ածել համարձակեսցի ինչ՝ զոր ոչ համարձակեսցի քարոզել։ Ոչ ապաքէն անպատեհ է տարակուսել փիլիսոփայից ընդ այսոսիկ, ընդ որ և ոչ գեղջուկք տարակուսին, յորոց ել բանն այն՝ որ առ հնութեան յառակս եղև. զի յորժամ զովել կամին զհաւատարմութիւն և զբարութիւն ուրուք, ասեն. Արժանի է՝ ընդ որում և 'ի մթան խաղայցես զխաղն մատանց։ Եւ զինչ բանիս զօրութիւն. այն՝ թէ ոչ է յօգուտ՝ որ ոչն վայելէ. թէպէտ և կարող իցես զեռանդն ածել զայն առանց կշտամբելոյ յումեքէ։ Տեսանես, զի ըստ առակիդ՝ և ոչ Գիւգեայ լինի հրաման տալ, և ոչ այնմ՝ զոր փոքր մի յառաջ կեղծէի, կարող գոլ բաբախմամբ մատանց խլել զժառանգութիւնս ամենեցուն։ Քանզի զոր օրինակ որ ինչ անպատեհն է՝ թէպէտ և թաքուցանիցի, այլ ոչ իւիք մարթի համեստ լինել, սոյնպէս և որ ոչն է համեստ՝ չկարէ լինել օգտակար. զի բնութիւն հակառակ է այդմ և դիմամարտ։

Ի. Բայց ասիցես. ուր մեծամեծ են վարձք, գոյ առիթ մեղանչելոյ։ Կ. Մարիոս՝ որ հեռի էր յոյժ յակընկալութենէ հիւպատոսութեան, և եօթներորդ եւս ամ էր յետ դատաւորութեանն՝ զի կայր ընկեցիկ, և

թուէր եթէ ոչ երբէք այլ ունի զհետ լինել հիւպա-տոսութեան, զԿ. Մետեղոս՝ զայրն ականաւոր և քա-ղաքացի, որոյ էր ինքն դեսպան, զրպարտեաց առաջի ժողովրդեանն Հռովմայ 'ի ժամանակին՝ յորում առա-քեցաւ 'ի նմանէ 'ի սպարապետէ անտի իւրմէ 'ի Հռովմ, որպէս թէ կամաւ երկարիցէ զպատերազմն զայն։ Եւ եթէ զիս հիւպատոս առնիցէք ասէ, եթէ կենդանւոյն և եթէ մեռեալ՝ ընդ ձեռամբ ածից Հռովմայեցւոց ըզ-Յուգուրթ։ Եւ այնպէս եղև և ինքն հիւպատոս, այլ օ-տարացաւ 'ի հաւատարմութենէ և յարդարութենէ, ընդ մախանօք արկեալ սուտ բանսարկութեամբ զայրն զկարի լաւ և զարգոյ քաղաքացին՝ որոյ էր պատգամա-ւոր և առ 'ի նմանէ առաքեալ։

Եւ ոչ իսկ մերս Գրատիդիանոս զառն բարւոյ զգործ յանձին եցոյց 'ի ժամանակին՝ յորում պռետոր[1] էր, և տրիբունք[2] ժողովրդեան եկին խորհուրդ հարցանել 'ի պռետորաց, զի զինք դրամոց հասարակաց հաւանութե՟ սահմանեսցին։ Վասն զի զայնու ժամանակաւ ընդ փո-փոխութեամբ էր դրամն, մինչև ոչ ումեք կարող լինել գիտել՝ թէ որչափ ինչ ունիցի։ Գրեցին միաբան հրո-վարտակ ընդ պատժով և ընդ դատաստանաւ, և սահ-մանեցին՝ զի ամենեքեան միահամուռ զկնի միջօրէի 'ի բեմն ելցեն։ Եւ իւրաքանչիւր ոք յիւր կողմն գնացին. իսկ Մարիոս 'ի բազմականէն դէպ ուղիղ 'ի բեմբն, և զոր կարգեալ էին 'ի միասին՝ միայնակ հրատարակեաց։ Եւ այս, եթէ հարցանես, 'ի մեծ պատիւ եղև նմա. յամենայն ճանապարհս արձանք կանգնեալք, և որոց յանդիման խունկք և մոմեղէնք։ Օ՜ ի՛ ես յերկարեցից. ոչ ոք այնպէս սիրելի գտաւ յաչս բազմութեան։

Այսքիկ ահա ամբոխեն զմիտս մարդկան երբեմն յընտրութեանն. զի ոչ մեծ համարի այն՝ յորում առ ոտն արդարութիւնն հարկանի, այլ որ զհետն գայ այնր՝ յոյժ մեծ այն գրի։ Այսպէս Մարիոսի ոչ այն-չափ անպատեհ երևեցաւ յանձն իւր կորզել յաթո-ռակցաց և 'ի հազարապետաց ժողովրդեան զշնորհ ամ-բոխին. այլ այնու ելանել 'ի հիւպատոսութեան բարձ, որում յայնժամ զհետ էր, օգտակար յոյժ։ Այլ մի

1 Դատաւոր։

2 Հազարապետ։

կանոն է ամենայնի, զոր կամիմ քեզ քաջ գիտել. այս է՝ կամ որ օգտակարն երևի՝ չիցէ անպատեհ, և կամ եթէ անպատեհ իցէ, մի երևեսցի օգտակար։ Իսկ արդ զիա՞րդ. միթէ հնար է ինձ կամ զՄարիոսն զայն այր բարի համարել, և կամ զսա։ Քննեա և զննեա զմիտս քո, զի տեսցես՝ թէ որպիսի՛ է 'ի միտս անդ քո կերպարան և տեսիլ և ծանօթութիւն առն բարւոյ։ Արդ միթէ անկ է բարի առն ստել առ շահաւորութե՛, զրպարտել, յափշտակել և խաբել։ Յայտ է թէ և ոչ ընաւ երբէք։

Կա՞յ արդեօք այնպիսի ինչ յարգի, կամ դիւրութի՛ւն այնչափ ցանկալի, զի առ նովաւ կորուսանիցես զանուն և զպայծառութիւն առն բարւոյ։ Զի՞նչ կարիցէ բերել քեզ անուանեալդ այդ օգուտ՝ փոխանակ այնոցիկ զորս կարէ բառնալ 'ի քէն, եթէ 'ի բաց հանիցէ զհաւատարմութիւն քո և զարդարութիւն, և մերկացուսցէ 'ի քէն զանուն առն բարւոյ։ Քանզի զի՞նչ խտիր կայցէ, եթէ ոք 'ի մարդկութենէ 'ի գազանութիւն փոխեսցի, և կամ թէ 'ի մարդոյ կերպարանս բարձեալ բերիցէ զանգթութիւն գազանի։

ԻԱ. Զի՞նչ այլ. որ միանգամ ապախտ առնեն զամենայն ուղղութեամբ և զհամեստութեամբ, միայն թէ մեծութեան հասանիցեն, ո՞չ ապաքէն ոչ ինչ ընդհատ 'ի նմանէ գործեն, որ և աներ կամեցաւ ստանալ ինքեան այնպիսի, զի նորա յանդգնութեամբն մեծասցի։ Օգտակար թուէր նմա մեծազօր լինել օտարին մախանօք։ Նա ոչ տեսանէր՝ թէ քանի՜ անիրաւութիւն է այդ ընդդէմ հայրենեաց, քանի՜ անշահ, և քանի՜ անպատեհ։ Իսկ ինքն փեսայն հանապազ 'ի բերան ունէր զյունական տաղաչափութիւնս զՓիւնեայց. զորս երկրորդեցից՝ որպէս և զիարդ մարթ է 'ի մեր բարբառ՝ թերևս անարի, այլ սակայն առ 'ի մարթելոյ զիրսն առաջի առնել.

Իցէ՞ երբէք թոյլ իւիք կալ ոտնհար իրաւանց.
Արժ միայն առ իշխել՝ իսկ յայլն ողջոյն յօրէնս կաց։

Պղծապարտ է Եւտէոկղէս, կամ մանաւանդ Եւրիպիդէս՝ որ զայս մի միայն որ ամբարշտագոյնն էր քան զամենայն՝ 'ի բաց զատոյց։

Զի՞ է մեզ այսուհետև մանունց լինել 'ի խնդիր.

ժառանգութեց ասեմ, վաճառականութեանց և վաճառմանց խարդախելոց: Աւանիկ քեզ. որ դք ցանկանայցէ թագաւոր լինել ժողովրդեան Հռովմայ և իշխան ամենայն ազգաց, 'ի գլուխ հանցէ: Եթէ դք համեստ ասէ լինել զցանկութիւնդ զայդ, անմիտ է. քանզի հաւան գտանի ըստ կորուստ օրինաց և ազատութեան. և զոտնակոխն լինել նոցուն անօրէնութեամբ և զարշութեամբ՝ 'ի փառս դրէ: Իսկ որ լինի խոստովան, թէ չէ համեստ թագաւորել 'ի քաղաքի անդ՝ որ ազատն էր և պարտէր լինել, այլ ասէ՝ որ կարողն իցէ զայդ առնել՝ նմա է օգտակար, զայնպիսին որո՞վ կշտամբութբ̃, մանաւանդ թէ որո՞վ թշնամանօք զուն եղից հանել յահագին մոլորութենէ անտի: Ոչէ՞ հնար լինել ումեք օգտակար, ո՛ անմահ դիք, քան զհայրասպանսրն ամենապիղծ և ամենագարշն հայրենեաց սպանող. թէպէտ և նա ինքն որ 'ի սոյն մտաբերեաց՝ 'ի քաղաքացւոց անտի նկուն եղելոց հայր անուանեցի: Ապա 'ի համեստութենէ պարտ է չափել զօգտակարութիւն. և այն այնպէս, զի երկոքին սոքա երևեսցին 'ի ձայնան ևեթ զանազանիլ 'ի միմեանց, բայց իրօք զմի ինչ նշանակել:

Ոչ գիտեմ եթէ առ կարծիս ռամկին՝ իցէ՞ ինչ այլ քան զթագաւորելն օգտակարագոյն. այլ յորժամ սկսայ ելանել ճշմարտութեան 'ի խնդիր, տեսանեմ զհակառակն. չգտանել այլ ինչ այնպէս անօգուտ այնմ՝ որ յանիրաւի հասեալ իցէ 'ի նոյն: Վասն զի միթէ կարիցեն օգտակար լինել ումեք նեղութիւնք, հոգք, արհաւիրք տուընջենայինք և գիշերայինք, և կեանք դաւաճանութբ̃ և վտանգօք լի:

Յոլովք անօրէնք ուանհաւատարիմք
Թագաւորութեան, սակաւք են բարիք.

Ասէ Ակկիոս քերթող: Եւ որպիսո՞ւմ թագաւորութեան. այնմ՝ որ 'ի Տանտաղոսէ և 'ի Պեղոպայ փոխանցեալ իրաւամբք իշխէր: Արդ ո՞րչափ ևս առաւել բազում կարծիցես զթագաւորին այնորիկ որ 'ի ձեռն զօրաց ժողովրդեանն Հռովմայ զնա ինքն զՀռովմայ ժողովուրդն նուաճեցէ, և զքաղաքն՝ ոչ ազատ միայն, այլ և ազգաց իշխեցող, ստրկեցէ յիւր ծառայութի̃:

Զանի՞ արատ խղճի մնաց յանձին ումեքի այնպի-

սին՝ կարծիցես ; որչափ մեծ լիցի : Եւ որ կեանք յօգուտ կարիցէ լինել նմա, ուր յայնպիսի իցէ վիճակի կեանք նորա, զի որ բառնայ զայն՝ համոզերձեալ է հատանել մեծի շնորհի և փառաց : Եւ արդ եթէ այսոքիկ՝ որ մեծապէս օգտակարք կարծեալ լինէին և չեն, զի լի են անշքութեամբ և անպատեհութեամբ, կարի քաջ հաւատարիմ պարտի լինել՝ թէ չիք ինչ օգտակար առանց լինելոյ համեստ :

ԻԲ. Եւ այս որպէս յաճախ յայլ նուագս, նոյնպէս և ՚ի պատերազմին Պիւռոսի՝ այսպէս դատեալ եղև ՚ի Կ. Փաբրիկիոսէ յերկրորդ նուագի հիւպատոսութեան, և ՚ի ծերակուտէ մերմէ : Զի յորժամ Պիւռոս արքայ կամակար պատերազմ յարոյց ընդդէմ ժողովրդեանս Հռովմայ, և կռիւն էր ՚ի պաշտպանութիւն տէրութե ընդ այնպիսում քաջ և հզօր թագաւորի, փախստական ոք առ ՚ի նմանէ եկն ՚ի բանակ Փաբրիկիոսի և բան ետ նմա, զի թէ վարձս խոստանայցէ ինքեան, ինքն յանձն առնու՝ որպէս զանխուլ էր եկեալ, նոյնպէս զանխուլ ՚ի բանակ անդր Պիւռոսի դառնալ և դեղամահ զնա կորուսանել : Իսկ Փաբրիկիոս փոյթ կալաւ մատնել զայրն ՚ի ձեռս Պիւռոսի. և այս գործ նորա գովեցաւ ՚ի ծերակուտէն : Բայց արդ եթէ զկերպարանս և զկարծիս օգտակարութեան խնդրեմք, զմեծ զայն պատերազմ և զմեծ թշնամին տէրութեան բառնայր ՚ի միջոյ մի միայն փախստեայ այր. այլ մեծ անշքութիւն և ապիրատութիւն լինէր, եթէ պատերազմն գովելի՝ ոչ քաջութեամբ՝ այլ անօրէնութեամբ ՚ի գլուխ ելանէր :

Արդ եթէ Փաբրիկիոսի՝ որ այնպիսի գտաւ ՚ի քաղաքիս՝ որպէս Արիստիդէս յԱթէնս, և եթէ ծերակուտիս մերում՝ որ ոչ երբէք որոշեաց զօգուտ ՚ի վայելչութենէ, որ յերկուց այտի առաւել օգտակար եղև. զինու՞ք արդեօք մարտնչել ընդ թշնամւոյն, եթէ թունիւք : Եթէ փառաց վասն ցանկալի է իշխանութիւն, հեռի լիցի ապիրատութե, յորում ոչ կարէ լինել փառք : Եթէ հարստութիւնք գլխովին ցանկալի թուին զինչ և է օրինակաւ, չկարեն օգտակար լինել վատանունութե համերձ : Ապա չէր օգտակար խորհուրդն այն Լ. Փիլիպպոսի՝ որդւոյ Կ. զի որչափ ինչ քաղաքս ազատեալ էր Կ. Սիղղա՝ դրամս ՚ի նոցանէ առեալ, վճռով ծե-

բակուտին, նոքին վերստին հարկաւոր լինիցին. և մի 'ի նոսա անդրէն դարձուցուք, ասէր, զզբաղմն՝ զոր տուեալ էր նոցա վասն ազատութե իւրեանց: Հաւանեցաւ նմա ծերակոյտն՝ յանձն տէրութեան. զի լաւ ևս են հաւատք հինից ծովու՝ քան այնպիսի ծերակուտի: Բայց աճեաց ամեն հարկաւորութիւնն. ապա օգտակար ինչ եղև: Մինչև ցերբ ժողհին օգտակար կոչել զայն ինչ՝ որ ոչ համեստ իցէ:

Այլ միթէ կարէ՞ օգտակար լինել ատելութիւն և վատանուանութիւն տէրութեան իմիք, որ պարտի ամրանալ փառօք և յօժարականութեամբ դաշնակցաց: Այս իսկ գլխովին ընդ իմում Կատոնի յաճախ տարաձայն երևեցայ: Քանզի թուէր ինձ եթէ կարի իցէ նախանձայոյզ 'ի պաշտպանել զանձուն և հարկաց՝ զլանալով զամենայն ինչ մաքսաւորաց, և բազում ինչ նիզակակցաց. ուր պարտ էր մեզ առ նոսա բարերար երևել, և ընդ սոսա վարիլ որպէս ընդ գաղթականս մեր. և այնչափ առաւել, որչափ զի այդ զուգաւորութիւն կարգաց 'ի պահպանութիւն էր տէրութեան հասարակաց: Զարաչար էր և Կուրիոնին գործ, յորժամ արդարացուցանէր զդատ Տրանսպադեայց[1] որ միշտ զայն երկրորդէր, Օգուտն լիցի յաղթականն: Մանաւանդ պարտ էր նմա ասել. չէ իրաւացի, ոչ լինիցի և յօգուտ հասարակաց տէրութեան. քան եթէ օգուտ ասելով զոյ՝ խոստովանել զանիրաւն լինել:

ԻԳ. Լի են վեցերորդ գիրք Հեկատոնի յաղագս պաշտաճից՝ այսպիսի խնդրովք. Միթէ առն բարւոյ իցէ գործ 'ի յետին պակասութեան պարենի ոչ կերակրել զիւր տուն: Յերկաքանչիւր կողմն պայքարի. այլ 'ի վախճանի համարի, եթէ առաւել օգտակարութ̃բ քան մարդասիրութեամբ պարտ է կանոնաւորել զպատշաճն: Խնդիր 'ի մէջ առնու, զի թէ 'ի ծովու հարկ լինիցի կորուստ ինչ առնել, արդեօք զազնուազին երիվարն արժան իցէ կորուսանել առաւել՝ եթէ զցածագին ոք ծառայ անպիտան: Ըստանօր այլուր հայեցուցանեն ինչքն, և այլուր մարդկութիւն: Եթէ տախտակ 'ի նաւաբեկութեան 'ի ձեռս բերեալ իցէ խելագարն,

1. Բն[illegible] յայնկոյս Պադոս գետոյ:

օրէ՞ն իցէ իմաստնոյն կորզել զայն 'ի ձեռաց նորա՝ եթէ կարիցէ: Ոչ՝ ասէ, վասն զի անիրաւութիւն լինի: Օ ինչ ասպա. տէր նաւուն կարօղ իցէ յափշտակել զայն իբրև զիւր. և ոչ ըմսաւ. ոչ ինչ ընդհատ՝ որպէս եթէ զոք 'ի նաւողաց 'ի խորս անդ կամիցի ընկենուլ 'ի նաւէ անտի, պատճառելով իւր գող զնաւն: Օ ի վարձեալ նաւուն՝ ոչ ևս տեառն իւրոյ է, այլ նաւելոցն:

Իսկ զի՞նչ. եթէ 'ի մի տախտակ գտցին երկու նաւաբեկք, երկոքեանն իմաստունք, յափշտակեսցէ՞ զայն յինքն սա և նա, եթէ մին միւսումն թողցէ: Թողուլ թողցէ, այլ այնմ՝ որոյ կեանքն առաւել պիտանի իցէ կամ վասն իւր կամ 'ի պէտս հասարակաց: Իսկ զի՞նչ եթէ զուգահաւասար իցեն յայսմ մասին: Ո՛չ հակառակեսցին. այլ իբրև վիճակաւ կամ խաղիւ մատանց յաղթեալ՝ տեղի տացէ այր ընկերին:

Եթէ հայրն զմեհեանս կողոպտիցէ կամ ական հատանիցէ 'ի գանձն, զի՞նչ. որդին զեկուսցէ՞ զայդ դատաւորաց: Չէ օրէն. մանաւանդ հովանի լիցի հօրն՝ եթէ 'ի վէր եկեսցէ բանն: Ապա հայրենիքն ոչ է նախապատիւ քան զայլ ամենայն գործս: Կարի իսկ քաջ. այլ օգուտ է հայրենեաց զկնովին քաղաքացիս ունել հայրասէրս կամ բարեպաշտս առ ծնողս: Իսկ զի՞նչ, եթէ հայրն գուն գործիցէ բռնակալել, կամ մատնիչ լինել հայրենեաց. միթէ լռել ունի որդին: Պարտ է նմա աղաչել թախանձանօք զհայրն չառնել զայն. եթէ ինչ ոչ օգտի՝ ամբաստան լինել, և սպառնալ ևս: Իսկ պարզաբար՝ եթէ 'ի փոսս հայրենեաց իրքն բերիցին՝ արգոյ համարեսցի զկեանս հայրենեաց քան զհօրն:

Դարձեալ խնդիր 'ի մէջ առնու. եթէ իմաստունն յանգէտս առեալ իցէ կեղծ դրամս իբրու լաւս, յետ իրագէտ լինելոյ կարօղ իցէ վճարել զայնոսիկ՝ եթէ ումեք պարտական իցէ, իբրու լաւս: Դիոգինէս՝ այո ասէ: Անտիպատրոս, ոչ. որում առաւել լինիմ ձայնակից: Որ ոք գիտութեամբ վաճառէ զգինի կիսախանգար, պարտակա՞ն իցէ ասել: Ոչ հարկաւոր դատի Դիոգինէս. Անտիպատրոս առն բարւոյ յանկաւոր համարի: Այս են գոգցես իրաւունք արկեալք ընդ [illegible] առ Ստոյիկեանս: Արդեօք 'ի վաճառել զար[illegible]թագին ծառայս՝ պարտ իցէ ասել զպակասութիւնսն. ոչ զայնս

տանիմ, զորս եթէ չասիցես՝ յետս դարձուցի ծառայն ըստ քաղաքական իրաւանց, այլ զայսոսիկ թէ է ստախօս, վիզախաղաց, գողաբարոյ և արբեցող։ Ոմանք ասեն այո, և ոմանք ոչ։

Եթէ ոք ոսկի հանցէ 'ի վաճառ՝ կարծելով ոսկեպղինձ վաճառել, յայտնեսցէ արդեօք նմա այր բարի՝ թէ է այն ոսկի, եթէ գնեսցէ դենարի միոջ զայն որ է հազար դենարի։ Բացայայտ իսկ է զայսցանէ եթէ իմն կարծիք՝ և եթէ ընդդիմակ կարծիքն եղեալ 'ի մէջ փիլիսոփայից զորս անուանեցի։

ԻԴ. Դաշինք և խոստմունք որ ոչ բռնութեամբ և ոչ չար նենգմամբ (այլ ըստ պռետորաց) եղեալք, պահելի իցեն արդեօք միշտ։ Եթէ ոք դեղ ումեք տայցէ վասն ջրգողութեան այսու դաշամբ՝ զի թէ առողջասցի նովաւ, ոչ այլ երբէք 'ի կիր առնուցու զայն դեղ. և յետ ամաց ինչ անկցի 'ի նոյն հիւանդութիւն, և ոչ կարասցէ առնուլ հրաման 'ի նմանէ ընդ որում դաշն եդ առ միւսանգամ 'ի կիր առնուլ զայն, զի՞նչ առնել արժան իցէ։ Քանզի անմարդի է որ չտայցէ հրաման, և զի ոչ իսկ լինի նմա անիրաւութիւն ինչ, արժան է զկեան կենաց և փրկութեան անձին ընտրել։

Իսկ զի՞նչ, եթէ ոք իմաստուն թախանձեալ յառնէ որ զնա ժառանգ կացուցանիցէ, թողլով կտակու սեստերտս երեքհարիւր բիւր, զի յառաջ քան զմտանելն 'ի ժառանգութիւն՝ 'ի լոյս տունջեան 'ի հրապարակի կաքաւիցէ. և նա խոստասցի առնել, քանզի այլազգ ոչ կամիցի գրել զնա 'ի ժառանգութիւն, լցուսցէ՞ զխոստումն՝ եթէ ոչ։ Լաւ ևս էր չխոստանալ. և զայդ համարիմ պատճառ դժուարութեան։ Այլ քանզի խոստացաւ, եթէ անպատեհ վարկանի կաքաւել 'ի հրապարակի, սակաւամեղ ստախօս գտանի եթէ ոչ ինչ առցէ 'ի ժառանգութենէ՝ քան եթէ առցէ. եթէ ոչ՝ գուցէ զայն դրամ 'ի կարևոր ինչ պէտս հասարակաց վարեսցէ. զի և կաքաւելն 'ի կամել անդ օգտել հայրենեաց չիցէ անպատեհ։

ԻԵ. Բայց և ոչ զայն խոստմունս պահել արժան է՝ որ չիցեն օգտակար որոց խոստացաւն։ Արեգակն, առցուք օրինակ և յառասպելեաց, ասաց որդւոյ իւրում Փայեթոնի՝ թէ արարից զինչ և ցանկայ անձն քո.

և նա ցանկացաւ ելանել 'ի կառս հօր իւրոյ . և իբրև ել, ո՜հ անմիտ, մինչ չև էր բազմեալ՝ կայծակնահար թացակիզեցաւ ։ Արշաւի առաւել լաւ ևս էր յայսմ եթէ հօրն չէր պահեալ զխոստումն ։ Զինչ ասասցես զԹեսէոսէ որ պահանջեաց զկատարումն խոստմանն 'ի Պոսիդոնէ . որում իբրև առաջի եդ Պոսիդոն երիս ըղձութիւնս, խղճ եղև նա ընդ կորուստ որդւոյ իւրոյ Հիպողիտայ, զի 'ի կասկածի էր հայրն ընդ նա զխորթմօրէն . իբրև կատարեցաւ ըղձութիւնն, Թեսէոս 'ի սուգ մեծ համակեցաւ ։

Զինչ զԱգամեմնոնէ, որ ուխտեալ Արտեմեայ զառաւել գեղեցիկ ծնեալն յայնմ ամի 'ի Թագաւորութեան իւրում, զոհեաց զԻփիգենիա . զի ոչ գոյր այլ գեղեցիկ քան զնա ծնեալ յայնմ տարւոջ ։ Լաւ ևս էր ոչ կատարել զուխտն քան եթէ զայնպիսի անհեթեթ ոճիրս գործել ։ Արդ և զուխտիւք երբեմն պարտ է զանց առնել, որպէս և ոչ զաւանդն միշտ դարձուցանել ։ Եթէ ոք առողջ մտօք սուսեր դիցէ առ քեզ յաւանդ, և 'ի ցնորիլն 'ի մտաց խնդրիցէ, մեղք են տալ, չտալն պատշաճ ։ Զինչ այլ . եթէ նա որ զարծաթ եթող քեզ յաւանդ՝ պատերազմ յարուցանիցէ 'ի վերայ հայրենեաց, միթէ տաս նմա անդրէն զաւանդն . կարծեմ ոչ . ապա թէ ոչ՝ զընդդէմն գործես հասարակաց տէրութեան՝ որ պարտի լինել քեզ սիրելի քան զամենայն ։ Այսպէս բազում ինչ իրք բնութեամբ համեստ երևեալք՝ յանցանել ժամանակի լինին անհամեստք ։ Կատարումն խոստմանց, կալն 'ի դաշինս, դարձուցանել զաւանդն, 'ի փոփոխել օգտակարութեան լինին անհամեստ ։ Այլ և զայնցանէ որ երևին լինել օգտակարութիւնք ընդդէմ արդարութեան ընդ պատուական խոհեմութեան, որպէս կարծեմ՝ փոքր 'ի շատէ ասացաւ ։

Բայց քանզի 'ի չորից աղբերաց համեստութեան յառաջ բերաք յառաջին գիրս անդ զպատշաճս, 'ի նոսին դեգերեսցուք, զի ուսուսցուք՝ թէ այն ամենայն որք երևին օգտակար գոլ, և չեն՝ եթէ իցեն թշնամիք առաքինութեան . արդ և զխոհեմութենէ, որում նմանող լինել կամի խորամանկութիւնն, որպէս և զարդարութենէ որ միշտ է օգտակար, ճառեցաք ։ Մնան երկու այլ մասունք համեստութե, յորոց մին նշմարի 'ի

ծութեան և 'ի գերապանծութեան վսեմոգւոյ, և միւսն 'ի վայելչութեան և 'ի բարեկարգութեան ժուժկալութեան և բարեխառնութեան :

ԺԶ. Օգտակար երևէր Ոդիսեայ, որպէս ոմանք 'ի թատերգակ քերթողաց աւանդեցին, զի չիք առ Հոմերոսի քաջ մատենագրի այնպիսի ինչ կասկած զՈդիւսեայ, այլ կեղծեն զայն ողբերգակք, որպէս այն թէ յիմարութիւն կեղծեալ խոյս տալ 'ի զինուորութենէ իցէ կամեցեալ : Նա չէր խորհուրդ համեստ : Բայց ասիցէ ոք թերևս . օգտակար էր թագաւորել, և յԻթակէ կեալ 'ի հանդարտութեան ընդ ծնողաց, կնաւ և որդւով : Իսկ արդ միթէ համարիցիս դու եթէ պանծանքն որ 'ի հանապազորդեան վշտաց վտանգի և վաստակոց՝ գայցէ 'ի համեմատութիւն ընդ հանգստութեանդ ընդ այդմիկ : Նա ես արհամարհ և անարժան համարիմ զայդ հանդարտութիւն . զի զանհամեստն՝ և ոչ օգտակար լինել վարկանիմ : Եւ զինչ կարծես եթէ լեէր Ոդիսևս, եթէ յայն կեղծիս կայր մնայր . ուր յետ մեծամեծ գործս քաջութեան կատարելոյ 'ի պատերազմի՝ տակաւին զայս լեէր յԱյասայ .

Ոչ պարագլուխ երդմնաւորացըն եկաց,
Որպէս գիտէք՝ նա ինքն ուխտիցըն դըրժեաց.
Օ յիմարութիւն կեղծեալ՝ ետ խոյս 'ի չուոյն.
Եւ թէ չազդէր Պաղամեդեայն արթնութիւն
Հասու լինել յանդըգնութեան վատշըւէր,
Նըւիրական ուխտն 'ի գետին անկանէր :

Նա էր նմա ոչ միայն ընդ թշնամիս, այլ և ընդ այլս մրցել, զոր և արար իսկ, քան թողուլ լքանել զմիաբանութիւն Յունաստանի 'ի տալ պատերազմ ընդդէմ բարբարոսաց :

Նա թողցուք և զառասպելս և զարտաքինսն, եկեսցուք 'ի գործս եղեալս և առ մերսն : Մ. Ատիղիոս Հռեգուղոս, յորժամ 'ի կրկին հիւպատոսութեան դաւաճանութեամբ ձերբակալ եղև յԱփրիկէ, 'ի զօրավարութեան Քսանթիպպոսի լակեդեմոնացւոյ և 'ի սպարապետութեան Ամիլկարայ՝ հօրն Աննիբաղայ, երդումն տուեալ արձակեցաւ առ ծերակոյտն, զի թէ ոչ

դարձուցեն առ Պենացիս զազնուականս 'ի գերեաց , դարձցի ինքն անդրէն 'ի Կարքեդոն : Սա իբրև եկն 'ի Հռովմ, զօգտակարութեան իմն տեսանէր զկերպարան. այլ զայն, որպէս յայտ եղև յելից իրացն, սուտ վարկաւ. այս է մնալ 'ի հայրենիս , լինել 'ի տան իւրում ընդ կնոջն և ընդ զաւակաց . զվիշտս զոր 'ի պատերազմին կրեաց` հասարակ համարելով պատերազմական բախտի , կալ ունել զաստիճան հիւպատոսական իշխանութեան : Իսկ ո՞ ուրաստ լինիցի զօգտակարութիւն իրացս . զոր կարծես` ժխտէ մեծասրտութիւնն և արիութիւն :

ԻԷ. Զօրինակս խնդրեցես ազգողականս . զի սեպհական է այդց առաքինութեանց ոչ զանգիտել ուստեք բնաւ . զամենայն ինչ զմարդկայինս արհամարհել , ոչ անքերելի համարել որ ինչ միանգամ մարթ ի պատահել մարդոյ : Զինչ արար սա : Եկն առ ծերակոյտն , զպատգամսն ծանոյց , հրաժարեաց ասել զիւր կարծիս . ցորչափ կապեալ էր ընդ երդմամբ Թշնամեաց , ոչ 'ի սինկղիտիկոս համարէր զանձն : Իսկ որ մեծն է , (Թերևս ասիցէ ոք , ո՜վ անմտութեան առն հակառակողի անձին օգտի ,) պնդեաց` Թէ չէ օգտակար յետս տալ զգերեալսն . զի նոքա , ասէ , երիտասարդք են , և քաջ զօրավարք , այլ ես աւերեալ անձամբ : Որդ իբրև զօրացաւ բան նորա , կալան առ իւրեանս զգերեալսն . ինքն դարձ արար 'ի Կարքեդոն . և ոչ կարաց նահանջել զնա ոչ հայրենեացն սէր և ոչ իւրոցն : Իսկ ոչ զայն անգիտանայր 'ի ժամուն` Թէ դիմեալ երԹայ առ անագորոյն Թշնամի անդր , առ նորանոր տանջանս . այլ զերդումն պարտ վարկանէր պահել : Իսկ այնպէս 'ի ժամանակին` յորում անքուն ըլկանօք խոշոշեալ լինէր` 'ի լաւագոյն էր վիճակի` քան եԹէ 'ի տան կայր մնայր ծերունի , գերի և ուխտադրուժ հիւպատոս :

Բայց ասես , անմտութեամբ գործեաց , զի ոչ միայն ոչ բարւոք դատեցաւ արձակել զգերիս , այլ և զայլս քեցեաց 'ի խորհրդոյ անտի : Իսկ իբր անմիտ . միԹէ և 'ի խորհէ՞ն զօգուտ հասարակաց տէրութեան : Նաև արդ մարԹ ինչ իցէ զի որ անօգուտն է հասարակաց , ումեք 'ի քաղաքացւոց օգտակար լինիցի :

ԻԸ. Զհիմունս տապալեն զբնութեան մարդկին` 'ի զատանել անդ զօգտակարն 'ի համեստութենէ : Բան-

զի ամենեքին օգտակարութեան եմք ցանկացողք, եւ 'ի նոյն անդր յափշտակիմք, եւ չեմք կարող այլ ազգ ինչ առնել երբէք: Զի՞նչ է որ խորհեցի յօգտակարաց. կամ զ՞այն, որ ոչ ամենայն փութով պնդութեան զհետ նորա վարեցի: Այլ քանզի ոչ ուրեք կարեմք, բայց միայն 'ի գովութեան, 'ի վայելչութեան եւ 'ի համեստութեան գտանել զօգտակարն, վասն այն զսոսա համարիմք առաջինս եւ ծայրագոյնս. եւ զանուն օգտակարութեան ոչ այնչափ պանծալի որչափ կարեւոր վարկանիմք:

Այլ զի՞նչ իցէ՝ ասիցէ ոք, յերդմանն անդ. միթէ 'ի ցասմանէ՞ երկնչիմք Արամազդայ. ուր հասարակ կարծիք են փիլիսոփայից ամենեցուն, ոչ նոցա միայն՝ որք զԱստուած անգործ դնեն, եւ ոչ ինչ ազդող ումեք, այլ նոցա եւս՝ որք հաւատեն եթէ Աստուած գործէ միշտ եւ ներգործէ, բայց ոչ երբէք բարկանայ ասեն Աստուած եւ ոչ վնասէ: Եւ զի՞նչ աւելի վնասել կարող էր Արամազդ ցասուցեալ, որչափ անձամբ անձին վնասեաց Ռեգուղոս: Այլ ոչ համանէր զօրութիւն կրօնի՝ մինչեւ ընդդատանել զայնչափ օգտակարութիւն: Եւ միթէ առ 'ի չ՞ գործել զանպատեհս ինչ: — Այլ նախ զի են ընտրելի փոքունքն 'ի չարեաց. եւ միթէ այնչափ չա՞ր էր անպատեհութիւնդ այդ, որչափ տանջանքն այն: Երկրորդ՝ եւ այն առ Ակկիոսի.

Անցեր զուխտիւ, ոչ յուխտ մտի ես.
Եւ չեկից ընդ քեզ յուխտ զի ժխտես.

Որպէսեւ յամպարիշտ Թագաւորէ ասացեալ, բայց առ ճահողակի:

Դարձեալ ասեն, որպէս դուք ասէք՝ թէ ինչ ինչ օգտակար երեւին՝ որ ոչն են, նոյնպէս եւ մեք՝ թէ ինչ ինչ համեստ երեւին, բայց չեն. զոր օրինակ այդ ձեզ համեստ երեւի, վասն երդմնապահ լինելոյ դառնալ առնել 'ի չարչարանս. բայց ոչ համեստ գտանի, զի զեղեալն բռնութեամբ թշնամեաց՝ չէր պարտ դատել օրինաւոր: Եւ եւս յաւելուն ասել. որ ինչ կարի օգտակար է, այդ համ[illegible]տանի, Որպէսեւ յառաջագոյն չերեւեցի: Այ[illegible]հա ընդդէմ Ռեգուղոսի. այլ տեսցուք ըստ կարգի:

ԻԹ. Չէ պարտ երկնչել, ասէք, յԱրամազդայ, ընդ

այն զի մի զուցէ բարկացեալ վնասիցէ. այն որ ոչ գիտէ բարկանալ և ոչ վնասել։ Եւ այդ պատճառաբանութիւն ոչ ինչ ընդհատ ՚ի Հռեգուղոսէ՝ ընդդէմ ամենայն երդմանն գրեալ։ Այլ յերդման անդ՝ ոչ պարտ է իմաստասիրել զերկիւղն, այլ զզօրութիւնն։ Վասն զի երդումն է հաստատութիւն սրբազան. արդ զոր հաստատութեամբ խոստացար՝ որպէս վկայ կոչելով զԱստուած, զայդ պարտ է պահել։ Զի այնուհետև ոչ ՚ի բարկութիւն աստուածոց յառել զակն պէտք ինչ են, որ ոչ ինչ իսկ է, այլ յարդարութիւն և ՚ի հաւատարմութիւն։ Քանզի գեղեցիկ ասաց Ենիոս

Հաւատք դու վեհ սլացեալդ ՚ի թևս,
Արամազդայ ճահ երդմանց ես։

Ապա ուրեմն որ ստէ երդման, ստէ հաւատոց, զոր նախնիք մեր ընտրեցին զի կացցէ՝ ըստ դրեցելումն ՚ի ճառն Կատոնի, ՚ի Կապիտոլիոն յանդիման մեծին Արամազդայ։

Բայց ասէք. և ոչ Արամազդ ցասուցեալ աւելի ինչ վնասել ունէր Հռեգուղոսյ, որպէս նա ինքն Հռեգուղոս անձամբ անձին վնասեաց։ Արդարև եթէ ոչ ինչ այլ չար գտանէր բաց ՚ի կրելոյ զցաւ. իսկ զայդ ոչ եթէ միայն ոչ ծայրագոյն գրեն չար, այլ և ոչ չար լինել հաստատեն արժանահաւատ վկայութեամբ իմաստասէրք. և զի Հռեգուղոս վկայ եղև բանից նոցա ոչ փոքր, այլ մեծ յոյժ՝ որպէս կարծեմ, մի բերիցէք աղաչեմ ՚ի թշնամանել զայրն։ Զի զո՞ այլ խնդրեմք առաւել արժանահաւատ քան զիշխանն հռովմէական ժողովրդեան որ առ ուխտապահութեան կամաւ մատնեցաւ ՚ի չարչարանս։ Իսկ զոր ասենն, Փոքունք ՚ի չարեաց ընտրելիք, այս ինքն առաւել անպատեհն քան զթշուառութիւն. միթէ կայցէ՞ չար ինչ մեծ ևս քան զանպատեհութիւն. եթէ ՚ի մարմնոյ տգեղութե՛ այդ է խոտեցուցիչ, քանճպատիկ առաւել պարտի երևել խանգարումն և գարշութիւն ախտեղծ հոգւոյ։

Վասն որոյ որ [illegible]ամ ճշգագոյնս ճառեն զիրացս, միայն զայն ինչ [illegible] չար ասել՝ որ ինչ անպատեհն է. և որք մեղմագոյնս խօսին, տակաւին նոքա ևս ոչ ինչ յերկուանան ծայրագոյն չար ասել զնոյն։ Քանզի և քերթողին այն ասացուած, Ես յուխտամոռի ես, և չե-

կից ընդ քեզ յուխտ զի ժխտես, յայն սակս արդարա-
ցեալ է. զի 'ի վարել ընդ Նորեսի՝ ըստ առն առել պէտս
եղեն: Նոյնպէս եթէ զայդ գործի առնուն 'ի ձեռս, որպէս
թէ ոչ ինչ իցէ հաւատարմութիւնն զոր խոստանայ ոք
անհաւատարիմ անձին, զգոյշ լիցին՝ մի՛ զուցէ խորշ
թաքստի խնդրիցեն երդմնազանցութեան:

Գոյ և իրաւունք պատերազմական, և հաւատք երդ-
մանն՝ զոր բազում անգամ պարտ է պահել ընդ թշնա-
մւոյն. զի որ ինչ երդմամբ հաստատեցաւ այնպէս, մինչև
մտաց ըմբռնել՝ եթէ պարտի կատարել, զայդ պարտ է
պահել: Իսկ եթէ այլ ազգ ինչ իցէ և չառնիցես զայն,
չիք ինչ երդմնազանցութիւն: Զոր օրինակ եթէ
աւարառուաց ոչ վճարեսցես զպայմանեալն ըստ գլխոյ
զգինն՝ չիք ինչ խաբէութիւն, թէպէտ և յետ երդմանն
չառնիցես զայդ: Վասնզի հուղկահարն կամ հէնն ոչ է
'ի համարի դէմ ընդդէմ պատերազմողաց, այլ հասա-
րակաց թշնամի: Ընդ այնպիսւոյն ոչ հաւատ և ոչ հաս
տատութիւն երդման է:

Զի ոչ եթէ սուտ երդնուլն է երդմնազանցութիւն,
այլ չառնելն զայն՝ զոր կամակար մտօք երդուեալ իցէ
ոք, որպէս առ մեզս սահմանեալ ձևով բանից՝ երդմնա-
զանցութիւն է: Վասնզի գիտութեամբ ասաց Եւրի-
պիդէս.

Երդուայ լեզուաւ ես, միտքս է աներդումն [1]:

Իսկ Ռեգուղեայ չէր օրէն վեր 'ի վայր առնել երդ-
մնազանցութք զուխտ և զդաշն պատերազմական և թշնա-
մական. զի ընդ արդար և ընդ օրինաւոր թշնամւոյ էր;
որում հակառակ կային և բովանդակ օրէնք հրեշտակու-
թեանց և այլ բազում իրաւունք հասարակաց: Եթէ
չէր այդպէս, ոչ երբէք ծերակոյտն 'ի ձեռս տայր թըշ-
նամեաց կապեալս զարս երևելիս:

Ն. Բայց Տ. Մետուրիոս, և Սպ. Պոստումիոս 'ի
կրկին հիւպատոսութեան իւրեանց, քանզի 'ի պարտու-
թիւն մատնեցան առ Կաւտիոնիւ. և լեգէոնք մեր ընդ
լծով անցին յորժամ խաղաղութիւն հաստատեցին ընդ
Սամնիացիս, մատնեցան 'ի ձեռս նոցա. զի առանց հրա-
մանի ժողովրդեան և ծերակուտին արարեալ էին: Ի

[1] Վրիպակ իմաստասիրութիւն հեթանոսական:

'ի նմին ժամանակի Տիբերիոս Նումիկիոս, և Կ. Մէ-
լիոս, որ հազարապետք էին յայնժամ ժողովրդեան, որովհետև նոցա բանիւն լեալ էր հաշտութիւն, մատնեալ եղեն, զի ցրեսցի խաղաղութիւնն՝ որ ընդ Սամնիտացիս: Նա այսր մատնութեան յորդորիչ և հեղինակ գտաւ նա ինքն Պոստումիոս՝ որ մատնեցաւն: Նոյն արար բազում ամօք զկնի Կ. Մանկինոս. զի որոյ ուխտ խաղաղութեան հաստատեալ էր ընդ Նումանտացիս առանց հրամանի ծերակուտին, աղերս արկ յորդորական՝ զի մատնեսցի 'ի ձեռս նոցա, որպէս և Պ. Փուրիոս, և Սեքստոս Ատիղիոս 'ի խորհրդարանի ծերակուտին վճռեալ էին. և առեալ զխնդիրն՝ անձնատուր եղև 'ի թշնամիս անդր: Համեստագոյն գտաւ սա քան զԿ. Պոմպէոս, որ 'ի նմին գտեալ վիճակի՝ աղերս մատոյց, և այնպէս զանց առին զօրինօքն: Անդանօր երևեալն օգտակար՝ զօրացաւ քան զհամեստութիւն. իսկ յառաջինսն սուտ երևոյթ օգտակարութեան յաղթահարեցաւ յերեսաց համեստութեան:

Բայց չէր պարտ, ասեն, օրինաւոր գրել, զի էր գործ բռնութեան՝ որպէս թէ մարթ ինչ իցէ առն քաջի ընդ բռնութեամբ անկանել: Նա առ իմէ 'ի ծերակոյտ անդր երթայր, երբ հանդերձեալ էր առաւել անհաւանելի ցուցանել նոցա զգերեացն արձակուրդ: Որ առաւել պանծալին է 'ի նմա, զայդ ստգտանեմք: Ոչ ոչ եթէ յիւր կարծիս յամառեցաւ, այլ յանձն էառ զդատ՝ զի լիցի կամք ծերակուտին. որում եթէ ինքն չլինէր յորդոր, ապաքէն գերեալքն տուեալ լինէին անդրէն 'ի Պենացիս. և այնպէս Հռեգուղոս ողջանդամ կայր մնայր 'ի հայրենիսն: Բայց զի զայդ ոչ օգտակար վարկաւ հայրենեաց, վասն որոյ համեստ համարեցաւ ինքեան զայն ամենայն անցս կրել և զչարչարանս: Իսկ զոր ասենն, թէ որ ինչ կարի օգտակար իցէ՝ այդ լինի և համեստ, պարտ էր մանաւանդ ասել. արդէն իսկ է, և ոչ եթէ լինիցի: Վասն զի չիք ինչ օգտակար՝ որ ոչ համեստ իցէ. և ոչ եթէ վասն զի է օգտակար՝ համեստ գտանի, այլ զի է համեստ՝ գտանի և օգտակար:

ԼԱ. Վասն որոյ բազմապատիկ օրինակս անդ դըժուարաւ ոք գտցէ և գովելի և գերապանծ քան զայս օրինակ: Բայց 'ի կարգի անդ բովանդակ գովութեան

Հռեգուղեայ այս մի ինչ է զարմանալոյ արժանի, զի լաւ համարեցաւ պահել զգերեալսն ։ Քանզի այն զի ինքն յետս դարձաւ՝ զարդիս մեզ զարմանալի երևի․ այլ զայնու ժամանակաւ չկարէր այլազգ ինչ առնել․ վասն որոյ այս գովութիւն ոչ մարդոյն է՝ այլ ժամանակին ։ Զի ոչ զայլ կարգ անխզելի 'ի հաստատութիւն հաւատարմութեան կամեցան ունել նախնիք մեր քան զերդումն ։ Զայս յայտ առնեն օրէնք ԺԲ տախտակաց․ ըղնայն և նուիրական անուանեալքն․ զնոյն և դաշինք ուխտից՝ որովք և ընդ թշնամին պահէր հաւատարմութիւն․ զնոյն յանդիման առնեն ծանօթութիւնք և զննութիւնք համարակալաց, որք 'ի վեր քան զամենայն խնամով առնէին զդատաստանս երդման ։

ԶԴ․ Մանլիոս զորդի Աւղոսի 'ի ժամանակին յորում՝ էր դիկտատոր 'ի դատ կոչեաց Մ․ Պոմպոնիոս տրիբուն ժողովրդեան․ զի յաւելեալ էր նորա անձամբ անձին աւուրս սակաւս 'ի վարել զդիկտատորութիւն․ մեղադիր ևս լինէր նմա, զի զորդին իւր զՏիտոս՝ որ յետոյ Տորկուատոս կոչեցաւ, տարագրեալ 'ի մարդկանէ, պատուիրեալ էր գիւղաբնակ լինել ։ Արդ իբրև լուաւ որդին երիտասարդ եթէ ամբաստանեալ է հայր իւր, փութացաւ եհաս 'ի Հռովմ՝ որպէս ասեն, և ընդ այգն եկն 'ի տուն Պոմպոնիոսի․ որում իբրև ազդ եղև, քանզի համարեցաւ՝ թէ նա առ զայրոյթ սրտին ընդդէմ հօրն չարախօսութիւն ունի մատուցանել, յարեաւ 'ի մահճացն և միայն ընդ միայն հրամայեաց գալ [illegible]նուոյն առ ինքն ։ Իսկ նա իսկ և իսկ ընդ մտանելն մերկացեալ զսուսեր՝ երդուաւ անդէն սպանանել զնա եթէ ոչ երդումն տայցէ ինքեան զանց առնել զհարբ իւրով ։ Երդուաւ Պոմպոնիոս՝ առ ահին բռնադատեալ ։ Ապա զիրան առ ժողովուրդն եհան, և յայտ արար թէ զիարդ հարկ է ինքեան յետս կալ 'ի դատէն․ և արձակեաց զՄանլիոս ։ Այնչափ հզօր էր երդումն զայնու ժամանակաւ ։ Այս այն Տիտոս Մանլիոս է, որ առ Անիենաւ կորզեալ զմանեակ Գաղղիացւոյն՝ զոր սպան հրաւիրեալ 'ի նմանէ 'ի մարտ, և զանուն ընկալաւ Տորկուատոս, այս է մանեկաւոր ։ Ի սորա երրորդ հիւպատոսութեան Լատինք խորտակեցան և հալածական եղեն առ Վեսերաւ ։ Այր մեծ ընդ առաջինս․ որ որչափ

անյիշաչար գտաւ առ հայրն, նոյնչափ և խստիւ անաչառ առ որդին ։

ԼԲ. Այլ զոր օրինակ Ռեգուղոս գովելի գտաւ 'ի պահել զերդումն, սոյնպէս տասնեքին նոքա, զորս յետ կաննեան պատերազմին երդուեալս արձակեաց Աննիբաղ առ ծերակոյտն, զի թէ ոչ կարասցեն հաւանեցուցանել զծերակոյտն վասն դարձուցանելոյ զգերիս՝ ինքեանք դարձցին 'ի բանակ նորա՝ որում Պենացիք էին տիրեալ, ստգտանաց են արժանի՝ եթէ ոչ դարձան. զորոց ոչ ամենեքին միօրինակ պատմեն ։ Վասնզի Պողիբիոս քաջ պատմագիր գրէ՝ թէ 'ի տասանց աղնուական արանց որք յայնժամ առաքեցան, ինունքն դարձան՝ չեղեալ գամագիւտ խնդրոյ իւրեանց առ 'ի ծերակուտէն. իսկ մին 'ի տասանց յետ սակաւ պահու ելիցն 'ի բանակէ՝ յետս դարձեալ որպէս թէ մոռացեալ իցէ ինչ, եկաց մնաց 'ի Հռովմ ։ Վասն զի դարձին 'ի բանակ նոցա՝ ազատեալ յերդմանէ զանձն ասէր լինել. այլ ոչ ուղղութեամբ. քանզի խաբէութիւնն ոչ լուծանէ, այլ պնդէ զերդմնադանցութիւն ։ Այս այդ էր անմիտ խորամանկութիւն՝ խեղաթիւր կերպարանեալ զխոհեմութիւն ։ Յաղագս որոյ վճռեաց ծերակոյտն, զի ուխտադրուժն այն խաբեբայ՝ կապանօք տարցի առ Աննիբաղ ։

Այլ այն է սքանչելի՝ զի ութ հազար արանց ունէր Աննիբաղ առ իւր, ոչ 'ի ճակատու ձերբակալեալս, և ոչ 'ի մահուն վտանգէ խուսափեալս, այլ թողեալս 'ի բանակի 'ի Պաւղոսէ և 'ի Վարրոնէ հիւպատոսաց ։ Զսոսա ոչ պարտ վարկաւ ծերակոյտն ազատել փրկանօք, մինչ դիւրաւ կարող էր զայդ առնել սակաւ դրամովք. որպէս զի տպաւորեսցի 'ի միտս զօրաց մերոց կամ յաղթել կամ մեռանել ։ Զայն լուեալ՝ բեկաւ լուծաւ սիրտ Աննիբաղայ, ասէ մատենագիրն, զի ծերակոյտն և ժողովուրդն Հռովմայ 'ի վիշտս անդ ձախողակս այնպէս վեհանձն երևեցաւ ։ Այսպէս յաղթին առաջի համեստութեան երևեալքն օգտակարք ։

Իսկ Ակիղիոս՝ որ յունարէն գրեաց զպատմութիւնն, բազումս ասէ լինել զդարձեալսն 'ի բանակն նովին խաբէութեամբ ազատանալոյ յերդմանէն, զորս դատաւորքն երբէք արկին ամենայն վատանունութեան ։ Վասն

ձան տացուք այսց բանից. քանզի քաջայայտ է թէ չեն
օգտակար. զի գործեալքն ամենայն վատ, նուաստ, մեղկ
և սրտաբեկ ոգւով են ապիրատ, գարշ և անպատեհ,
որպէս լինէր և ճռեգուղին գործ, եթէ կամեցեալ էր
նորա 'ի տան մնալ, կամ դատաստան արարեալ զգե-
րեաց յօգուտ անձին և ոչ հասարակաց տէրութեան:

Լ.Գ. Մնայ մեզ մասն չորրորդ, որ հայի 'ի վայելչու-
թիւն, 'ի չափաւորութիւն, 'ի պարկեշտութի, 'ի ժուժ-
կալութիւն և 'ի բարեխառնութիւն: Արդ միթէ մար-
թի՞ լինել օգտակար այնմ՝ որ հակառակ իցէ պարու
այդպիսեաց և այսքանեաց առաքինութեանց: Ապաքէն
յԱրիստիպպոսէ Կիւրենեանք և Աննիկերեանք ա-
նուանեալքն փիլիսոփայք՝ զամենայն բարի 'ի հեշտու-
թեան համարէին, և զառաքինութիւնն յայն սակս գո-
վելի համարեցան՝ որպէս թէ իցէ հեշտացուցիչ սրտի:
Ի սոցա շիջանելն յառնէ Եպիկուրոս՝ նորին գոգցես վար-
դապետութեան սատար և յառաջեցուցիչ: Նոյն սոսա
ամենայն ձգամբ պարտ է մրցիլ՝ եթէ կամք իցեն պա-
հել և պահպանել զհամեստութիւն:

Ու եթէ ոչ միայն օգտակարութիւն, այլ ողջոյն
իսկ կեանք երանութեան հաստատեալ է՝ որպէս Մե-
տրոդորոս գրեաց, 'ի հաստատուն բարեկեցութե մար-
մնոյ և 'ի յոյս ակնկալութեան այդր բարեկեցութե,
այդ օգտակարութիւն, և այն ծայրագոյն՝ որպէս են-
քեանք վարկանէին, դիմամարտ գտանի համեստութե:
Քանզի առ ի՛նչ զառաջին տեղին տացուք խոհեմու-
թեան. միթէ առ 'ի խնդիր շրջել քաղցրութեանց յա-
մենայն կողմանց: Ա՛հ քանի՛ թշուառ ծառայութիւն է
առաքինութե՝ սպասաւորել հեշտութեան: Իսկ զի՞նչ
պաշտօն խոհեմութե. միթէ քաղե՞լ իմաստութեամբ
զհեշտութիւնս: Համարեաց եթէ չիցէ այլ քան զայդ
ախորժական. այլ զի՞նչ քան զայդ անպատեհ մարթ է
զմտաւ ածել: Եթէ ծայրագոյն չար զցաւն գրեսցէ,
զի՞նչ տեղի ունիցի առ նմա արիութիւնն, որ է արհա-
մարհութիւն ցաւոց և աշխատութեանց: Ու թէպէտ
և 'ի բազում տեղիս՝ որպէս և աստանօր, արիաբար իմն
գոգցես խօսի Եպիկուրոս զցաւոյ, բայց չէ պարտ խըն-
դրել թէ զի՞նչ ասիցէ, այլ թէ զի՞նչ 'ի ձահ է նմա ա-
սել, որ զբարին 'ի հեշտութեան սահմանեաց, և զչարն

'ի ցաւս։ Զոր օրինակ եթէ ունկն եղից նմա 'ի ճառել անդ նորա զժուժկալութենէ և զբարեխառնութէ, բազում ինչ 'ի բազում տեղիս ասէ նա. այլ բան առակին՝ ջրով ամրացուցանէ։ Նա զի զիարդ կարող է գովել զբարեխառնութիւն՝ նա որ զծայրագոյն բարին դնէ 'ի հեշտութեան. քանզի բարեխառնութիւն թըշնամի է անառակութեանց. իսկ անառակութիւնք՝ արբանեակք հեշտութեան։

Սակայն և այնպէս յերկս յայտնիկ ազգս՝ որպէս և զիարդ մարթին, խորամանկութեամբ թիկունս առտանդեն։ Զխոհեմութիւնն 'ի ներքս մուծանեն՝ իբրև զիտութիւն մատակարար հեշտութեանց և վանիչ ցաւոց։ Զարիութիւնն անգամ իւրք օրինակաւ ծառայեցուցանեն՝ սահմանելով զայն լինել գործի անփոյթ առնելոյ զմահուամբ և կրելոյ զցաւս։ Այլ զբարեխառնութիւնն գլխովին 'ի մէջ առնուն, թէպէտ և ոչ դիւրաւ յաղթողէ նոցա, բայց որպէս և զիարդ կարողասցին. զի ասեն՝ թէ գերազանցութիւն հեշտութեան բացբարձմամբ ցաւոյ սահմանի։ Արդարութիւնն մնայ յերերի, մանաւանդ թէ անկեալ դնի. նոյնպէս և ամենայն առաքինութիւնք երևեալք 'ի միաբանութեան և յընկերութեան ազգի մարդկան։ Զի ոչ բարութիւն, ոչ ազատականութիւն, ոչ առատաձեռնութի, ոչ ինչ ընդհատ 'ի բարեկամութենէ մարթին լինել՝ եթէ ոչ ըստ ինքեան ըղձալի իցեն այսոքիկ, այլ առ հեշտութիւն և յօգտակարութիւն պարտ է պատշաճել։

ԼԴ. Ի սուղ բանիս ամփոփեսցուք որպէս ուսուցաք, եթէ չիք ինչ օգտակարութիւն որ հակառակ կայցէ համեստութեան, նոյնպէս զամենայն հեշտութիւն հակառակ գոլ ասեմք համեստութեան։ Այլ այնչափ առաւել կշտամբութեան արժանի դատիմ զԿալլիփոն և զԴինոմաքոս, որչափ զի սոքա լուծանել զկնճիռն կարծեցին՝ ընդ համեստութեան զօդեալ զհեշտութիւն, որպէս թէ ընդ մարդոյ զանասունն։ Չընդունի զայդպիսի շաղկապ համեստութիւնն, այլ զարշի և 'ի բաց վանէ։ Այլ չէ մարթ վախճանի բարեաց և չարեաց, որ պարտի պարզ լինել, յանմանմանեաց խառն[illegible] և բարեխառնիլ։

Այլ զայսմանէ, քանզի ոչ փոքր ինչ է, [illegible] բազ-

մօք․ այժմ 'ի նպատակ անդր ակնարկեսցուք ։ Արդ թէ որում օրինակաւ արժան իցէ ընտրութիւն առնել իրացդ, ուր ուրեք օգտակար երևեալն հակառակ գտանիցի համեստութեան, ըստ բաւականին ճառեցաւ վերագոյնդ ։ Ապա եթէ և զկերպարան օգտակարութեան ունել կարծեսցի հեշտութիւնն, չմարթի լինել ինչ զուգաւորութիւն ընդ նա և ընդ համեստութեան ։ Ո ի առ շնորհել ինչ մի հեշտութեան՝ գոգ իբրև համեմ ինչ, այլ օգտակարութիւն անշուշտ ունի և ոչ մի ։

Աչաղիկ քեզ, Մարկոս որդեակ, առ 'ի հօրէ ընծայ, և այն ըստ իմումս բանի՝ մեծ․ այլ այնպիսի իցէ զի ընդունելի քեզ լիցի ։ Թէպէտ և երեք այս գիրք՝ 'ի կարգի դասուց Կրատիպպեայ՝ իբրև հիւրք արժանիք հիւրընկալութեան գտանիցին, այլ զոր օրինակ եթէ իմ անձամբ եկեալ էր յԱթէնս, զոր և առնէի իսկ՝ եթէ ոչ 'ի կէս ճանապարհէ բարձրաբարբառ զիս յետս կոչէին հայրենիքս, առ ժամանակ մի և ինձ լսէիր, դարձեալ և այսպէս քանզի մատենիւքս առ քեզ մատեաւ իմ ձայն, ծախեա և 'ի սոսին զժամանակ ինչ ըստ կարի․ և կարողասցիս՝ որչափ և կամեսցիս ։ Եւ յորժամ ծանեայց եթէ ուրախ լինիս դու ընդ այս ազգ գիտութեան, յայնժամ և բերան 'ի բերան խօսեցայց ընդ քեզ հուպ ընդ հուպ, որպէս յուսամ, և 'ի հեռաստանէ՝ յորժամ մերձ ոչ իցես ։ Եւ արդ կեցցես Կիկերոնդ իմ, և կաց 'ի մտի՝ թէ սիրելի ես ինձ յոյժ յոյժ․ այլ ևս քան զևս սիրելի լիցիս, եթէ խրախամիտ գտանիցիս ընդ այսպիսի արձանագրութիւնս և պատուիրանադրութիւնս ։

